ՊՐՈԼԵՏԱՐՆԵՐ ԲՈԼՈՐ ԵՐԿՐՆԵՐԻ, ՄԻԱՑԵՔ

# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

ՀԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ ԱՄՍԱԳԻՐ

4

ԱՊՐԻԼ

ԵՐԵՎԱՆ • 1967

ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

4 ԱՊՐԻԼ · 1967
ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ 46-ՐԴ ՏԱՐԻ

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԿ-Ի ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ
«Ленинян угиов»-теоретический и политический журнал ЦК КП Армении

# Բովանդակություն



---



# Содержание





# ՄԵԾ ՀՈԿՏԵՄԲԵՐԻ 50-ԱՄՅԱԿԻ ԱՌԹԻՎ


Հ. ԹՈՒՄԱՆՅԱՆ


## ԱԶԱՏԱՐԱՐ ՀՈԿՏԵՄԲԵՐԸ ԵՎ ՏՆՏԵՍԱԿԱՆ ՄԵԾ ՎԵՐԱՓՈԽՈՒՄՆԵՐԸ ՀԱՅԱՍՏԱՆՈՒՄ

(Նյութեր պրոպագանդիստների ու ագիտատորների համար)

Ազատարար Հոկտեմբերը հայ ժողովրդին փրկեց ֆիզիկական բնաջնջումից, վերականգնեց նրա պետականությունը և հնարավորություն ընձեռեց բռնելու վերելքի ուղին:

Կապիտալիզմից սոցիալիզմին անցնելու շրջանում, երկու տասնամյակի ընթացքում, երկրում վերացվեցին դասակարգային հակամարտությունները, ստեղծվեց հասարակական նոր կացություն: Սոցիալիստական տնտեսակարգը դարձավ տիրապետող. վերացվեցին շահագործող դասակարգերն ու շահագործումը ծնող պատճառները: Տնտեսության պլանային ղեկավարումը դարձավ սովետական էկոնոմիկայի անխախտ օրենքը:

Սոցիալիզմի հաղթանակը ՍՍՀՄ-ում աշխարհին ցույց տվեց, որ միայն սոցիալիստական կարգն է ընդունակ ապահովելու ժողովուրդների ազգային ինքնուրույնությունը, նրանց տնտեսական ու կուլտուրական վերելքը:

Երբ ավարտվեցին քաղաքացիական կռիվները և սովետական հանրապետությունները հնարավորություն ստացան վերականգնելու ժողովրդական տնտեսությունը, կոմունիստական կուսակցությունը, նրա առաջնորդ Լենինը, պայքար կազմակերպեցին երկրի ծայրամասերում՝ լիկվիդացնելու ցարիզմից ժառանգություն ստացած տնտեսական ու կուլտուրական հետամնացությունը:

Լենինի ցուցումներով, Անդրկովկասի բոլշևիկները, անհաշտ պայքար մղելով նացիոնալիստական տարրերի դեմ, 1922 թվականի մարտի 12-ին ստեղծեցին Անդրկովկասյան ֆեդերացիա: Լենինի ղեկավարությամբ իրականացվեց բազմազգ պետության ամենալավագույն ձևի կազմակերպումը՝ Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միության ստեղծումը:

Սովետական Միության եղբայրական ընտանիքում երբեմնի հետամնաց Հայաստանը ո՛չ միայն կարողացավ արագ վերականգնել երկրի քայքայված էկոնոմիկան, այլև սովետական մյուս ժողովուրդների և, հատկապես, ռուս մեծ

ժողովրդի անշահախնդիր օգնությամբ դարձավ ինդուստրիալ, բարգավաճող հանրապետություն:

Հայաստանի ժողովրդական տնտեսությունն ինդուստրացման ուղիով զարգացնելու էական պայմաններից մեկը կապիտալ ներդրումների ինտենսիվ աճն էր: Վերականգնման շրջանի տարիներին կապիտալ ներդրումների 49 տոկոսը հատկացվում էր գյուղատնտեսությանը: Իսկ հետագայում, երբ կուսակցությունը երկրի ինդուստրացման կուրս վերցրեց, հետզհետե ավելացավ արդյունաբերության մեջ կատարվող ներդրումների տեսակարար կշիռը՝ մասնավորապես նոր ստեղծված արդյունաբերության ճյուղերում: Առավել ինտենսիվ էր ժողովրդական տնտեսության էներգետիկ բազայի աճը: 1926 թվականի մայիսին Երևանում շահագործման հանձնվեց Հայաստանի էլեկտրիֆիկացիայի առաջնեկը՝ Երևանի հիդրոէլեկտրակայանը: Այս տարիներին սկսվեց նաև Լենինականի հիդրոէլեկտրակայանի շինարարությունը, որը գործարկվեց 1928 թվականին: 1927 թվականին սկսվեց հանրապետության երրորդ և իր ժամանակի ամենախոշոր էլեկտրակայանի՝ Ձորագէսի շինարարությունը:

Երկրի ինդուստրացման համար մղվող պայքարի տարիներին մեծ գործ կատարվեց նաև ոռոգման ուղղությամբ. զգալի չափով ընդարձակվեցին ոռոգվող տարածությունները: Իրականանում էին Կովկասը էլեկտրիֆիկացնելու և երկրամասում ոռոգման աշխատանքներ ծավալելու Լենինի պատգամները:

Հայաստանի էկոնոմիկան, ՍՍՀՄ ողջ էկոնոմիկայի հետ մեկտեղ, արմատապես կերպարանափոխվեց սոցիալիստական շինարարության հաջորդ էտապներում. երկրի ինդուստրացման առաջին հաջողությունների հիման վրա կոմունիստական կուսակցությունը և սովետական պետությունը, մոբիլիզացնելով ժողովրդի ուժերը, ավելի լայնորեն ծավալեցին ժողովրդական տնտեսության վերակառուցումը: Նախապատերազմյան հնգամյակներում աննախընթաց վերելք ապրեց Հայաստանի արդյունաբերությունը:

ՍՍՀՄ ժողտնտեսության զարգացման առաջին հնգամյա պլանի մասին կուսակցության XV համագումարի դիրեկտիվներում ասված էր. «Հնգամյա պլանը պետք է հատուկ ուշադրություն դարձնի ազգային հետամնաց ծայրամասերի և հետամնաց շրջանների էկոնոմիկայի ու կուլտուրայի վերելքի հարցերին, ելնելով նրանց տնտեսական և կուլտուրական հետամնացությունն աստիճանաբար լիկվիդացնելու անհրաժեշտությունից, համապատասխանաբար նախատեսելով նրանց էկոնոմիկայի և կուլտուրայի զարգացման ավելի արագ տեմպ, ելնելով այդ շրջանների կարիքներն ու պահանջները Միության կարիքների ու պահանջների հետ շաղկապելուց» (ՍՄԿՊ-ն համագումարների, կոնֆերենցիաների և Կենտկոմի պլենումների բանաձևերում ու որոշումներում, II

Հնգամյա պլանի մասին կուսակցության XV համագումարի դիրեկտիվների կենսագործման վառ ապացույցն են ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության մեջ կատարվող կապիտալ ներդրումները: Կուսակցության ու կառավարության հոգատարության շնորհիվ ազգային հանրապետությունների ժողովրդական տնտեսության մեջ կապիտալ ներդրումների աճը ավելի բարձր է, քան ՍՍՀՄ միջինը:

ՍՍՀՄ-ում առաջին հնգամյակի ընթացքում կապիտալ ներդրումների ծավալը, 1923—1928 թվականների համեմատությամբ, ավելացել էր 363 տոկոսով, իսկ Հայաստանինը՝ մոտ 6 անգամ: Երկրում ծավալվեց բազմաթիվ արդյունաբերական ձեռնարկությունների, առանձնապես հիդրոէլեկտրակայաններ, քիմիական, շինանյութերի արդյունաբերության մի շարք ձեռնարկությունների շինարարությունը:

Սովետական Հայաստանի աշխատավորները, կոմունիստական կուսակցության ղեկավարությամբ հաջողությամբ կատարեցին առաջին հնգամյակի առաջադրանքները. այդ լենինյան ազգային քաղաքականության փայլուն հաղթանակն էր: Հնգամյակի ընթացքում ավարտվեց Ձորագէսի, Լենինականի և Երևանի երկու հիդրոկայանների շինարարությունը, որի շնորհիվ հնգամյակի վերջում հանրապետության էլեկտրակայանների հզորությունը, 1928 թվականի համեմատությամբ, քառապատկվեց: Խոշոր արդյունաբերության արտադրանքը 4,5 անգամ գերազանցեց 1928 թվականի մակարդակը: Գյուղացիական տնտեսությունների 38 տոկոսը միավորված էր կոլտնտեսություններում, որոնք իրենց ձեռքում էին կենտրոնացրել ցանքերի 39,2 տոկոսը: Բանվոր ծառայողների թիվն աճեց ավելի քան երկու անգամ: Փոխվում էր բնակչության սոցիալական կառուցվածքը:

Ծաղկում ապրեց հայ ժողովրդի ձևով ազգային, բովանդակությամբ սոցիալիստական կուլտուրան: Հնգամյակի հենց սկզբից կիրառվեց ընդհանուր և պարտադիր քառամյա ուսուցումը: Հանրապետությունում հրատարակվում էին 50 անուն թերթ և ամսագիր: Քաղաքներում և գյուղերում մեծ տարածում էր ստացել կինոն ու թատրոնը:

Երկրորդ հնգամյակի տարիներին Հայաստանի ժողովրդական տնտեսության կապիտալ ներդրումներն ավելի քան երեք անգամ գերազանցեցին առաջին հնգամյակի ներդրումների ծավալը:

Արտադրանուժերի նոր տեղաբաշխումը, որի նպատակն է ապահովել երկրի հիմնական տնտեսական օջախների կոմպլեքսային զարգացումը, նոր հեռանկարներ էր բացում ազգային հանրապետությունների տնտեսական և կուլտուրական զարգացման համար:

Երրորդ հնգամյակի առաջին երեք ու կես տարիներին, Սովետական Միության մեջ միավորված եղբայրական մյուս հանրապետությունների հետ միասին, աննախընթաց զարգացում ապրեց Սովետական Հայաստանը, նրա էկոնոմիկան ու կուլտուրան:

Հայրենական մեծ պատերազմի տարիներին Հայաստանի էկոնոմիկան շարունակում էր իր ինդուստրիալ զարգացումը: Սովետական պետությունը հանրապետության ժողովրդական տնտեսության և, առաջին հերթին, արդյունաբերության մեջ չնվազող չափով կապիտալ ներդրումներ էր կատարում: Պատերազմի ժամանակաշրջանում, կատարելով ռազմաճակատի պահանջները, Հայաստանի արդյունաբերությունը շարունակում էր արագ տեմպերով զարգանալ:

Հաղթանակ տանելով գերմանական ֆաշիզմի ու ճապոնական իմպերիալիզմի դեմ, մեր երկիրն անցավ խաղաղ ստեղծագործ աշխատանքի: ՍՍՀՄ Գերագույն սովետի երկրորդ գումարման առաջին սեսիան (1946 թ.) հաստատեց ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության վերականգնման ու զարգացման 1946—1950 թթ. հնգամյա պլանը: Կոմունիստական կուսակցությունը և սովետական պետությունը հետևողականորեն շարունակելով լենինյան ազգային քաղաքականությունը, արտադրանուժերի այնպիսի նոր տեղաբաշխում նախագծեցին, որ մի կողմից՝ ամենակարճ ժամանակամիջոցում վերականգնվեց գերմանական օկուպացիայից տուժած միութենական հանրապետությունների և մարզերի տնտեսությունն ու կուլտուրան, մյուս կողմից՝ ապահովվեց մյուս հանրապետու-

թյունների հետագա վերելքը: Այդ պլանով Սովետական Հայաստանի հետագա ինդուստրիալ զարգացման համար փայլուն հեռանկարներ նախագծվեցին:

Արդյունաբերության և, մասնավորապես, ծանր արդյունաբերության ոլորտում հնգամյա պլանի առաջադրանքների կատարմամբ էապես փոխվեց հանրապետության տնտեսական դեմքը:

ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության զարգացման շնորհիվ հետպատերազմյան ժամանակաշրջանում տնտեսական նախադրյալներ ստեղծվեցին անցում կատարելու կոմունիստական հասարակարգի ծավալուն կառուցմանը: ՍՄԿԿ XXII համագումարում ընդունված կուսակցության նոր ծրագրում նշվեցին կոմունիզմի կառուցման ուղիները, ՍՍՀՄ սոցիալ-տնտեսական զարգացման նոր էտապի խնդիրները, որն ուղեկցվում է ազգերի հետագա մերձեցմամբ: Կուսակցությունը ազգային հարաբերությունների ասպարեզում առաջ քաշեց հետևյալ խնդիրները. ա) շարունակել սովետական բոլոր ազգերի էկոնոմիկայի և կուլտուրայի համակողմանի զարգացումը, ապահովելով նրանց ավելի ու ավելի սերտ եղբայրական համագործակցությունն ու փոխադարձ օգնությունը, բ) տնտեսական ասպարեզում այսուհետև ևս վարել սովետական հանրապետությունների տնտեսության համակողմանի զարգացման գիծ. ապահովել արտադրության ռացիոնալ տեղաբաշխում և բնական հարստությունների պլանաչափ օգտագործում, կատարելագործել հանրապետությունների միջև աշխատանքի սոցիալիստական բաժանումը, միավորելով և համաձայնեցնելով նրանց աշխատանքային ջանքերը, ճիշտ զուգորդելով ամբողջ պետության շահերը յուրաքանչյուր սովետական հանրապետության շահերի հետ:

Կուսակցության ծրագրի այդ պահանջներին համապատասխան էլ զարգանում է ՍՍՀՄ եղբայրական հանրապետությունների, այդ թվում նաև Հայկական ՍՍՀ-ի էկոնոմիկան ու կուլտուրան:

Սոցիալիստական շինարարության անցած 46 տարիներին Հայաստանի արդյունաբերության համախառն արտադրանքն աճեց ավելի քան 100 անգամ: Քանակական աճի հետ միասին տեղի ունեցան կառուցվածքային խոշոր փոփոխություններ: Մասնավորապես բարձր տեմպերով զարգացավ մեքենաշինությունը: Հայրենական մեծ պատերազմի տարիներին սկիզբ առած մեքենաշինությունը հետպատերազմյան ժամանակաշրջանում (արդյունաբերության բոլոր ճյուղերի համեմատ) առավել զարգացավ: Դրա շնորհիվ 1965 թվականին արդյունաբերության այդ ճյուղի համախառն արտադրանքը կազմեց ամբողջ արդյունաբերության համախառն արտադրանքի 23 տոկոսը, 1958 թվականի 11 տոկոսի փոխարեն:

Մեքենաշինության հետ միասին արագ թափով զարգացան ծանր արդյունաբերության այնպիսի ճյուղեր, ինչպիսիք են՝ գունավոր մետալուրգիան, քիմիական, շինանյութերի արդյունաբերությունը, փոխվեց արդյունաբերության ճյուղային կառուցվածքը:

Ծանր արդյունաբերության ճյուղերի տեսակարար կշռի բարձրացմամբ ամբողջ արդյունաբերության արտադրանքի մեջ բարձրացավ «Ա» խմբի տեսակարար կշիռը (տե՛ս հաջորդ էջի աղյուսակը):

Այսպիսով, սոցիալիստական շինարարության տարիները Հայաստանում միաժամանակ ծանր ինդուստրիայի ստեղծման ու զարգացման տարիներ էին:

Սոցիալիստական շինարարության տարիներին հանրապետությունում բուռն թափով զարգացավ նաև տրանսպորտը: Կառուցվեցին և գործարկվեցին



Մինջևան—Ղափան, Լենինական—Արթիկ և Երևան—Սևան երկաթուղիները: Այսպիսով, երկաթուղիների երկարությունը կրկնապատկվեց: Էլեկտրաֆարշ է անցկացված Սանահին—Լենինական և Երևան—Սևան ուղեմասերում: Մեծ ծավալ ստացավ ավտոճանապարհային շինարարությունը:

Արդյունաբերության «Ա» և «Բ» խմբերի տեսակարար կշիռների փոփոխվելը ամբողջ արդյունաբերության համախառն արտադրանքում *(տոկոսներով ընդհանուրի մեջ)*.

| *Տարիներ* | *«Ա» խումբ* | *«Բ» խումբ* |
|---|---|---|
| *1928* . . . . . . . . . . . . . . | 24 | 76 |
| *1932* . . . . . . . . . . . . . . | 30 | 70 |
| *1937* . . . . . . . . . . . . . . | 43 | 57 |
| *1940* . . . . . . . . . . . . . . | 41 | 59 |
| *1960* . . . . . . . . . . . . . . | 64 | 36 |
| *1965* . . . . . . . . . . . . . . | 68 | 32 |

Արդյունաբերության, գյուղատնտեսության, տրանսպորտի, ժողովրդական տնտեսության մյուս ճյուղերի և կուլտուրայի զարգացման համար նյութական հիմք ծառայեցին այն հսկայական ներդրումները, որ սովետական պետությունը կատարեց Հայաստանի ժողովրդական տնտեսության մեջ: Միայն նախապատերազմյան հնգամյակների տարիներին (1929—1940 թթ.) Հայաստանի ժողովրդական տնտեսության մեջ կատարվեցին 270,2 միլիոն ռուբլու կապիտալ ներդրումներ: Հետպատերազմյան տարիներին դրանք անընդհատ աճում էին: Միայն 1965 թվականին հանրապետության ժողովրդական տնտեսության մեջ կատարված ներդրումները կազմեցին 405 միլիոն ռուբլի, այսինքն՝ ավելի շատ, քան ամբողջ հինգերորդ հնգամյակում: Առաջին հնգամյակի սկզբից մինչև 1966 թվականի սկիզբը Հայաստանի ժողովրդական տնտեսության մեջ կատարված կապիտալ ներդրումները կազմել են 2041 միլիոն ռուբլի:

Հանրապետության ինդուստրիալ զարգացման շնորհիվ ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության ընդհանուր սիստեմում էապես փոխվեց նրա տեղն ու նշանակությունը: Ներկայումս Հայկական ՍՍՀ մեքենաշինության ձեռնարկությունների արտադրանքի ավելի քան 90 տոկոսը իրացվում է հանրապետության սահմաններից դուրս: ՍՍՀՄ արտաքին առևտրի մեջ հետզհետե մեծանում է Հայաստանի մեքենաշինական արդյունաբերության արտադրանքի անվանացանկն ու իրացման ծավալը: Հանրապետության մեքենաշինական ձեռնարկությունների թողարկած արտադրանքի այնպիսի կարևոր տեսակներ, ինչպիսիք են շարժական էլեկտրակայանները, տրանսֆորմատորները, գեներատորները, կոմպրեսորները, կաբելային շինվածքները, զանազան սարքերը, ժամացույցները և այլն, իրացվում են արտասահմանյան տասնյակ երկրներում:

Քիմիական արդյունաբերության արտադրանքի շատ տեսակներ (կաուչուկը, քլորոբենզոլը, աղաթթուն, կարբիտ կալցիումը, պղնձարջասպը, ավտոդողերը և այն) իրացվում են ինչպես ՍՍՀՄ-ում, այնպես էլ նրա սահմաններից դուրս: Հանրապետության արդյունաբերական արտադրանքի 130 տեսակ արտահանվում են արտասահմանյան 70 երկրներ:

Սոցիալիստական շինարարության տարիներին մեծացել է բանվոր ծառայողների թիվը. առաջին հնգամյակի սկզբից մինչև այժմ այն ավելացել է 11,5 անգամ, մինչդեռ նույն ժամանակամիջոցում հանրապետության բնակչությու-

նը ավելացել է ընդամենը 2,2 անգամ: Ազգաբնակչության համեմատությամբ բանվոր ծառայողների մեծ աճը արդյունք է բնակչության հասարակական կառուցվածքի փոփոխման՝ հօգուտ ինդուստրիայի: Փոփոխվել է նաև քաղաքային ու գյուղական բնակչության միջև եղած հարաբերակցությունը՝ հօգուտ քաղաքայինի: Այդ փոփոխությունները տեղի ունեցան մի կողմից՝ գյուղական բնակչության մի մասի քաղաք փոխադրվելու, իսկ մյուս կողմից՝ որոշ գյուղական վայրեր քաղաքայինի փոխվելու շնորհիվ: Հայաստանում քաղաքային բնակչությունը ներկայումս կազմում է ամբողջ բնակչության 56 տոկոսը, 1913 թվականի 10,4 տոկոսի դիմաց: Էապես փոխվեց քաղաքային բնակչության սոցիալական կառուցվածքը, որտեղ ինդուստրիալ բնակչությունը գերակշռում է: Տեղի ունեցավ բանվոր ծառայողների առավել ռացիոնալ բաշխում ժողովրդական տնտեսության ճյուղերի միջև: Եթե 1940 թվականին արդյունաբերության և շինարարության մեջ զբաղված բանվորների և ծառայողների տեսակարար կշիռը բանվոր ծառայողների ընդհանուր թվի մոտ 30 տոկոսն էր, ապա 1964 թվականին հասավ 41-ի:

Հայաստանի ինդուստրիալ զարգացումը նշանավորվեց բանվոր դասակարգի բուռն աճով և բնակչության ընդհանուր թվի մեջ նրա տեսակարար կշռի բարձրացմամբ: Այսպես, 1913 թվականին Հայաստանում ընդամենը 5 հազար բանվոր կար, իսկ բնակչությունը 1 միլիոն էր, 1965 թվականին համապատասխանաբար՝ 2198 հազար բնակչություն, 155 հազար բանվոր:

Հանրապետության ինդուստրիալ զարգացումը զուգակցվեց գյուղատնտեսության սոցիալ-տեխնիկական վերակառուցմանը: Գյուղում սոցիալիստական արտադրահարաբերությունների հաստատմամբ լայն ասպարեզ բացվեց գյուղատնտեսության զարգացման համար. այն մեքենայացվեց ու էլեկտրիֆիկացվեց: Բավական է նշել, որ այժմ Հայաստանի գյուղատնտեսության մեջ գործում են 14 հազար տրակտոր (15 ձիաուժի վերածած), 1,6 հազար կոմբայն և բազմաթիվ գյուղատնտեսական այլ մեքենաներ: Սոցիալիստական շինարարության տարիներին ոռոգելի հողատարածությունները ավելացան 4.5 անգամ և այժմ կազմում են 263 հազար հեկտար: Դա ամբողջ վարելահողի կեսից ավելին է: Ընդարձակվեցին խաղողի և պտղատու այգիները: Ամբողջապես վերցրած Հայաստանի գյուղատնտեսության համախառն արտադրանքը 1965 թվականին, 1913 թվականի մակարդակը գերազանցեց 5,7 անգամ: Չնայած գյուղատնտեսական արտադրանքի աճին, նրա տեսակարար կշիռը հանրապետության համախառն արտադրանքի մեջ էապես իջավ և 1965 թվականին կազմեց 16 տոկոս:

Սոցիալիստական էկոնոմիկայի զարգացումը Հայաստանում հիմք ծառայեց բարձրացնելու բնակչության նյութական և կուլտուրական մակարդակը: Միայն անցած յոթնամյակում հանրապետության բնակչության դրամական եկամուտները ավելացան մոտ երկու անգամ: Բնակչության եկամուտների աճին համապատասխան մեծացավ մանրածախ ապրանքաշրջանառությունը, որը վերջին 15 տարում քառապատկվեց:

Ժողովրդի նյութական բարեկեցության բարձրացման հետ ծաղկեց նաև ձևով ազգային, բովանդակությամբ սոցիալիստական կուլտուրան: Հայկական ՍՍՀ պետական բյուջեով միայն սոցիալ-կուլտուրական նպատակներով կատարվող ծախսերը (մեկ շնչի հաշվով) տարեկան մոտ 120 ռուբլի են:

Ընթացիկ հնգամյակում Հայաստանի էկոնոմիկան նոր, ավելի բարձր աս-



տիճանի կհասնի: Արդյունաբերության արտադրանքի ծավալն ավելանալու է 1,8 անգամ: Դա նշանակում է, որ արտադրանքի միջին տարեկան աճը կազմելու է 12,5 տոկոս: Անհրաժեշտ է նշել, որ այս հնգամյակում Հայաստանի արդյունաբերության զարգացման տեմպերը բարձր են ո՛չ միայն ՍՍՀՄ միջին տեմպերից, այլև միութենական բոլոր հանրապետություններից, բացի Տաջիկական ՍՍՀ-ից: Արդյունաբերության և ամբողջ ժողովրդական տնտեսության բարձր տեմպերով զարգացումը մեծ չափով կախված է հանրապետության էներգետիկ բազայի ընդլայնումից:

Ահա թե ինչու հնգամյակի վերջում հանրապետության էլեկտրակայանների կարողությունը կավելանա 2,3 անգամ: Դրա հետ միասին, առաջանցիկ տեմպերով զարգանալու են մեքենաշինությունն ու մետաղամշակումը: Արդյունաբերության այս առաջատար ճյուղերի զարգացման տեմպերը գերազանցելու են արդյունաբերության բոլոր ճյուղերի զարգացման տեմպերին: Առավել արագ կզարգանան ճշգրիտ մեքենաշինությունը, էլեկտրոնային և ռադիոարդյունաբերությունը, սարքաշինությունը:

Ընթացիկ հնգամյակում հանրապետությունում արագ թափով կզարգանան նաև գունավոր մետալուրգիան, քիմիական և շինանյութերի արդյունաբերությունը: Էական փոփոխության կենթարկվի արդյունաբերության ճյուղային կառուցվածքը: 1970 թվականին մեքենաշինության տեսակարար կշիռը կհասնի ավելի քան 26 տոկոսի: Թեթև և սննդի արդյունաբերության արտադրանքի ծավալի բացարձակ աճի պայմաններում ծանր արդյունաբերության տեսակարար կշիռը հանրապետության արդյունաբերության համախառն արտադրանքի մեջ, ամբողջությամբ վերցրած, կհասնի ավելի քան 66 տոկոսի:

Գյուղատնտեսության բնագավառում մեծ ուշադրություն կնվիրվի բերքատվության բարձրացմանը: Առավելապես կաճի խաղողի, պտուղների և բանջարեղենի արտադրությունը:

Այս հնգամյակում զգալի չափով կբարձրանա ժողովրդի կենսամակարդակը: Բանվորների և ծառայողների միջին աշխատավարձը կաճի 20, իսկ կոլտնտեսականների եկամուտը՝ 35—40 տոկոսով: Անվազն 40 տոկոսով կաճեն հասարակական սպառման ֆոնդերի հաշվին բնակչությանը տրվող եկամուտներն ու արտոնությունները:

Այսպիսով, ընթացիկ հնգամյակը նոր, կարևոր էտապ կհանդիսանա հանրապետության էկոնոմիկայի աննախընթաց վերելքի և ժողովրդի կենսամակարդակի բարձրացման գործում:



ԱՐ. ՄՆԱՑԱԿԱՆՅԱՆ

Պատմական գիտությունների դոկտոր, պրոֆեսոր

# ՀԱՅ ԺՈՂՈՎՐԴԻ ԶԱՎԱԿՆԵՐԸ ՀՈԿՏԵՄԲԵՐՅԱՆ ՄԱՐՏԵՐՈՒՄ

Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխությունը մարդկության պատմության մեջ տեղի ունեցած բոլոր հեղափոխություններից, իր սոցիալական արմատական տարբերություններով հանդերձ, ամենաինտերնացիոնալիստականն էր: Հոկտեմբերով սկսվեց ճնշված ազգերի ազատագրման դարագլուխը:

Հոկտեմբերը պատմության մեջ կոչվում է նաև ռուսական հեղափոխություն: Դա, իհարկե, ճիշտ է, որովհետև նրա կատարողը, ամենից առաջ, ռուս բանվոր դասակարգն էր, որին կազմակերպեց և մարտի տարավ Ռուսաստանի կոմունիստական կուսակցությունը: Միայն ռուս բանվոր դասակարգը և նրան սատարող աշխատավոր գյուղացիությունը (հեղափոխական զորքը) կարող էին և տապալեցին ցարական բռնապետությունն ու վելիկոռուսական բուրժուազիայի տիրապետությունը: Նախկին ռուսական կայսրության հպատակ ազգերը, որոնք թեև կազմում էին երկրի ամբողջ ազգաբնակչության կեսից ավելին (60 տոկոսը) և անգութ ատելությամբ էին լցված ցարիզմի ու վելիկոռուսական բուրժուազիայի նկատմամբ, ի վիճակի չէին իրենց ուժերով տապալել ռուսական գաղութատիրական բռնապետությունը, ազատագրվել ազգային ճնշման շղթաներից: Այդ խնդիրը կարող էր կատարել և կատարեց միայն ռուս բանվոր դասակարգը: Նրա պատմական այդ սխրագործությունը կհիշվի դարեր: Ահա թե ինչու միանգամայն արդարացի է հոկտեմբերն անվանել «ռուսական հեղափոխություն»:

Սակայն Հոկտեմբերը միայն ռուսական հեղափոխություն չէր. այն միայն ռուս բանվոր դասակարգի և նրան սատարող աշխատավոր գյուղացիության պայքարի արդյունքը չէր: Հոկտեմբերի կազմակերպողն ու ղեկավարողը Լենինի ստեղծած կոմունիստական կուսակցությունն էր, որ դեռ իր ձևավորման շրջանում, Լենինի բնութագրմամբ, հանդիսանում էր «...Ռուսաստանի բոլոր ազգությունների պրոլետարների կուսակցություն» (Երկեր, հատ. 19, էջ 297): Այդ կուսակցությունը հիմնադրող համագումարը Լենինը անվանել է «...ռուս, հրեա, հայ, վրացի մարքսիստների բարձրագույն ժողով» (Երկեր, հատ. 20, էջ 555):



Հեղափոխության մեջ կուսակցության վարած գիծն էլ ելնում էր հենց այդ ինտերնացիոնալիստական սկզբունքներից:

Հոկտեմբերյան հեղափոխությունն ինտերնացիոնալ հեղափոխություն էր ո՛չ միայն իր ծրագրով, ճնշված ազգերի ազատագրման իր հռչակած մեծ սկզբունքներով, այլև հեղափոխության մեջ մասնակցած ղեկավարների ու ժողովրդական լայն զանգվածների կազմով, պայքարի ձևերով ու երանգներով:

Հոկտեմբերյան հեղափոխության նախապատրաստման և իրագործման դժվարին խնդիրը Լենինի հետ միասին լուծում էին այնպիսի ականավոր գործիչներ, ինչպիսիք էին ուկրաինական ժողովրդի զավակներ Ֆ. Ա. Սերգեևը (Արտեմ), Ն. Ա. Սկրիպնիկը, Վ. Պ. Զատոնսկին, Գ. Ի. Պետրովսկին. վրաց ժողովրդի զավակներ՝ Գ. Կ. Օրջոնիկիձեն, Ի. Վ. Ստալինը, Պ. Ա. Ջափարիձեն, Մ. Գ. Ցխակայան, լատիշ ժողովրդի զավակներ՝ Պ. Ի. Ստուչկան, Ֆ. Ա. Ռոզինը (Ազիս), Կարլ Պետերսոնը, Յան Բերզինը (Զիեմելիսը), հայ ժողովրդի զավակներ՝ Ս. Գ. Շահումյանը, Ա. Ֆ. Մյասնիկյանը, Ս. Ա. Մարտիրոսյանը (Ավանեսովը), բելոռուսներից՝ Դ. Ժիլունովիչը, Ա. Գ. Չերվյակովը, լիտվական ժողովրդի զավակներից Վ. Ս. Միցկրովիչ Կապսուկասը, էստոններից՝ Վ. Կինգիսեպը, Յան Անվելտը, ադրբեջանցիներից՝ Մ. Ազիզբեկովը, Ն. Նարիմանովը, հրեաներից՝ Յա. Մ. Սվերդլովը, Ե. Յարոսլավսկին, լեհերից՝ Ֆ. Ձերժինսկին, Ունշլիխտը և շատ ու շատ ուրիշներ:

Լենինյան կուսակցության ղեկավար կենտրոնը և ժողովրդական կոմիսարների խորհուրդը ներկայացնում էին հեղափոխությունը կատարող ազգերը, նրանց առանձնահատկություններն ու տրադիցիաները:

Այդպես բազմերանգ էին կարմիր գվարդիան, հեղափոխական նավաստիների ջոկատները, Պետրոգրադի և Մոսկվայի բանվորների ու զինվորների դեպուտատների սովետները, ռազմահեղափոխական կոմիտեների կազմը: Այդպես բազմերանգ էին սովետական զինված ուժերը, նրանց հրամանատարները, կոմիսարները:

Հոկտեմբերյան հեղափոխության ժամանակ ռուս և բազում այլ ազգերի բանվորների ու զինվորների հետ մեկտեղ, իրենց անթառամ փառքով պսակվեցին նաև հայ ժողովրդի պանծալի զավակները:

Ցարիզմի դեմ պայքարի տարիներին հայ աշխատավորության հեղափոխական ակտիվությունը հատուկ ընդգծել է մեծ Լենինը: Հայ ժողովրդի ամենալայն զանգվածները ենթարկվելով ցարական սատրապների անլուր ճնշմանն ու հալածանքին, ատելությամբ էին լցված տիրող կարգերի նկատմամբ և պատրաստ էին զենքը ձեռքներին պայքարի նետվել:

Ռուսական բուրժուա-դեմոկրատական հեղափոխության ժամանակաշրջանում հայ ժողովրդի ազգային-ազատագրական շարժումները շատ կողմերով համընկան աշխատավորների սոցիալական-դասակարգային պայքարի հետ: Ոստիկանությունը հատուկ զեկուցագիր ներկայացրեց ցարին «Հայկական շարժման մասին», որի էջերում ոստիկանապետը շարադրել է հայ ժողովրդի հեղափոխական-ազատագրական պայքարի բազմաթիվ փաստերը, ըստ որի՝ հայ ժողովուրդը ցարական իշխանությունների կողմից դիտվում էր որպես «խռովարարների» (кромола) ազգ: Կայսր Նիկոլայ երկրորդը այդ ժամանակ գրել է. «Վաղուց ի վեր ունեցած իմ անձնական կարծիքով ոչ մի վստահություն չի կարելի տածել հայերի նկատմամբ: Անվերապահորեն համոզված եմ, որ

նրանք են գլխավորում վրդովմունքի ամբողջ դավադրությունը Կովկասում»[1]:

Հայ ժողովրդի հեղափոխական ընդվզումներն ավելի ծավալվեցին ռուսական առաջին հեղափոխության շրջանում: Պետրոգրադի և Մոսկվայի պրոլետարիատի հեղափոխական ելույթները ոգեշնչեցին հայ աշխատավորությանը: Լենինի հրատարակած «Пролетарий» թերթը 1905 թվականին «Հեղափոխություն և հակահեղափոխություն» խորագրով հոդված տպագրեց, որը նվիրված էր Կովկասում հայերի հեղափոխական ելույթներին: Այդ հոդվածում «Пролетарий» թերթը գրել է. «Կովկասը կարծես թե ռուսական հեղափոխության առաջապահ պոստն է: Բնակչության առանձին խմբերի սոցիալական հակասությունները, որ սրվել են ազգային կոտորածներով, այստեղ քաղաքական իրավազրկության ուժեղացող ճնշման տակ դրսևորվեց վառ, ցայտուն կերպով արտահայտված հեղափոխական ձևերով: Դա հասցրեց այն բանին, որ ժողովրդական շարժման ղեկավար դերը վիճակվեց ամենահեղափոխական, ամենածայրահեղ տարրին՝ սոցիալ-դեմոկրատիային... Բայց սոցիալ դեմոկրատական կուսակցությունը հենվում է պրոլետարիատի վրա, իսկ Կովկասի պրոլետարիատի ամենագիտակից մասը հայ բանվորներն են: Եվ ահա կառավարության աչքում հայերը հեղափոխության սիմվոլ են դառնում Կովկասում...», ցարական իշխանությունները որոշում են ջախջախել այդ հեղափոխական ուժը, կազմակերպելով հայկական ջարդեր: Այնուհետև «Пролетарий» թերթը ընդգծում է, որ նկատի ունենալով այդ իրադրությունը, ցարական կառավարությունը փետրվարին մոբիլիզացրեց հակահեղափոխական ուժերը, կազմակերպեց հայ-թաթարական կոտորածներ նախ Բաքվում, ապա Գյանջայում, Շուշիում, Նախիջևանում և Կովկասի այլ քաղաքներում, նպատակ ունենալով մի կողմից՝ ջախջախել կովկասյան հեղափոխական պրոլետարիատին ու մյուս աշխատավորներին, մյուս կողմից՝ բոլորի ուշադրությունը շեղել ցարիզմի դեմ ուղղված հեղափոխական շարժումների հետագա զարգացումից և ուղղել ազգամիջյան ընդհարումների կողմը. (տե՛ս «Пролетарий» թերթը, 20 սեպտ. 1905 թ.»:

Կովկասի բոլոր բանվորներին ուղղված բոլշևիկների կուսակցության կոչում ասված էր. «Մահ կամ ազատություն». այս էր Պետերբուրգի բանվորների լոզունգը» (տե՛ս Ռևոլյուցիոն կոչեր և թռուցիկներ, էջ 126, Երևան, 1960), որը դարձավ նաև հայ ազատագրական պայքարի խորհրդանիշը: «Երեկվա խաղաղ, ստրուկ հայ մարդը այսօր ազատության մարտիկ է դարձել,— գրված է բոլշևիկյան կուսակցության մեկ ուրիշ կոչի մեջ,— երեկվա անհոգ խանութպանը այսօր կուրծքը բաց դուրս է գալիս ցարի գազանների դեմ...» (նույն տեղը, էջ 42): Այս է բոլշևիկյան կուսակցության Կովկասյան կոմիտեի՝ հայ ժողովրդի հեղափոխական ընդվզումներին տված բնութագիրը:

Հայ ժողովրդի աշխատավոր զանգվածները համակված էին ռուսական հեղափոխության գաղափարներով: Պետրոգրադի և Մոսկվայի, Բաքվի և Թիֆլիսի, Երևանի և Ալեքսանդրապոլի բանվորների հեղափոխական ելույթները հիացմունք էին առաջացնում նաև արևմտահայ աշխատավորների շրջանում: Բնորոշ մի փաստ բերենք: Ռուսական առաջին հեղափոխության օրերին հայ ականավոր բանաստեղծ Ատոմ Յարճանյանը՝ Սիամանթոն, «Կովկաս» բանաստեղծության մեջ գրում է.

[1] См. архив музея революции СССР, инвентарный фонд, 3—1239, № 16692, л. 7.



Ի՜նչ ոսկեղեն դարագլուխ է այս, և շղթաներու ի՜նչ զայրագին փշրտում...
Զա՛րկ, Կովկա՛ս, ավերակյալ ու արցունքոտ Հայաստանին աչքերը քեզի կնային...
Զա՛րկ, սա անարգ ճակատագիրը ջախջախելու և Չարիքն ըմբերանելու համար...
Զա՛րկ, վասնզի ամեն Ազատություն և ամեն Արև քո հարվածից կայծերեն պիտի ծնանին...
Զա՛րկ, ազատաբեր հարվածիդ շռինդը Մասիսեն ի Տավրոս և մինչև Հայրենիքին խորերը կը թնդա:

Այսպես էր երգում հայ աշխատավոր մարդու ըմբոստ ոգին: Իսկ 1917 թվականին, երբ Պետրոգրադի բանվորները նորից վառեցին հեղափոխության ջահը, հայ աշխատավորները անձնուրացաբար նետվեցին պայքարի:

Փետրվարյան զինված ապստամբության ժամանակ, երբ Պետրոգրադի բանվորները գրոհեցին Ռոմանովների դիկտատուրայի հիմքերի վրա և խորտակեցին միապետությունը, հայ ժողովրդի զավակներից շատերն այդ գրոհի մասնակիցները դարձան: Հին Արտաշատի զավակը, հեղափոխական մարտիկ Սիսակ Բաբախանյանն իր զինվորների ջոկատով «1917 թվականի փետրվարին ակտիվորեն մասնակցեց Նիկոլայ II-ի և նրա ընտանիքի ձերբակալմանը» (տե՛ս «Крымская правда» թերթը, 11 հոկտ. 1966 թ.):

Հայ ժողովրդի զավակները ռուսների և ուկրաինացիների, լատիշների և մյուս ազգերի աշխատավորների հետ Հոկտեմբերյան հեղափոխության վճռական նշանակություն ունեցող իրադարձությունների ամենաակտիվ, մարտական մասնակիցները դարձան: Այսպես, 1918 թվականի մարտին Բալագանսկի աքսորից Պետրոգրադ վերադարձավ հին հեղափոխական Սարգիս Հայկի Բաղդատյանը և գործի անցավ Պուտիլովյան գործարանում, դարձավ նրա կոմունիստական կազմակերպության ղեկավարը, ընտրվեց Պետրոգրադի բոլշևիկյան կոմիտեի քարտուղար (см. ЦПА ИМЛ, ф. 124, оп. 1, д. 224, л. 5), ակտիվ գործունեություն ծավալեց Պետրոգրադի կազմակերպությունում հոկտեմբերյան հեղաշրջումը նախապատրաստելու համար: Ապրիլի 3-ին, երբ Լենինը վերադարձավ Ռուսաստան, Ֆինլանդական կայարանում նրան դիմավորողների մեջ էին մի խումբ հայ գործիչներ, որոնց թվում էր նաև Նինա Աղաջանյանը: Այդ անվեհեր աղջիկը կոփվել էր բանտերում, աքսորում և հեղափոխական պայքարի մեջ նվաճել Վիբորգի շրջանի կոմունիստների սերը: Վիբորգի շրջանային կոմիտեն Նինա Աղաջանյանին ընտրեց այն պատվիրակների թվում, որոնք դիմավորեցին Լենինին և նրան հանձնեցին կուսակցական տոմսը:

Լենինը ֆինլանդական կայարանից պետք է մեկներ Կշեսինսկայայի պալատը, որտեղ գտնվում էր բոլշևիկների Կենտկոմը: Այն զրահապատ մեքենան, որ առանձնացվեց Լենինին տանելու համար, վստահվեց վարորդ զինվոր Միրոն Օհանյանին, որը հետագայում էլ աչքի ընկավ մարտերում:

Երբ սկսվեց բոլշևիկների կուսակցության VI համագումարը, ամբիոն բարձրացավ սպայի ուսադիրներով մի երիտասարդ: Դա Ալ. Մյասնիկյանն էր:

Նա առաջարկեց համագումարի օրակարգի մեջ մտցնել բանակում կուսակցական աշխատանքի և բանակը առաջիկա հեղափոխական մարտերին նախապատրաստելու հարցը: Այդ առաջարկն ընդունվեց: Զեկուցող հաստատվեց ինքը՝ Մյասնիկյանը, որը շարադրեց բազմամիլիոն զինվորներին բոլշևիկների

դրոշի շուրջը համախմբելու և զինված ապստամբությանը նախապատրաստելու
խնդիրները:
Սեպտեմբերի 13-ին, 15-ին, 20-ին Ստեփան Շահումյանը Պետրոգրադում
մասնակցեց բոլշևիկների Կենտկոմի պլենումի նիստերին, ուր քննարկվեցին
զինված ապստամբության կազմակերպման հարցերը: Շահումյանը հաստատա-
կամորեն կանգնած էր Լենինի դիրքերում և պաշտպանում էր լենինյան ստրա-
տեգիայի ու տակտիկայի սկզբունքները: Պետրոգրադի ռազմա-հեղափոխական
կոմիտեի հոկտեմբերի 20-ի նիստում, որին մասնակցում էին Լենինը, Պոդվոյ-
սկին, Ձերժինսկին, Նևսկին և ուրիշներ, որոշվեց Միքայել Տեր-Հարություն-
յանցին նշանակել Պետրոպավլովսկի բերդի կոմիսար, նրան առաջադրանք
տրվեց՝ անցնել բերդի հեղափոխական կայազորի գլուխը և ողջ զինանոցն օգ-
տագործել քաղաքի կարմիր գվարդիական ջոկատները զինելու համար: Այդ
պատասխանատու առաջադրանքը կատարվեց ամենայն ճշտությամբ: Այնու-
հետև Միքայել Տեր-Հարությունյանցը նշանակվեց Պուլկովոյի ջոկատի կոմի-
սար և հոկտեմբերի 27—30-ին հաջողությամբ ղեկավարում էր սպիտակգվար-
դիականների, յունկերների դեմ մղված մարտերը:

Հայ ժողովրդի զավակները ակտիվ մասնակցություն ունեցան Ձմեռային
պալատի գրավման հերոսամարտին: 1917 թվականի հոկտեմբերի 25-ի ուշ երե-
կոյան, երբ Լենինի անմիջական կարգադրությամբ Պետրոգրադի կարմիր գվար-
դիան և կայազորի հեղափոխական զորքերը գրոհեցին Ձմեռային պալատը,
նրա ջոկատների մարտակարգերում և կռիվը ղեկավարողների շարքերում էին
դասակի հրամանատար Մակար Մարտիրոսյանն իր զինվորներով, գվարդիական
ջոկատի զինկոմ, խանդավառ բանաստեղծ Ալեքսանդր Վերմիշևը, մեխանիկ-
վարորդ Միրոն Օհանյանը, սովետների երկրորդ համառուսաստանյան հա-
մագումարի պատգամավորներ՝ Գրիգոր Խախանյանը, կոմունիստ սպա
Լևոն Պիճիկյանը, Պետրոգրադի ռազմա-հեղափոխական կոմիտեի անդամ
Վարլամ Ավանեսովը և քարտուղար Լևոն Կարախանը, մարտիկ Տիգրան Ալեք-
սանյանը, Պետրոպավլովսկի բերդի զինկոմ Միքայել Տեր-Հարությունյանցը և
շատ ուրիշներ: Պետրոգրադի զինված ապստամբության Բալթիական նավա-
տիների ակտիվ գործողությունների մասնակիցներից էին հայ ծովայիններ
Հովհաննես Տեր-Իսահակյանը (այժմ Սովետական Միության նավատորմի ծո-
վակալ Իվան Իսակով) և Ալեքսանդր Գարունը:

Հայ ժողովրդի զավակները հեղափոխական սխրագործություններ կատա-
րեցին նաև Մոսկվայում: Այստեղ 1917 թվականի հոկտեմբերի 25-ից նոյեմ-
բերի 2-ը արյունահեղ մարտեր էին տեղի ունենում սովետական իշխանության
հաստատման համար:

Մոսկվայի բոլշևիկյան կոմիտեն, Մոսկվայի սովետի գործկոմը և նրան կից
ռազմա-հեղափոխական կոմիտեն պետրոգրադցիների օրինակով մարտեր ծա-
վալեցին իշխանությունը գրավելու համար: Իսկ Մոսկվայի քաղաքային դուման
և զինվորական օկրուգի շտաբը մեծագույն ճիգեր էին թափում Մոսկվան հակա-
հեղափոխության ձեռքը պահելու, ուժեր համախմբելու, արշավանքի գնալու
Պետրոգրադի վրա ու այնտեղ ստեղծված սովետական իշխանությունը տապա-
լելու համար:

Մոսկվայում տեղի ունեցած զինված ապստամբության կարևոր հատված-
ներից մեկը Զամոսկվորեցկի շրջանն էր: Կարմիրգվարդիականները այնտեղից
գրոհեցին Կրեմլի դարպասների վրա, շրջապատեցին և գրավեցին օկրուգի զին-



վորական շտաբը: Զամոսկվորեցկի շրջանի կարմիր գվարդիայի պետն սկզբում
բանվոր հեղափոխական Դոբրինինն էր, իսկ տեղակալը՝ Պետրոս Հարություն-
յանցը: Դաժան մարտում Դոբրինինը սպանվեց: Գվարդիական ջոկատի ղեկա-
վարությունը հանձնվեց Պետրոս Հարությունյանցին: Նրա հետ միասին այդ
գվարդիայում էին կռվում հայ մարտիկներ Ռուբեն Աբգարյանը, Արտեմ Խա-
լաթյանը, Պարույր Տեր-Գրիգորյանը, Վաղարշակ Տեր-Գրիգորյանը, Իվանով-
Կավկազսկի Դավթյանը, Լուսիկ Լիսինյանը և ուրիշներ: 1917 թվականի նոյեմ-
բերի 1-ին Զամոսկվորեցկի շրջանի կարմիրգվարդիականները հնգօրյա կատա-
ղի մարտերից հետո շրջապատեցին Մոսկվայի զինվորական օկրուգի շտաբը և
գրավեցին այն:

Այդ մարտերում իր սխրագործություններով աչքի ընկավ Զամոսկվորեցկի
շրջանի կոմերիտմիության ղեկավար գործիչ, կարմիրգվարդիական Լուսիկ Լի-
սինյանը: Հայ ժողովրդի այդ անվեհեր դուստրը կայտառ էր ու սանիտար,
հրաձիգ էր ու կուսակցական, ագիտատոր էր ու կազմակերպիչ: Մարտական ա-
ռաջադրանքը կատարելու պահին էլ նա ընկավ թշնամու գնդակից և թաղվեց
Կրեմլի պատի տակ Հոկտեմբերյան հերոսամարտի զոհերի եղբայրական գե-
րեզմանոցում:

Պետրոգրադի և Մոսկվայի հերոսամարտերից հետո ամենանշանակալից
իրադարձությունը բանակի զորակայանում կատարված հեղաշրջումն էր, հին
գեներալների իշխանության տապալումը և նոր, սովետական հրամանատարու-
թյան ու զորակայանի ստեղծումը: Զորակայանի հեղաշրջումը ճակատագրա-
կան նշանակություն ունեցավ նորաստեղծ սովետական իշխանության համար:
Լենինն այստեղ ևս, այդ վճռական հատվածում ուղարկեց ո՛չ միայն ռուս ակա-
նավոր հեղափոխական մարտիկների, այլև ճնշված ազգերի ներկայացուցիչնե-
րին, նրանց վստահելով ամենաբարդ և պատասխանատու առաջադրանքներից
մեկը:

Գլխավոր զորակայանը, որ գտնվում էր Մոգիլյովում, 1917 թվականի
հոկտեմբերի վերջերին և նոյեմբերի սկզբներին ռեակցիոն ուժերի գլխավոր
կենտրոնն ու հենարանն էր: Կերենսկու տապալումից հետո իրեն գերագույն
գլխավոր հրամանատար հռչակած գեներալ Դուխոնինը չընդունեց սովետական
իշխանությունը և իր մոտ կանչեց Պետրոգրադից փախած մինիստրներին: Մո-
գիլյովի զորակայանում Չեռնովի գլխավորությամբ նոր կառավարություն
կազմեցին: Չեռնովի «կառավարության» կազմի մեջ մտան հին մինիստրներ,
գեներալներ, կադետական և էսեռա-մենշևիկյան լիդերներ: Ծրագիրը պարզ էր.
ուժեր հավաքել, արշավի գնալ Պետրոգրադի վրա, տապալել սովետական իշ-
խանությունը:

Այդ օրերին էլ բոլշևիկների Կենտկոմի ներկայացուցիչ Գ. Կ. Օրջոնիկիձեն և
կենտգործկոմի ու ժողկոմսովետի ներկայացուցիչ Վ. Վոլոդարսկին, մասնակ-
ցելով արևմտյան ռազմաճակատի զինվորական համագումարին, առաջարկ
մտցրին՝ ցրել հին հրամանատարությունն ու շտաբը, ռազմաճակատի գլխավոր
հրամանատար ընտրել Ալ. Մյասնիկյանին: Մամուլում այդ մասին հաղորդա-
գրություններ հրապարակվեցին: Զինվորական պատգամավորների համագումա-
րը Ալ. Մյասնիկյանին միահամուռ ռազմաճակատի հրամանատար ընտրեց: Այդ
օրերին մամուլում տպված հաղորդագրություններում կարդում ենք. «Կեցցե՛
Ռուսաստանի ժողովրդական բանակի առաջին ընտրովի գլխավոր հրամանա-
տարը» («Звезда» 27 ноября, 1917):

Հարկավոր էր գրավել և գլխավոր զորակայանը: Ալ. Մյասնիկյանն ուղիղ գծով Մինսկից կապվեց Պետրոգրադի հետ, Լենինին հաղորդեց, թե «Մոգիլյովը երկրորդ Վերսալ է դառնում» (Партархив белорусского филиала ИМЛ, ф. 60, д. 32, л. 75): Դա 1917 թվականի նոյեմբերի 12-ին էր, հոկտեմբերյան հեղաշրջումից երկու շաբաթ անց: Համեմատությունը տեղին էր, դիպուկ: Վերսալը տապալեց Փարիզի կոմունան, որովհետև սկզբից ևեթ կոմունարները ձեռք չտվեցին Վերսալին, նրան թույլ տվեցին ուժեր կուտակել և հարձակման անցնել Փարիզի վրա: Իրավաբան և տնտեսագետ, պատմաբան և ռազմագետ Ալ. Մյասնիկյանը լավ գիտեր պատմության դասերը: Նա ահազանգեց, որ Մոգիլյովը պետք է գրավել, Դուխոնինի զորակայանը պետք է ցրել:

Լենինն իր ձեռքը վերցրեց գլխավոր զորակայանի գրավման լարված պայքարը: Ժողկոմսովետի դեկրետով Դուխոնինը պաշտոնանկ արվեց և հայտարարվեց օրենքից դուրս: Լենինի հավատարիմ աշակերտներից մեկը՝ Նիկոլայ Կռիլենկոն նշանակվեց գերագույն գլխավոր հրամանատար և Պետրոգրադից հատուկ գնացքով ուղևորվեց Մոգիլյով: Լարված պայքարը ավարտվեց Դուխոնինի զորակայանի լիկվիդացմամբ: Չեռնովի «կառավարությունը» այստեղից էլ փախուստի դիմեց:

Հեղաշրջումը կատարող հեղափոխական ուժերը բացառիկ ցայտունությամբ արտահայտեցին իրենց ինտերնացիոնալ բնույթը: Հին զորակայանի դեմ Մինսկից արշավի գնացող զորախումբը կազմված էր ռուս և ուկրաինացի զինվորներից, որը գլխավորում էր Ալ. Մյասնիկյանը: Պետրոգրադից զորակայանի վրա հարձակվող զորքերին մարտի էր տանում Ն. Կռիլենկոն: Նա իր «Смерть старой армии» ձեռագիր աշխատության մեջ գրել է, թե ինչ ուժերով էր շարժվում Մոգիլյովի վրա: Այդ ուժերն էին. ա) Բալթիական նավաստիների ջոկատը Պավլովի ղեկավարությամբ, բ) Լիտվական գվարդիական գնդի ռազմագնացքը, գ) Մ. Տեր-Հարությունյանցի հրամանատարությամբ գործող ջոկատը. դ) Այստեղ պետք է հիշատակվի նաև ընկեր Վացետիսի անունը, որը դաշտային շտաբի օպերատիվ բաժնի պետ դարձավ, իսկ հետո գլխավոր հրամանատար (см. Военно-исторический журнал, № 11—12, 1965):

Այսպես, հին զորակայանը, հակահեղափոխության գլխավոր որջը ջախջախվեց ռուսների և ուկրաինացիների, լատիշների և հայերի, լիտվացիների և ուրիշ ազգությունների զինվորների համատեղ ջանքերով:

Գլխավոր զորակայանում հաստատվեց հեղափոխական կարգ: Բանակի զինվորական իշխանությունն ամբողջովին անցավ Ն. Վ. Կռիլենկոյին, որպես ռազմական գործերի ժողովրդական կոմիսարի և գերագույն գլխավոր հրամանատարի և Ա. Ֆ. Մյասնիկյանին, որպես գերագույն գլխավոր հրամանատարի տեղակալի և արևմտյան ռազմաճակատի գլխավոր հրամանատարի: Կադետաէսեռա-մենշևիկյան պարագլուխները դիմեցին մի խարդախ քայլի Մյասնիկյանի դեմ: Թերթերում մի ամբողջ պասկվիլ տպեցին «Ալեքսանդր Մյասնիկյանց» խորագրով. այնտեղ գրում էին, թե իբր, Ալ. Մյասնիկյանը դիտմամբ կեղծել է իր ազգանունը, դարձել է Մյասնիկով, որ զինվորները կարծեն, թե ռուս է, այնինչ նա ազգությամբ հայ է, Լենինի կամակատարը և նրա մասին տարածեցին ամեն տեսակի հերյուրանքներ: Այդ օրերին տեղի ունեցավ արևմտյան ռազմաճակատի և մարզի գյուղացի զինվորների համագումար, որը ողջույնի նամակ ընդունեց՝ ուղղված Կռիլենկոյին և Մյասնիկյանին.



«Արևմտյան ռազմաճակատի գյուղացի-զինվորների արտակարգ համագումարը ողջունում է իր ընտրովի առաջնորդներին—ընկերներ Կռիլենկոյին և Մյասնիկյանին, որոնք հեղափոխական բանակի կամքով կանգնել են ժողովրդի զինված ուժերի գլուխը: Զինվոր-գյուղացիները բոլոր ուժերով կօգնեն իրենց ժողովրդական առաջնորդներին և արյամբ կամրապնդեն քաջարի պայքարը հաղթության ու ազատության համար» («Революционная ставка» թերթը, 21 դեկտ. 1917):

Ռազմական գործերի ժողկոմ Կռիլենկոն դեկտեմբերի սկզբներից վերադարձավ Պետրոգրադ: Գերագույն գլխավոր հրամանատարի պարտականությունները դրվեց Ա. Ֆ. Մյասնիկյանի վրա, որը պատվով կատարեց ժողկոմսովետի դիրեկտիվները և մեծ ավանդ ներդրեց հին բանակը վերակազմելու և նոր, սովետական բանակ ստեղծելու գործում:

Գլխավոր զորակայանում կազմակերպվեց երկու շտաբ՝ հինը, որի պետն էր գեներալ Մ. Բոնչ-Բրուևիչը և հեղափոխական-դաշտայինը, որի պետ նշանակվեց Միքայել Տեր-Հարությունյանցը: Հին շտաբը իրագործում էր հին բանակի վարչական ապարատը վերակազմելու աշխատանքները, իսկ նոր ստեղծված հեղափոխական դաշտային շտաբը ղեկավարում էր հեղափոխական զորքի մարտական գործողությունները և պայքարը Կալեդինի, ուկրաինական ռադայի և հակասովետական մյուս բանդաների դեմ: Հաշվետվությունները դաշտային շտաբի գործողությունների մասին անմիջականորեն ներկայացվում էին Լենինին: 1918 թվականի հունվարի 15-ին Լենինը ծովային հեղափոխական կոմիտեին ուղարկած նամակում գրում էր. «Խնդրում եմ արտակարգ միջոցներ ձեռք առնել և ընկ. Տեր-Հարությունյանցին անհապաղ տրամադրել 2000 նավաստի՝ բուրժուական ռադայի դեմ ռազմական գործողություններ մղելու համար. ԼԵՆԻՆ» (ППС, т. 50, стр. 31):

Հոկտեմբերը հաղթանակեց և սովետական Ռուսաստանը՝ աշխարհում առաջին և միակ սոցիալիստական երկիրը աներեր կանգնեց ընդդեմ կապիտալիստական աշխարհի: Սովետական իշխանության դեմ գրոհի ելան Ռուսաստանի կալվածատիրական-բուրժուական դասակարգերն իրենց սպիտակգվարդիական բանակներով, սրանց օգնության եկան նախ՝ գերմանա-թուրքական, ապա նաև անգլո-ֆրանս-ամերիկյան և ճապոնական ինտերվենտները: Դաժան, արյունահեղ քաղաքացիական պատերազմը և օտարերկրյա ինտերվենտների դեմ պայքարը տևեց երեք տարի, 1918 թվականի սկզբներից մինչև 1920 թվականի վերջերը:

Հայ ժողովրդի զավակները անհատապես և մեծ զանգվածներով աչքի ընկնող սխրանքներ կատարեցին նաև այդ մարտերում, պաշտպանեցին սովետական իշխանությունը Ռուսաստանում, խորապես գիտակցելով, որ հաղթանակած Սովետական Ռուսաստանը բոլոր ժողովուրդների, այդ թվում և տառապյալ հայ ժողովրդի ազատագրման հենարանը կլինի:

Արևելյան ռազմաճակատում ձևավորվեց Սիմբիրսկի դիվիզիան, Կարմիր բանակի առաջին միավորումներից մեկը, որի հրամանատար նշանակվեց Հայկ Դմիտրիի Բժշկյանը (Գայը): Նա, որ անցել էր հայ ազգային-ազատագրական շարժման բովով մեծ հոկտեմբերի հաղթանակից հետո աներեր հարեց լենինյան անպարտելի բանակին և դարձավ սոցիալիստական պետության զինված ուժերի ականավոր զորավար, ճանաչված հերոս: Գայը դիվիզիայի հրամանա-

տար էր, կորպուսի հրամանատար, առաջին հեղափոխական բանակի հրամանատար, սովետական ականավոր ռազմական տեսաբան։

Հեղափոխության և քաղաքացիական պատերազմների հորիզոնում պայծառ աստղի նման փայլատակում է Գասպար Կարապետի Ոսկանյանի անունը։ Դա գաղթի դառնությունն ապրած հայ ընտանիքի զավակ էր, մի կտոր հացի համար ամեն ինչով զբաղվող՝ վարսավիր, գնդի սան։ Այնուհետև Գասպարը դարձավ սպա, փոխգնդապետ, Մոսկվայի մի շրջանի զինկոմ, Կարմիր բանակի առաջին գնդերի կազմակերպման ակտիվ մասնակից։ Արևելյան ռազմաճակատում նա կազմակերպում է 25-րդ դիվիզիան, մարտերից մեկում վիրավորվելուց հետո հրամանատարությունը հանձնում է դիվիզիայի բրիգադներից մեկի պետ Չապաևին, որի զոհվելուց հետո կրկին որպես դիվիզիայի հրամանատար հերոսական մարտեր է մղում կոլչակյան բանակների դեմ։ IV բանակի հրամանատար Մ. Ֆրունզեն նշանակվեց թուրքեստանյան ռազմաճակատի հրամանատար, Գասպար Ոսկանյանը փոխարինեց Ֆրունզեին ու հմտորեն ղեկավարեց մարտերը ուրալյան երկրամասն ազատագրելու և կոլչակյան բանդաները ջախջախելու մեծ գործը։ Երբ պայքարի կենտրոնը դարձավ հարավ-արևմտյան ճակատը, Ուկրաինան, Կիևը, ուր մոլեգնում էին սպիտակ լեհերի բանակները, Լենինի ցուցումով Գասպար Ոսկանյանը նշանակվեց XII բանակի հրամանատար և նրա առջև խնդիր դրվեց անցնել Դնեպրը, հյուսիսից շրջանցել Կիևը, իր բանակի ուժերով օկուպանտների լծից ազատագրել Ուկրաինայի մայրաքաղաքը։ Գասպար Ոսկանյանն այդ բարդ խնդիրը ևս պատվով կատարեց։

Մեկ ուրիշ ականավոր հայ զորավար՝ Գրիգոր Խախանյանը աչքի ընկնելով Պետրոգրադի զինված ապստամբության ժամանակ, մեկնեց ռազմաճակատ, դարձավ Կարմիր բանակի մի բրիգադի հրամանատար և մասնակցեց Կոլչակի բանակի կենտրոնի, Օմսկ քաղաքի գրավման ռազմական գործողություններին։ Այնուհետև նրա հրամանատարական տաղանդը նոր ուժով դրսևորվեց արևմտյան ռազմաճակատում, հատկապես Բելոստոկ քաղաքի ազատագրման մարտերում։

Հոկտեմբերյան հեղափոխության հաղթանակի համար մղված մեծ պայքարում հայ ժողովրդի զանգվածային մասնակցությունն առանձնապես դրսևորվեց հարավային Ռուսաստանում, Դենիկինյան-վրանգելյան բանակների ջախջախման գործում և Բաքվի կոմունայի ստեղծման ու նրա պաշտպանության հերոսամարտերում։ Այստեղ արդեն խոսքը վերաբերում է ո՛չ միայն ականավոր հեղափոխական գործիչներին և զորավարներին, այլ «ամբոխներին խելագարված», հազար և տասնյակ հազար հայ բանվորներին, գյուղացիներին, զինվորներին։ Դրանք իրենց հայրենիքից, հայկական նահանգներից ու շրջաններից բռնագաղթի ենթարկված կամ օկուպացիոն ռեժիմից փախած հայ աշխատավորներն էին, որոնք ապաստան էին գտել Սովետական Ռուսաստանում։

1918 թվականին, Բաքվում, երբ ձևավորվեց Կովկասյան Կարմիր բանակը, նրա գլխավոր հրամանատար ընտրվեց հայ ժողովրդի պանծալի զավակ Գրիգոր Կորգանովը (Ղորղանյանը)։

Մեծ Հոկտեմբերի դրոշին փարած ռուս, ուկրաինացի, բելոռուս, հրեա, վրացի, ադրբեջանցի, լատիշ և այլ ազգերի անձնուրաց մարտիկների հետ ուսուսի, հազարավոր հայ ռազմիկներ աննահանջ մարտեր մղեցին Արևելքի շեմին հաստատված Բաքվի փառավոր կոմունայի պաշտպանության համար։ Սոցիալիստական հեղափոխության Անդրկովկասյան այդ օրրանի այրող բոցերում



մկրտված, հայ ժողովրդի առաջավոր զավակները ևս ընկան անհավասար մարտերում, ընկան այն խոր հավատով, որ Հոկտեմբերի վառած ջահն անմար է։

1918 թվականին Հյուսիսային Կովկասում հայ կամավորներից ձևավորվեց Կարմիր բանակի առանձին գունդ, որը կոչվեց Լենինի անունով։ Լենինի անվան հայկական գնդի և մյուս հայկական ջոկատների զինվորների թիվը 1918 թվականի աշնանը հասավ 4000 մարդու։ Գնդի հրամանատարն էր Թագվոր Միկիչյանը, զինվորական կոմիսարը՝ Գևորգ Սրապյանը։ Հայ զինվորների շրջանում քաղաքական մեծ աշխատանք էին տանում Արմենակ Հովսեփյանը, Գևորգ Արծրունին, Արամ Շահգելդյանը, Թադևոս Մանդալյանը, Գուրգեն Հայկունին, Գրիգոր Վարդանյանը, Հարություն Գասպարյանը և ուրիշներ։

Դենիկինյան բանդաների դեմ մղված մարտերում աչքի ընկնող ծառայություններ մատուցեցին Գևորգ Աթարբեկյանը, Սիմոն Տեր-Պետրոսյանը (Կամոն), Արտավազդ Արաքոլին, Շավարշ Ամիրխանյանը, Սերգեյ Մելիք-Օսիպովը, Արամ Միրզաբեկյանը, Պետրոս Դանիելյանը, Աղասի Շահինյանը, Արամ Ծատուրյանը և արտակարգ հանձնաժողովի (Չեկայի) ուրիշ աշխատողներ։ Նրանք գործում էին Ս. Մ. Կիրովի և Գ. Կ. Օրջոնիկիձեի հետ միասին, նրանց ղեկավարությամբ։

Հոկտեմբերը և սովետական իշխանությունը ոչնչացրին ազգային ճնշումը, սոցիալական և ազգային ազատություն բերին նախկին ռուսական կայսրության հպատակ իրավազուրկ ազգերին։ Ճնշված ազգերը փարվեցին Հոկտեմբերի դրոշին և կրծքով պաշտպանեցին Ռուսաստանի սովետական իշխանությունը, իսկ այդ իշխանությունը կատարեց իր ինտերնացիոնալիստական պարտքը, եղբայրական օգնության հասավ ուկրաինացիներին ու բելոռուսներին, լատիշներին ու հայերին, վրացիներին ու էստոնացիներին, լիտվացիներին ու ադրբեջանցիներին, Միջին Ասիայի ժողովուրդներին և Հյուսիսային Կովկասի ու Սիբիրի փոքր ազգերին, հնարավորություն ընձեռեցին նրանց ստեղծելու իրենց ազգային սովերեն պետականությունը, բռնելու ազգային վերածննդի, սոցիալիստական զարգացման ու բարգավաճման ուղին։



# Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԾՆՆԴՅԱՆ 100-ամյակի առթիվ

Մ. ԱՆՏՈՆՅԱՆ

## Վ. Ի. ԼԵՆԻՆԸ ԵՎ ՊԱՏՄՈՒԹՅԱՆ ԴԻԱԼԵԿՏԻԿԱՆ

### (ՕԲՅԵԿՏԻՎԻ ԵՎ ՍՈՒԲՅԵԿՏԻՎԻ ՀԱՐԱԲԵՐԱԿՑՈՒԹՅՈՒՆԸ)

Հասարակական մտքի պատմության մեջ Մարքսն ու Էնգելսը առաջինն էին, որոնք բացահայտեցին և գիտականորեն հիմնավորեցին հասարակության զարգացման օբյեկտիվ օրինաչափությունները, մի ֆորմացիայից մյուսին և, հատկապես, կապիտալիզմից սոցիալիզմին անցնելու օրինաչափությունները: Ընդ որում, նրանք ղեկավարվում էին հենց իրենց ստեղծած զարգացման դիալեկտիկական տեսությամբ: Խոսելով այդ մասին, Վ. Ի. Լենինն իր Պետություն և հեղափոխություն գրքում գրել է. «Մարքսի ամբողջ տեսությունը զարգացման տեսության կիրառումն է արդի կապիտալիզմի վերաբերմամբ՝ այդ տեսության ամենահետևողական, ամենալիակատար, մտածված ու բովանդակությամբ հարուստ ձևով: Բնական է, որ Մարքսի առաջ ծառացավ այդ տեսության կիրառման հարցը թե՛ կապիտալիզմի առաջիկա կրախի և թե ապագա կոմունիզմի ապագա զարգացման վերաբերմամբ:

Իսկ ինչպիսի՞ տվյալների հիման վրա կարելի է առաջադրել ապագա կոմունիզմի ապագա զարգացման հարցը:

Այն հիման վրա, որ այն ծագում է կապիտալիզմից, պատմականորեն զարգանում է կապիտալիզմից, հետևանք է այնպիսի հասարակական ուժի գործողությունների, որը կապիտալիզմն է ծնել: Մարքսի մոտ փորձի հետք անգամ չկա ուտոպիաներ հորինելու, դատարկ գուշակություններ անելու այնպիսի բաների մասին, ինչ որ չի կարելի գիտենալ: Մարքսը դնում է կոմունիզմի հարցն այնպես, ինչպես բնագետը կդներ մի նոր, ասենք, բիոլոգիական տեսակի զարգացման հարցը, երբ մենք գիտենք, որ այն հենց այս կերպ է ծագել ու այսինչ որոշ ուղղությամբ է կերպարանափոխվում» (Երկեր, հատ. 25, էջ 595):



Մարքսի ուսմունքի ամբողջ էությունից բխում է, որ կապիտալիզմից կոմունիզմին անցումը, լինի այն խաղաղ ճանապարհով, թե զինված ապստամբության միջոցով, չի կարող իրագործվել ինքնահոսի կարգով, տարերայնորեն: Պրոլետարիատի դիկտատուրային անցնելու համար համապատասխան օբյեկտիվ պայմանների առկայության դեպքում վճռական նշանակություն են ստանում սոցիալիստական հեղափոխության սուբյեկտիվ գործոնները՝ ամենից առաջ բանվոր դասակարգի և նրա ավանգարդի հեղափոխական էներգիան, գիտակցականությունը, կազմակերպվածությունն ու վճռականությունը: Դրանում էլ հենց իր հաստատումն է գտնում հասարակության զարգացման, մասնավորապես հեղափոխության մեջ օբյեկտիվ և սուբյեկտիվ գործոնների դիալեկտիկայի վերաբերյալ մարքս-լենինյան դրույթը:

Ընդգծելով դիալեկտիկական այդ հարաբերակցությունը պատմության մեջ, Մարքսը նշել է, որ մարդիկ միաժամանակ ինչպես իրենց դրամայի հեղինակները, այնպես էլ նրա դերասաններն են: Առաջին իմաստով դա նշանակում է, որ մարդիկ իրենք են կերտում իրենց պատմությունը: Երկրորդով՝ մարդիկ կերտում են պատմությունը որոշակի օբյեկտիվ պայմաններում, որոնք, վերջին հաշվով, որոշում են նրանց հայացքները, համոզմունքները, նպատակներն ու խնդիրները: Այլ կերպ ասած, մարդու սուբյեկտիվ գործունեությունը պայմանավորված է կոնկրետ իրադրությամբ, նյութական և հոգևոր արտադրության կոնկրետ պայմաններով:

Մարքսիզմի հիմնադիրները մշակեցին պրոլետարիատի դասակարգային պայքարի տակտիկայի հարցերը՝ հեղափոխության սուբյեկտիվ գործոնի այդ կարևոր կողմը: Լենինը շեշտում էր, որ առանց այդ կողմի Մարքսը իրավացիորեն իր մատերիալիզմը համարում էր խիստ միակողմանի, անկենդան: Պրոլետարիատի դասակարգային պայքարի տակտիկան Մարքսը կառուցել է մատերիալիստական դիալեկտիկայի ամուր հիմքերի, օբյեկտիվ օրենքների ճիշտ ճանաչման վրա:

Մարքսիզմի թշնամիները Մարքսին մեղադրում են, այսպես կոչված, «տնտեսական մատերիալիզմի»[1] մեջ, պնդելով, թե իբր Մարքսը բացասում է սուբյեկտիվ գործոնի դերը պատմության մեջ ընդհանրապես, կապիտալիզմից սոցիալիզմին անցնելու գործում՝ մասնավորապես, թե իբր նա ամբողջովին հարում է «տնտեսական դետերմինիզմին»: Բուրժուական փիլիսոփաները, սոցիոլոգները միաժամանակ ձգտում են ինչ-որ հակասություն գտնել մարքսիզմի և լենինիզմի միջև: Նրանք հայտարարում են, թե իբր Լենինը հաշվի չէր առնում հասարակական պրոցեսների օբյեկտիվ պայմանները, այլ նկատի էր ունենում միայն սուբյեկտիվ գործոնը և ըստ էության հանդես էր գալիս իբրև վոլյունտարիստ: Պատմական իրականությունը մեկընդմիշտ հաստատեց, որ Լենինը ոչ միայն տուրք չէր տալիս վոլյունտարիզմին, այլ անհաշտ պայքարում էր նրա և հակամարքսիստական այլ հայացքների դեմ:

Տվյալ հոդվածում մենք խնդիր չենք դնում վերլուծել պրոբլեմին վերաբերող բոլոր հարցերը, այլ միայն համառոտակի կանգ կառնենք երեք հիմնական հարցերի վրա, որոնք իրենց մշակումն ու զարգացումն են գտել Վ. Ի. Լենինի մոտ:

---

[1] Դեռևս անցյալ դարի վերջերին լիբերալ նարոդնիկների գաղափարախոս Ն. Կ. Միխայլովսկին, խեղաթյուրելով Մարքսի մտքերը, այդպես էր անվանել պատմական մատերիալիզմը:

## 1. ՕԲՅԵԿՏԻՎ ԵՎ ՍՈՒԲՅԵԿՏԻՎ ԳՈՐԾՈՆՆԵՐԻ ԴԻԱԼԵԿՏԻԿԱՆ ՊԱՏՄՈՒԹՅԱՆ ՄԵՋ ԸՆԴՀԱՆՐԱՊԵՍ

*Վ. Ի. Լենինը ստեղծագործաբար զարգացրեց մարքսիզմը պատմական նոր պայմաններում։ Գիտական այդ սխրագործության մեջ առանձնահատուկ տեղ է գրավում օբյեկտիվ պայմանների և սուբյեկտիվ գործոնի դիալեկտիկայի մարքսիստական հասկացողության հետագա մշակումն ու զարգացումը։*

*Պատմության մեջ օբյեկտիվ պայմանների և սուբյեկտիվ գործոնի դիալեկտիկայի հարցի վերաբերյալ Վ. Ի. Լենինը գրել է. «Մարքսիզմը մյուս բոլոր սոցիալիստական տեսություններից տարբերվում է նրանով, որ նա իրերի օբյեկտիվ դրության և էվոլյուցիայի օբյեկտիվ ընթացքի վերլուծման մեջ լիակատար գիտական լրջությունը երևելի կերպով միացնում է մասսաների հեղափոխական եռանդի, հեղափոխական ստեղծագործության, հեղափոխական ձեռներեցության նշանակության ամենավճռական ճանաչման հետ, ինչպես նաև, իհարկե, այն առանձին անհատների, խմբերի, կազմակերպությունների, կուսակցությունների նշանակության ճանաչման հետ, որոնք կարողանում են շոշափել և իրացնել կապն այս կամ այն դասակարգի հետ» (Երկեր, հատ. 13, էջ 29)։*

*Լենինիզմը, հետևողականորեն պաշտպանելով օբյեկտիվի և սուբյեկտիվի հարաբերակցության գիտական տեսակետը, անհաշտ պայքարել ու պայքարում է այդ հարցում եղած երկու ծայրահեղությունների՝ վոլյունտարիզմի և ֆատալիզմի դեմ։*

*Վոլյունտարիզմը ելնում է այն բանից, թե իբր հասարակական պատմական պրոցեսների հիմքում ընկած են ոչ թե նյութական պայմաններն ու կյանքի օբյեկտիվ օրինաչափությունները, այլ հոգեկան գործոնները՝ առանձին անհատների գիտակցականությունն ու կամքը, թե մարդու գործունեությունը պայմանավորված է ոչ թե օբյեկտիվ պայմաններով, այլ գիտակցության և կամքի թելադրանքով։*

*Վ. Ի. Լենինը մահացու հարված հասցրեց նարոդնիկական գաղափարախոսությանը, որն ամբողջապես ներծծված էր վոլյունտարիզմով։ Ըստ նարոդնիկների, այսպես կոչված, սոցիոլոգիայի սուբյեկտիվ մեթոդի, հասարակության զարգացումն ականավոր անհատների գործունեության, ավելի ճիշտ՝ նրանց քմահաճույքի արդյունքն է։*

*Վ. Ի. Լենինը անողոք պայքարել է կոմունիստական և բանվորական շարժման մեջ աջ և «ձախ» հոսանքների դեմ։ «Ձախ» օպորտունիստներն ուզում էին բլանկիստական մեթոդներով, դավադրությունների միջոցով հասնել իշխանության։ Այդպիսի ավանտյուրիզմի տիպիկ օրինակ է տրոցկիզմը։ Իսկ ինչ վերաբերում է «էկոնոմիստներին», ապա հայտնի է, որ նրանք կանգնած էին վուլգար-էվոլյուցիոնիստական դիրքերի վրա։ Ըստ նրանց, հեղափոխության սուբյեկտիվ գործոնը հասունանում է ինքնահոսով, էկոնոմիկայի զարգացման պրոցեսում։ Պատմությունը ցույց տվեց, որ այդ տեսակետը անհիմն է։*

*Վ. Ի. Լենինն անողոք մերկացրեց նաև բեռնշտայնականներին, կաուցկիականներին, մենշևիկներին և մյուս օպորտունիստներին, որոնք ունեն մի ընդհանուր հիմք՝ օբյեկտիվ օրենքների և օրինաչափությունների առաջ խոնարհվելը։ Նրանք ոչնչով չեն տարբերվում ֆատալիստներից։ Բացասելով սուբյեկտիվ*



*գործոնի նշանակությունը պատմության մեջ, երկրորդ ինտերնացիոնալի ղեկավարները մասսաներին համոզում էին անվերապահորեն հնազանդվել իրենց բախտին, այսինքն՝ չընդվզեն կապիտալիստական շահագործման դեմ։*

*Ինչպես համոզիչ ցույց է տվել Վ. Ի. Լենինը, օպորտունիստներն իրենց ամբողջ հույսը դնում էին օբյեկտիվ պայմանների վրա և ցանկանում արդարացնել սեփական պասսիվությունը։ Մենշևիկները, օրինակ, բացարձակացնում էին օբյեկտիվ պայմանների նշանակությունը և բոլորովին թերագնահատում սուբյեկտիվ գործոնի դերը հեղափոխության մեջ։ Նրանք չկարողացան ըմբռնել օբյեկտիվ պայմանների և սուբյեկտիվ գործոնի դիալեկտիկան։*

*Վերոհիշյալ երկու ծայրահեղությունների նկատմամբ լենինյան մոտեցումը վճռական նշանակություն ունի արդի բուրժուական ռեակցիոն սոցիոլոգիայի և փիլիսոփայության դեմ պայքարելու համար։ Այստեղ հատկապես հարկավոր է մի քանի խոսք ասել մեր օրերի վոլյունտարիզմի մասին, որը կոպիտ խեղաթյուրում է իրականությունը և պայքարում գիտության դեմ։ Օրինակ, նեոպոզիտիվիստ Կ. Պոպպերը, բացասելով հասարակական օբյեկտիվ օրինաչափությունները և օբյեկտիվ պայմաններն անջատելով սուբյեկտիվ գործոնից, գրում է. «Ապագան կախված է մեզանից, բայց մենք ոչ մի պատմական անհրաժեշտությունից չենք կախված»։*

*Վոլյունտարիստները ճգնում են ինչ-որ անլուծելի հակասություն գտնել պատմական մատերիալիզմի հիմնական դրույթների մեջ։ Այսպես, նրանք գրչի մարզանքներով աշխատում են ապացուցել, որ եթե հասարակությունը զարգանում է ըստ օբյեկտիվ օրինաչափությունների, ապա այդ դեպքում տեղ չունի գիտակցական գործունեությունը և, ընդհակառակը, եթե կա գիտակցական գործունեություն, ապա այդ դեպքում տեղ չունեն օբյեկտիվ օրինաչափությունները։ Ընդունել միաժամանակ այդ երկու տեսակետները, նշանակում է ընդունել անլուծելի հակասություն։*

*Այստեղ պարզապես շփոթվում են երկու տարբեր երևույթներ. ա) հարկավո՞ր է արդյոք մարդկանց գիտակցական միջամտությունը բնական բոլոր երևույթներում (լուսնի, արևի խավարումը և այլն)։ Ո՛չ, հարկավոր չէ։ Այդ երևույթները, նրանց օրինաչափություններն ամենևին կապ չունեն մարդկանց գործունեության հետ. բ) կարո՞ղ է արդյոք փոխվել հասարակական կյանքն առանց մարդկանց գիտակցական գործունեության։ Ո՛չ, չի կարող։ Հասարակական կյանքը բնությունից տարբերվում է նրանով, որ այստեղ գործում են մարդիկ, որոնք օժտված են գիտակցությամբ։*

*Մարքսիզմ-լենինիզմն ուսուցանում է, որ օբյեկտիվ պայմաններն ու հարաբերություններն առաջնային են, իսկ սուբյեկտիվ գործոնը՝ որոշվում է այդ պայմաններով ու հարաբերություններով։ Օբյեկտիվ պայմանները նախադրյալներ են ստեղծում այս կամ այն պատմական խնդիրը լուծելու համար։ Վ. Ի. Լենինը գրել է. «Իրականում մարդու նպատակները օբյեկտիվ աշխարհի ծնունդն են և ենթադրում են այն...» (Երկեր, հատ. 38, էջ 230)։ Այնուհետև, օբյեկտիվի և սուբյեկտիվի փոխազդեցության կարևոր մոմենտներից մեկն այն է, որ երկրորդն առաջինի լոկ պասսիվ արտացոլումը չէ, այլ վիթխարի հետադարձ ազդեցություն է գործում իրեն ծնող օբյեկտիվ պայմանների վրա։*

*Վերջապես, սուբյեկտիվ գործոնի ազդեցությունը օբյեկտիվ պայմանների վրա տարբեր է։ Պատմության սուբյեկտիվ գործոնը կարող է արագացնել կամ*

դանդաղեցնել հասարակության զարգացումը: Իսկ այդ կախված է ինչպես օբյեկտիվ պայմանների, այնպես էլ տվյալ սուբյեկտիվ գործոնի բնույթից, նրանց առաջադիմական կամ հետադիմական լինելուց:

## 2. ՕԲՅԵԿՏԻՎ ՊԱՅՄԱՆՆԵՐԻ ԵՎ ՍՈՒԲՅԵԿՏԻՎ ԳՈՐԾՈՆԻ ԴԻԱԼԵԿՏԻԿԱՆ ՀԵՂԱՓՈԽՈՒԹՅԱՆ ՄԵՋ

Լենինը ստեղծագործաբար զարգացրեց Մարքսի ուսմունքը սոցիալիստական հեղափոխության օբյեկտիվ պայմանների և սուբյեկտիվ գործոնի դիալեկտիկայի վերաբերյալ:

Խոր վերլուծելով իմպերիալիզմի առանձնահատկությունները, Լենինը հայտաբերեց կապիտալիզմի զարգացման մի նոր օրինաչափություն, այն է՝ տնտեսական և քաղաքական անհամաչափ զարգացման օրինաչափությունը: Ելնելով դրանից, նա եկավ այն եզրակացության, որ պատմական նոր պայմաններում սոցիալիստական հեղափոխության միաժամանակյա հաղթանակը բոլոր երկրներում դառնում է անհնարին, որ նրա հաղթանակը նախապես հնարավոր է մի քանի կամ նույնիսկ մեկ առանձին վերցրած երկրում:

Զարգացնելով սոցիալիստական հեղափոխության կուռ տեսությունը, Լենինը հատուկ ուշադրություն նվիրեց այդ հեղափոխության օբյեկտիվ պայմանների և սուբյեկտիվ գործոնի դիալեկտիկային: Հեղափոխության այդ գործոններն ունեն իրենց կոնկրետ բովանդակությունը և դրանք չի կարելի շփոթել հասարակական այլ պրոցեսների գործոնների հետ:

Խոսելով հեղափոխության օբյեկտիվ պայմանների մասին, հարկավոր է հատուկ շեշտել հեղափոխական իրադրության վերաբերյալ լենինյան ուսմունքը: Այդ իրադրությունը, ըստ Լենինի, ունի երեք գլխավոր նշան. 1. «վերին խավերի» ճգնաժամը, տիրապետող դասակարգերն այլևս անկարող են անփոփոխ պահպանել իրենց տիրապետությունը և կառավարել, ինչպես նախկինում, 2. ճնշված դասակարգերի թշվառության սրումը սովորականից ավելի («ստորին խավերի» ճգնաժամը), 3. մասսաների քաղաքական ակտիվության նշանակալի բարձրացումը, «... մասսաներ, որոնք «խաղաղ» դարաշրջանում հանգիստ կերպով թույլ են տալիս իրենց կողոպտել, իսկ փոթորկահույզ ժամանակներում առաջ են քաշվում, ինչպես ճգնաժամի ողջ իրադրությամբ, այնպես էլ բուն իսկ «վերին խավերի» միջոցով, ինքնուրույն պատմական ելույթի» (Երկեր, հատ. 21, էջ 262):

Հեղափոխական իրադրության այդ նշանները պատկանում են օբյեկտիվ պայմանների թվին ո՛չ թե այն պատճառով, որ դրանք տնտեսական կյանքի տարրեր են, այլ այն, որ արտացոլելով հասարակության քաղաքական կյանքը, կախված չեն ո՛չ միայն առանձին մարդկանց խմբերի, կուսակցությունների, այլև առանձին դասակարգերի կամքից: Իհարկե, ամեն մի հեղափոխական իրադրությունից, ասում է Լենինը, հեղափոխություն չի ծագում: Վերջինս ծագում է միայն այն ժամանակ, երբ վերը թվարկված օբյեկտիվ փոփոխություններին միանում է համապատասխան սուբյեկտիվ գործոնը, այն է՝ հեղափոխական դասակարգերի ընդունակությունը մասսայական հեղափոխական գործողություններին, որոնք բավականաչափ ուժեղ են, որպեսզի փշրեն, կոտրեն հին կառավարությունը, որը երբեք չի «ընկնի», եթե նրան «չգցեն»:

XIX դարի վերջերին և XX դարի սկզբին Ռուսաստանում բուրժուա-դեմո-



կրատական հեղափոխության օբյեկտիվ պայմանների և սուբյեկտիվ գործոնի հարաբերակցությունն այնպիսին էր, որ առաջինները հասունացած էին, իսկ երկրորդը դեռ նոր էր ծագում ու ձևավորվում: Հետևապես, պահանջվում էր քայլ առ քայլ ստեղծել, ձևավորել հեղափոխության սուբյեկտիվ գործոնը, ամենից առաջ, մասսաների հեղափոխական գիտակցությունը, ստեղծել պրոլետարիատի հեղափոխական կազմակերպությունը, նրա քաղաքական մարքսիստական կուսակցությունը:

Լենինը գտնում էր, որ մասսաներին հեղափոխության կողմը գրավելու, նրանց սոցիալիստական գիտակցությունը ձևավորելու, քաղաքական բանակ ստեղծելու գործում վճռական նշանակություն ունեն երկու կարևոր հանգամանք: Նախ, ժողովրդական մասսաների մեջ տարվող ագիտացիան ու պրոպագանդան, այդ մասսաների քաղաքական դաստիարակությունը մարքսիզմի գաղափարների ոգով, իր դասակարգային շահերն ու խնդիրները ճիշտ հասկանալու ոգով: Մարքսիստների խնդիրն է, շեշտում էր Լենինը, մասսաների առաջ բացահայտել հեղափոխական իրադրության առկայությունը, բարձրացնել պրոլետարիատի հեղափոխական գիտակցությունն ու վճռականությունը, օգնել մասսաներին անցնելու հեղափոխական գործողությունների:

Երկրորդ, հեղափոխության սուբյեկտիվ գործոնի ձևավորման համար խոշոր նշանակություն ունի աշխատավոր դասակարգերի պայքարի կազմակերպումն ընդդեմ շահագործող դասակարգերի: Հենց այդ պայքարի պրոցեսում է մշակվում մասսաների քաղաքական փորձը, որը, Լենինի խոսքերով ասած, բոլոր մեծ հեղափոխությունների հիմնական օրենքն է:

Այսպիսով, հեղափոխությունը կարող է հաղթանակել միայն այն դեպքում, երբ առկա են ինչպես տվյալ կոնկրետ հեղափոխության օբյեկտիվ պայմանները, այնպես էլ նրա սուբյեկտիվ գործոնը: Առանց դրանց չի կարելի մասսաներին հեղափոխության կոչել: Այլապես անխուսափելի է ավանտյուրիզմը: Պայքարելով ավանտյուրիզմի դեմ և ընդգծելով հեղափոխության օբյեկտիվ պայմանների և սուբյեկտիվ գործոնի դիալեկտիկան, Լենինը 1905 թվականին գրել է, որ այդ ժամանակ Ռուսաստանում սոցիալիստական հեղափոխության համար չկային ո՛չ օբյեկտիվ պայմաններ և ո՛չ էլ առավել ևս սուբյեկտիվ գործոն: «Ռուսաստանի տնտեսական զարգացման աստիճանը (օբյեկտիվ պայման) և պրոլետարիատի լայն մասսաների գիտակցականության ու կազմակերպվածության աստիճանը (սուբյեկտիվ պայման, որ անխզելիորեն կապված է օբյեկտիվ պայմանի հետ) անհնարին են դարձնում բանվոր դասակարգի անհապաղ լիակատար ազատագրումը» (Երկեր, հատ. 9, էջ 18—19):

Սոցիալիստական հեղափոխության սուբյեկտիվ գործոնի վճռական ազդակը հեղափոխական կուսակցությունն է, առանց որի չի կարող լինել ո՛չ մարքսիստական գիտակցականություն, ո՛չ էլ կազմակերպվածություն: Վ. Ի. Լենինը գրել է. «Առանց մասսաների կազմակերպության՝ պրոլետարիատը ոչինչ է: Կազմակերպված՝ նա ամեն ինչ է: Կազմակերպվածությունը գործողության միասնականությունն է, գործնական ելույթի միասնականությունը» (Երկեր, հատ. 11, էջ 395): Հեղափոխության սուբյեկտիվ գործոնի դերն ու նշանակությունը շատ ցայտուն է արտահայտում Վ. Ի. Լենինի հետևյալ հանրահայտ ասույթը. «Տվեք մեզ հեղափոխականների կազմակերպություն և մենք շուռ կտանք Ռուսաստանը»:

Սոցիալիստական հեղափոխության օբյեկտիվ պայմանների և սուբյեկտիվ

գործոնի դիալեկտիկային Լենինն առանձնահատուկ ուշադրություն է նվիրում մեծ Հոկտեմբերի նախօրյակին։ Այդ ժամանակ է, որ նա հիմնավորեց իր առաջ քաշած այն դրույթը, որ կոնկրետ իրադրության կոնկրետ վերլուծումը մարքսիզմի ոգին է։

Մենշևիկներն ու լենինիզմի այլ թշնամիներն ամեն կերպ ձգտում էին ապացուցել, թե Ռուսաստանում սոցիալիստական հեղափոխության պայմանները չեն հասունացել։ Վ. Ի. Լենինն աննահանջ պայքար ծավալեց բոլոր այդ թշնամիների դեմ, ապացուցելով, որ Ռուսաստանում սոցիալիստական հեղափոխության համար առկա են ինչպես օբյեկտիվ պայմանները, այնպես էլ սուբյեկտիվ գործոնը։ Վերլուծելով 1917 թվականի հուլիսյան օրերից հետո մեր երկրում ստեղծված պայմանները, Լենինը փաստերի հիման վրա համոզիչ ապացուցում է, որ սոցիալիստական հեղափոխության համար երկրում կան բոլոր պայմանները, որ այդ դեպքում խայտառակություն կլիներ տատանվել և հրաժարվել բոլշևիզմից։ Իր Նամակ ընկերներին հոդվածում Լենինը մանրազնին վերլուծելով իրադրությունը, ապացուցում է, որ օբյեկտիվ պայմանների հետ միասին սոցիալիստական հեղափոխության համար պետք է լինի նաև համապատասխան սուբյեկտիվ գործոն՝ բանվոր դասակարգի հեղափոխական գիտակցականություն ու կազմակերպվածություն, համոզվածություն իր գործի նկատմամբ և կարգապահություն, հեղափոխական վճռականություն ու հաստատակամություն։

Հոկտեմբերյան մեծ հեղափոխությունը ցույց տվեց, որ բոլշևիկների կուսակցությունը Լենինի ղեկավարությամբ կարողացավ հմտորեն օգտագործել հեղափոխական իրադրությունը, բոլոր օբյեկտիվ պայմանները, ապահովելով հեղափոխության հաղթանակը։

## 3. ՕԲՅԵԿՏԻՎԻ ԵՎ ՍՈՒԲՅԵԿՏԻՎԻ ԴԻԱԼԵԿՏԻԿԱՆ ՍՈՑԻԱԼԻԶՄԻ ՈՒ ԿՈՄՈՒՆԻԶՄԻ ԿԱՌՈՒՑՄԱՆ ԳՈՐԾՈՒՄ

Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխությունից հետո Լենինը հատուկ ուշադրություն էր նվիրում մարքսիստական տեսությունը պրակտիկ իրականության վերածելու խնդրին, որը դիալեկտիկական մի պրոցես է։

Դիալեկտիկական այդ պրոցեսի ուսումնասիրության ակտուալությունը բխում է սոցիալիստական հեղափոխության և սոցիալիստական հասարակության կառուցման հիմնական առանձնահատկություններից։ Հայտնի է, որ ի տարբերություն բուրժուական հեղափոխության, սոցիալիստական հեղափոխությունը սկսվում է սոցիալիստական արտադրաեղանակի բացակայության պայմաններում։ Սոցիալիստական հեղափոխության համար հին կարգերի ներսում ստեղծվում են միայն օբյեկտիվ նախադրյալներ։

Սոցիալիստական արտադրաեղանակը ստեղծվում է քաղաքական իշխանությունը նվաճելուց հետո, ընդ որում ստեղծվում է գիտակցականորեն, պլանաչափ, մարքսիզմ-լենինիզմի տեսության հիման վրա։ Դա նշանակում է, որ սոցիալիստական հեղափոխությունը, հանդիսանալով մարքսիստական տեսության պրակտիկ իրագործումը, ունի ո՛չ միայն և ո՛չ այնքան կործանիչ, որքան ստեղծագործական բնույթ։ Այն կոչված է ստեղծելու բոլորովին նոր, սոցիալիստական և կոմունիստական հասարակություն։

Եթե մի անտագոնիստական ֆորմացիայից մյուսին անցնելը հանգեցնում



էր նրան, որ կատարելագործվում էին մասնավոր սեփականության և մարդու կողմից մարդու շահագործման ձևերը, ապա կոմունիստական ֆորմացիայի առաջացումը կապված է ամբողջ հասարակական օրգանիզմի որակական վերակառուցման հետ։ Էկոնոմիկայի բնագավառում դա նշանակում է որակապես նոր արտադրահարաբերությունների, արտադրաուժերի նկատմամբ նոր, սոցիալիստական սեփականության, սոցիալիզմի և կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծում։ Քաղաքական բնագավառում՝ ոչնչացնել բուրժուազիայի տիրապետությունը և հաստատել պրոլետարիատի դիկտատուրա, որի հիմքը բանվոր դասակարգի և աշխատավոր գյուղացիության դաշինքն է։ Կոմունիզմին անցնելու պրոցեսում պրոլետարիատի դիկտատուրայի պետությունը նախ վերաճում է համաժողովրդական պետության, իսկ հետագայում կոմունիստական հասարակական ինքնավարության։ Հոգևոր զարգացման բնագավառում խոր հեղաշրջում է կատարվում գաղափարախոսության և կուլտուրայի, նոր մարդու ձևավորման ասպարեզներում։ Կոմունիստական բարոյականության նորմերն աստիճանաբար դառնում են բոլորի վարքագծի հիմքը։

Հենց այդ էլ նկատի ունենալով, մարքսիզմի կլասիկները սոցիալիստական հեղափոխությունն իրավացիորեն բնութագրել են որպես նախապատմության վերջ և մարդկության իսկական պատմության սկիզբը։

Ինքնըստինքյան հասկանալի է, որ հասարակության զարգացման որակապես նոր օբյեկտիվ պայմաններում մենք գործ ունենք միանգամայն նոր սուբյեկտիվ գործոնի հետ։ Վերջինիս դերն ու նշանակությունը հասարակության կյանքում միանգամայն տարբեր է պատմության նախորդ ֆորմացիաներում սուբյեկտիվ գործոնի խաղացած դերից ու նշանակությունից։ Այդ պատճառով էլ սոցիալիզմի օրոք մենք գործ ունենք օբյեկտիվի և սուբյեկտիվի արդեն նոր դիալեկտիկայի հետ։ Իհարկե, սոցիալիզմի օրոք ևս օբյեկտիվ պայմաններն ու օրինաչափությունները սուբյեկտիվ գործոնի նկատմամբ առաջնային են, որոշիչ։ Սակայն սոցիալիստական հասարակարգում սուբյեկտիվ գործոնի դերն անհամեմատ աճում է, քանի որ այդ նոր ֆորմացիան ժողովրդական մասսաների գիտակցական գործունեության արդյունք է։

Վ. Ի. Լենինը ուսուցանում է, որ սոցիալիզմը ժողովրդական մասսաների կենդանի ստեղծագործությունն է։ Զարգացնելով այդ դրույթը, կուսակցության ծրագիրն ընդգծում է, որ մասսաների ստեղծագործական ակտիվության աճը սոցիալիզմի դարաշրջանի օրենք է, որը փայլուն արտահայտում է սոցիալիզմի դիալեկտիկայի, մասնավորապես սուբյեկտի (մարդու) և օբյեկտիվ պայմանների նոր, կոնկրետ հարաբերակցությունը։ Դա, միաժամանակ, նշանակում է, որ վերոհիշյալ օրենքն ունի իր գործողության այնպիսի օբյեկտիվ պայմաններ, որոնք հատուկ են միայն սոցիալիստական հասարակությանը։

Տնտեսության սոցիալիստական սիստեմի պայմաններում բացառված է ամեն կարգի սոցիալական ճնշում կամ շահագործում։ Պատմության մեջ առաջին անգամ աշխատավորները դարձել են իրենց բախտի, երկրի տերը, գիտակցականորեն կերտում են իրենց պատմությունը։

Մասսաների ակտիվության աճն ունի այնպիսի աղբյուրներ, ինչպիսիք են հասարակական, խմբային և անհատական նյութական շահագրգռվածությունն իրենց աշխատանքի արդյունքների նկատմամբ։ Որքան ակտիվ է աշխատում առանձին անհատը, այնքան արագ է աճում նրա բարեկեցությունը։ Սակայն յուրաքանչյուրի բարեկեցությունը կախված է ո՛չ միայն իր սեփական աշխա-

տանքի, այլև տվյալ կոլեկտիվի հաջողություններից, հասարակության ակտիվությունից ընդհանրապես։ Դա բացատրվում է նրանով, որ յուրաքանչյուր աշխատավոր հասարակության բոլոր հարստությունների կոլեկտիվ սեփականատերն է, և, հետևապես, նրա աշխատանքն անբաժանելի է ամբողջ հասարակության աշխատանքից։

Մասսաների սոցիալական ակտիվության մյուս աղբյուրը նրանց քաղաքական գիտակցության, ընդհանուր կուլտուրական և կուլտուր-տեխնիկական մակարդակի սիստեմատիկ բարձրացումն է։ Կուսակցության ծրագրի մեջ շեշտված է, որ բնակչության կուլտուրական աճով են պայմանավորված արտադրաուժերի վերելքը, տեխնիկական առաջադիմությունը և արտադրության կատարելագործումը, աշխատավորների հասարակական ակտիվության բարձրացումը, ինքնավարության դեմոկրատական հիմունքների զարգացումը, կենցաղի կոմունիստական վերակառուցումը։

Կոմունիստական կուսակցության ղեկավար և ուղղություն տվող դերն ու նշանակությունը մասսաների ակտիվության կարևորագույն աղբյուրն է։ Կուսակցության դերն արտահայտվում է այն բանում, որ նա մշակում և հիմնավորում է ժողովրդական մասսաների շահերին համապատասխանող ճիշտ քաղաքականություն։ Կուսակցության ղեկավարության հմտությունն այն է, որ նա մասսաների ակտիվության բոլոր ձևերից ընտրում և օգտագործում է այնպիսիները, որոնք առավել լավագույն կերպով են արտացոլում տվյալ էտապում հասարակության զարգացման օբյեկտիվ տենդենցները։

Մեր օրերում լիովին հաստատվեցին Վ. Ի. Լենինի այն խոսքերը, որ մեր հեղափոխությունը, վերջին հաշվով, այն պատճառով է ուժեղ բոլոր այլ հեղափոխություններից, որ նա սովետական իշխանության միջոցով տասնյակ միլիոններին ակտիվ մասնակից է դարձրել պետական շինարարությանը, միլիոններ, որոնք անցյալում շահագրգռված չէին այդպիսի շինարարությունում։

Ահա թե ինչու սոցիալիստական հասարակարգում մասսաների սոցիալական, ստեղծագործական ակտիվությունն որակապես տարբերվում է նախորդ ֆորմացիաների մարդկանց սոցիալական ակտիվությունից։ Սոցիալիստական հասարակության անդամների ակտիվությունը կրում է անընդմեջ բնույթ, նա շարունակ զարգանում, աճում և կատարելագործվում է։

Այնուհետև, սոցիալական ակտիվությունը մեր հասարակարգում ունի ընդհանուր բնույթ, քանի որ այն դառնում է նորանոր միլիոնների ներքին որակը, նրանց սեփականությունը, միլիոններ, որոնք շահագրգռված են արտադրաուժերի արագ զարգացման համար։

Վերջապես, ժողովրդական մասսաների ստեղծագործական ակտիվության անշեղ աճը տարերային պրոցես չէ, այլ այն կազմակերպվում, ձևավորվում, զարգանում ու փոփոխվում է կոմունիստական կուսակցության կողմից։

Այսպիսով, հասարակության զարգացումը համարելով բնապատմական օրինաչափ պրոցես, մարքսիզմ-լենինիզմը միաժամանակ ընդունում է սուբյեկտիվ գործոնի հսկայական դերը պատմության, սոցիալական հեղափոխության և հասարակական այլ պրոցեսների մեջ։ Առանց այդ հանգամանքը հաշվի առնելու դժվար է հասկանալ հասարակության զարգացման օբյեկտիվ և սուբյեկտիվ կողմերի դիալեկտիկան։

Խ. ԲԱՐՍԵՂՅԱՆ

Պատմական գիտությունների դոկտոր, պրոֆեսոր

# ԼԵՆԻՆՅԱՆ ԳՐԱԿԱՆ ԺԱՌԱՆԳՈՒԹՅՈՒՆԸ ՀԱՅԵՐԵՆ



Վ. Ի. Լենինի աշխատությունները, նրա գրական մեծ ժառանգությունը կոմունիստական կուսակցության հարուստ գանձերն են, հզոր զենք կոմունիզմի կառուցման համար մղվող պայքարում։ Պատմությունը չգիտե քաղաքական մեկ այլ ուսմունք, որն այնքան արագ ու ծավալուն տարածված լինի աշխարհով մեկ, համակելով և խանդավառ ընդունելություն գտնելով աշխատավոր հոծ զանգվածների մոտ, ինչպես մարքսիզմ-լենինիզմը։ Դժվար է հիշատակել ուրիշ այլ գրական-քաղաքական երկեր, որոնք այնքան մասսայաբար տարածվեին և այնքան վիթխարի ժողովրդականություն վայելեին, որքան Վ. Ի. Լենինի աշխատությունները։ ՅՈՒՆԵՍԿՈՅԻ տվյալներով Վ. Ի. Լենինի երկերը թարգմանական գրականության մեջ գրավում են առաջին տեղը։ Դրանք հրատարակվել են 110 լեզուներով։ Սովետական իշխանության տարիներին Վ. Ի. Լենինի երկերի հրատարակությունը միայն ՍՍՀՄ-ում կազմում է 327475 հազար օրինակ[1]։ Լենինյան երկերի հրատարակությունների պսակն է կազմում նրա 55 հատորանոց ժողովածուն։ Հինգերորդ հրատարակության 1—34 հատորներում զետեղված են Իլյիչի 1893—1917

[1] См. «Правда», от. 19 апреля 1966 г.

(հոկտեմբեր) գրած աշխատությունները, 35—45-ում՝ հետհոկտեմբերյան շրջանի երկերը, իսկ 46—55-ում՝ նամակները։ 54-րդ հատորում տպագրվել են 5-րդ հրատարակության ընթացքում հայտաբերված նյութերը։ Վ. Ի. Լենինի երկերի լիակատար ժողովածուի նոր հրատարակությունը մինչև այժմ եղած բոլոր հրատարակություններից ամենից հարուստն է։ Նրանում առաջին անգամ լույս են տեսել շուրջ 1100 հոդված, նամակ, հեռագիր և այլ փաստաթղթեր, որոնք հարստացնում են լենինյան գրական ժառանգությունը, կոմունիստական կուսակցության գաղափարական գանձարանը։

# 1

Մարքսիզմ-լենինիզմի կլասիկների աշխատությունների հայերեն առաջին հրատարակությունները և նրանց երկերի տարածումը առաջին հայ մարքսիստների հեղափոխական գործունեության անբաժանելի մասն են կազմում։ Մարքսիստական գաղափարները հայ իրականության մեջ տարածելու գործում առանձնապես մեծ երախտիք ունեն ականավոր մարքսիստներ, Վ. Ի. Լենինի մերձավոր զինակիցներ Ի. Լալայանցը, Բ. Կնունյանցը, Ստ. Շահումյանը, Կամոն (Ս. Տեր-Պետրոսյան), Ս. Սպանդարյանը, Ա. Մյասնիկյանը, հին հեղափոխական գործիչներ Գ. Ղարաջյանը (Ս. Տ. Արկոմեդ), Ա. Զուրաբյանը, Ս. Կասյանը, Ա. Բեկզադյանը, Ս. Կասպարովը (Գասպարյան), Վ. Տերյանը, Վ. Ավանեսովը (Ս. Մարտիրոսյան), Ս. Խանոյանը, Ա. Խումարյանը, Արշ. Մելիքյանը, Դ. Շահվերդյանը, Ռ. Դաշտոյանը և շատ ուրիշներ։ Նրանք էին, որ ձեռնամուխ եղան մարքսիստական գրականության հայերեն թարգմանություններին, սկիզբ դրեցին մարքսիզմ-լենինիզմի կլասիկների աշխատությունների հայերեն գիտական հրատարակությանը։ Գաղափարական տևական պայքարի ճանապարհով մարքսիզմ-լենինիզմը թափանցում է Հայաստան, ավելի ճիշտ հայկական իրականություն։ Հայ սոցիալ-դեմոկրատական կազմակերպությունները իրենց գործունեության հենց սկզբից սերտորեն կապված էին Վ. Ի. Լենինի, լենինյան «Իսկրայի» և ապա ՌՍԴԲԿ Կենտրոնական կոմիտեի և նրա օրգանների հետ։ Վ. Ի. Լենինի աշխատությունները առաջին անգամ հայ աշխատավորությանը հասան դեռևս XIX դարի 90-ական թվականներին։ Դրանք Իլյիչի առաջին գրքերն ու բրոշյուրներն էին։ 1897—1898 թվականներին Ի. Լալայանցը գալով Կովկաս, տեղի մարքսիստներին հաղորդակից է դարձնում Իլյիչի առաջին աշխատություններին։ 1899 թվականին Ս. Պետերբուրգում Ա. Լեյֆերտի տպա-վիմագրատանը տպագրված լենինյան «Տնտեսագիտական էտյուդներ և հոդվածներ» գրքի մի օրինակը դեռ այն տարիներին Ս. Շահումյանի միջոցով հասել էր Հայաստան՝ Ալավերդու հանքագործ բանվորներին։ Բանվորները, անլեգալ պայմաններում, մեծ հետաքրքրությամբ կարդում էին այն լենինյան «Իսկրայի» և հեղափոխական այլ գրականության հետ մեկտեղ, փոխանցում ձեռքից-ձեռք։ Լենինյան «Իսկրան» և նրա հրատարակությունները ընդհատակյա ճանապարհով հասնում էին Հայաստան, տարածվում բանվորների և աշխատավոր զանգվածների շրջանում։ 1901—1903 թվականներին Երևանում, Ալեքսանդրապոլում, Կարսում, Լոռում ստացվել են մեծ քանակությամբ «Իսկրայի» 28, 29, 30, 31, 32, 33, 34, 35, 36, 37 և այլ համարներից։ Բոլորովին վերջերս Նոեմբերյանի շրջանի Մալիշկա գյուղի բնակիչներից մեկի մոտ հայտաբերվել է «Իսկրայի» անդրանիկ համարը, որը տրամադրվել է դպրոցի թանգարանին։ Ինչպես հայտնի է, 1950 թվականին նույն Մալիշկայում մի հին տան վերակառուցման ժամանակ հայտաբերվել է պատի մեջ պահված ինը պրոկլամացիա, որոնք 1901—1904 թվականներին հրատարակել են ՌՍԴԲԿ Թիֆլիսի և միութենական կոմիտեները՝ հայերեն և ռուսերեն լեզուներով[1]։ Մալիշկայի հայտնագործությունը նորից հավաստում է դարասկզբին լենինյան աշխատությունները Հայաստան թափանցելու, հայ աշխատավորության մեջ մարքսիստական գաղափարները տարածելու մասին։

Մարքսիստական հայ անդրանիկ թերթը՝ «Պրոլետարիատը», որը լույս է տեսել 1902 թվականի հոկտեմբերին Թիֆլիսում, ոչ միայն գտնվում էր «Իսկրայի» գաղափարական ազդեցության տակ, այլև կապված էր նրա հետ։ Վ. Ի. Լենինը արտասահմանում ստանալով «Պրոլետարիատի» այդ համարը, ծանոթանում է նրա բովանդակությանը, հատուկ հոդված գրում, որը լույս տեսավ «Իսկրայի» 1903 թվականի փետրվարյան համարում (№ 33, 1-ը փետրվարի, 1903)։ Իլյիչը նշում էր, որ «Կովկասում երևան է եկել մի նոր սոցիալ-դեմոկրատական կազմակերպություն՝ «Հայ սոցիալ-դեմոկրատների միությունը»։ Այդ միությունը, ինչպես մեզ հայտնի է, ավելի քան կես տարի է, ինչ սկսել է իր պրակտիկ գործունեությունը և արդեն ունի իր օրգանը հայերեն լեզվով։ Մենք ստացել ենք № 1-ը, այդ օրգանի, որը կոչվում է «Պրոլետարիատ» և որի վերնագրում նշված է «Ռուսաստանի սոցիալ դեմոկրատական բանվորական կուսակցություն» (Երկեր, հ. 6, էջ 408)։ Վերլուծելով «Պրոլետարիատի» առաջին համարի նյութերը և Միության մանիֆեստը, Վ. Ի. Լենինը գրել է. «Մենք ամբողջ հոգով ողջունում ենք «Հայ սոցիալ-դեմոկրատների միության մանիֆեստը և մանավանդ, ազգային հարցի ճիշտ դրվածքը տալու նրա ուշագրավ փորձը։ Խիստ ցանկալի կլիներ, որ այդ փորձը հասցվեր մինչև վերջ» (Նույն տեղը, էջ 411)։ Ինչպես վերը նշեցինք, «Իսկրայի» այն համարը, ուր զետեղված էր Վ. Ի. Լենինի «Հայ սոցիալ-դեմոկրատների միության մանիֆեստի մասին» հոդվածը, 1903 թվականի մարտին ստացվել է Երևանում։ Այդ հոդվածը և ընդհանրապես հայ սոցիալ-դեմոկրատական առաջին կազմակերպությունը և նրա մանիֆեստի լենինյան գնահատականը մեծ դեր խաղացին երկրամասի սոցիալ-դեմոկրատական կազմակերպությունների ամրապնդման, աշխատավորության ինտերնացիոնալ դաստիարակության և համախմբվածության գործում[2]։

---

[1] Այդ պրոկլամացիաները պահվում են ՍՄԿԿ Կենտկոմին կից մարքսիզմ-լենինիզմի ինստիտուտի հայկական ֆիլիալի արխիվում։ Այդ մասին մանրամասն տես մեր «Նոր նյութեր Հայաստանում հեղափոխական պրոկլամացիաների տարածման մասին» Հայկական ՍՍՀ ԳԱ Տեղեկագիր, № 5, 1951։

[2] Մենք նորից ստիպված ենք արձանագրելու, որ ճիշտ չեն այն ընկերները, որոնք փորձում են փաստերն այնպես շարադրել, որ իբր թե «Հայ սոցիալ-դեմոկրատների միությունը» աշխատել է ՌՍԴԲԿ Թիֆլիսի կոմիտեից անկախ։ Նման տեսակետի պաշտպանները, կամա թե ակամա, ժխտում են Միության ինտերնացիոնալ բնույթը։ Հարկավոր է նկատի ունենալ, որ նույն ժամանակաշրջանում ՌՍԴԲԿ Թիֆլիսի կոմիտեին կից ձևավորել է նաև «Վրաց սոցիալ-դեմոկրատների միությունը»։ «Բրձոլա» թերթի № 4-ում ասված է, որ թերթի հրատարակիչը «Վրաց սոցիալ-դեմոկրատների միությունն է (այդ մասին տես նաև ЦПА ИМЛ при ЦК КПСС, ф. 64, оп. 1, д. 169, л. 177)։ Այդ նշանակում է, որ մինչև ՌՍԴԲԿ Կովկասյան միության հիմնադրումը (մարտ,

Միևնույն ժամանակ, դա ակնառու կերպով ցույց է տալիս, որ Վ. Ի. Լենինը սկզբից ևեթ հոգատարությամբ հետևել է Անդրկովկասի սոցիալ-դեմոկրատական կազմակերպությունների ձևավորմանն ու ամրապնդմանը, նրանց ինտերնացիոնալ կառուցվածքը ուսանելի համարել մյուս տեղերի համար։

Առաջին անգամ հայերեն թարգմանությամբ լույս տեսած մեզ հայտնի լենինյան գործերից է «Միապետությունը տատանվում է...» [1]», որը տպագրվել է ՌՍԴԲԿ Կովկասյան միության օրգան «Պրոլետարիատի կռիվը» թերթի 1903 թվականի № 2—3-ում (ապրիլ—մայիս)։ Մերկացնելով ցարական ինքնակալությունը և նրա 1903 թվականի փետրվարի 26-ի մանիֆեստը, Վ. Ի. Լենինը այդ հոդվածում նշել է, որ ցարն արդեն զգում է, «որ անդարձ անցնում են այն ժամանակները, երբ Ռուսիայում կարող էր պահվել ատծո ողորմածությամբ կառավարությունը, որ Ռուսաստանում միակ հաստատուն կառավարությունը այսուհետև կարող է լինել ժողովրդի կամքով կառավարությունը» (Երկեր, հ. 6, էջ 435)։ «Պրոլետարիատի կռվի» այդ նույն համարում տպագրվել էր նաև Գ. Պլեխանովի «Կարլ Մարքս» հոդվածը։ Նրանում հեղինակը նշել է, որ մարքսիզմը դարձել է բանվոր դասակարգի հեղափոխական աշխարհայացքը։ «Եթե սոցիալիզմը այժմ գիտությունների շարքն է անցել, դրանով մենք Մարքսին ենք պարտական։ Եվ եթե գիտակցող պրոլետարները այժմ լավ հասկանում են, որ բանվոր դասակարգի վերջնական ազատության համար անհրաժեշտ է սոցիալական հեղափոխություն և որ այդ հեղափոխությունը հենց իրեն՝ բանվոր դասակարգի գործը պետք է լինի, եթե նրանք այժմ բուրժուական կարգերի անհրաժեշտ և անխոնջ թշնամիներն են՝ դրա մեջ երևում է գիտական սոցիալիզմի ազդեցությունը» («Պրոլետարիատի կռիվը»,, 1903, № 2—3, էջ 4)։ Նկատենք, որ ռուս ականավոր մարքսիստներից Գ. Պլեխանովի աշխատությունները հայերեն թարգմանվել են տակավին 1890-ական թվականներից սկսած։ 1892—1895 թվականներին հայերեն լեզվով հրատարակվել են Գ. Պլեխանովի «Մայիսի մեկը աշխարհի բանվորների ամենամյա տոնն է» հոդվածը, ծավալուն քաղվածքներ նրա «Սոցիալիզմը և քաղաքական պայքարը», «Մեր տարաձայնությունները» և այլ երկերից։

Զարգացնելով մարքսիստական գրականության հրատարակության ասպարեզում եղած փորձը, 1904 թվականի սկզբներին Ստ. Շահումյանի ղեկավարությամբ թարգմանվում է Վ. Ի. Լենինի «Գյուղական չքավորությանը» բրոշյուրը և տպագրվում ՌՍԴԲԿ Կենտկոմին կից Ժնևյան հրատարակչական հանձնաժողովի կողմից։ Ռուսական առաջին հեղափոխության նախօրեին հայ մարքսիստները հիմք էին դրել Կ. Մարքսի, Ֆ. Էնգելսի, Վ. Ի. Լենինի, ինչպես նաև Գ. Պլեխանովի, Ֆ. Լասալի, Ս. Դիկշտեյնի և այլ հեղափոխական գործիչների աշխատությունների, սոցիալիստական գրականության հայերեն թարգմանությունների, և փորձեր են արել Վ. Ի. Լենինին, Գ. Պլեխանովին, ռուս նշանավոր այլ մարքսիստներին անմիջականորեն մասնակից դարձնել հայերեն մարքսիստական հրատարակություններին։ 1904 թվականի դեկտեմբերի 20-ին Վ. Ի. Լենինը «Պրոլետարիատի կռվին» աշխատակցելու վերաբերյալ Կովկասյան միութենական կոմիտեի հրավերին ի պատասխան գրել է. «Թանկագին ընկերներ։ Ստացա «Պրոլետարիատի կռվի» վերաբերյալ Ձեր նամակը։ Աշխատում եմ գրել և կհաղորդեմ խմբագրության իմ ընկերներին» (Երկեր, հ. 34, էջ 315)։ Նույն թվականին մի խումբ հայ հեղափոխական երիտասարդներ իմանալով, որ Ստ. Շահումյանը անձամբ ծանոթ է Իլյիչին, դիմում են արտասահմանում գտնվող Շահումյանին՝ խնդրելով Վ. Ի. Լենինին հրավիրել մասնակցելու հայերեն լեզվով պատրաստվող մարքսիստական ժողովածուին։ Ստ. Շահումյանը 1904 թվականի նոյեմբերի 28-ին Վ. Ի. Լենինին այդ առթիվ ջերմ նամակ է գրել, խնդրել, որ Իլյիչը, Ա. Բոգդանովը, Գ. Պլեխանովը, Ա. Լունաչարսկին, Ցիննը հոդվածներ գրեն՝ Կ. Մարքսի տնտեսական ուսմունքի, ազգային հարցի, արդյունաբերական ճգնաժամի և մարքսիստական տեսության այլ հարցերի մասին։

Վ. Ի. Լենինի աշխատությունների հայերեն թարգմանությունն ու հրատարակությունը ծավալվեց ռուսական առաջին հեղափոխության տարիներին, Հոկտեմբերյան հեղափոխության նախապատրաստման և իրագործման շրջանում։ Միայն 1903—1920 թվականներին առանձին բրոշյուրների, գրքերի, ինչպես և պարբերական մամուլում զետեղված հոդվածների ձևով լույս են տեսել Վ. Ի. Լենինի շուրջ 70 աշխատություն։ 1905—1907 թվականներին կուսակցության Բաքվի, Թիֆլիսի, Ալեքսանդրապոլի, Բաթումի կոմիտեները, Կովկասյան միութենական կոմիտեն հրատարակել են լենինյան տասը աշխատություն, այդ թվում՝ «Հեղափոխական պրոլետարիատի դեմոկրատական խնդիրները», «Ծանուցումը Ռուսաստանի սոցիալ-դեմոկրատական բանվորական կուսակցության երրորդ համագումարի մասին», «Պրոլետարիատի և գյուղացիության հեղափոխական դեմոկրատական դիկտատուրայի մասին», «Երրորդ համագումարի որոշումը Կովկասում պատահած անցքերի մասին», «Պետական կազմի երեք սահմանադրություն կամ երեք կարգ» և այլն [1]։ Լենինյան աշխատությունների թարգմանության և հրատարակության գործում որոշակի ծառայություն են մատուցել «Կայծ», «Նոր խոսք», «Օրեր» և բոլշևիկյան այլ թերթերը, որոնք խմբագրում էին Ստ. Շահումյանը, Ս. Սպանդարյանը և Ս. Կասյանը։

1906 թվականի օգոստոսի 31-ին «Նոր. խոսքը» «Պրոլետարի» թերթի № 1-ից թարգմանել և հրապարակել է Վ. Ի. Լենինի «Փոթորկից առաջ» հոդվածը, որը ավարտվում է Մ. Գորկու «Մրրկահավի երգը» ստեղծագործությունից բերված «Թո՛ղ ուժգին թնդա փոթորիկը» կոչով։ Հոդվածի վերջում «Նոր խոսքը» ավելացրել է. «Ամբողջ սրտով միանում ենք «Պրոլետարի» այս խոսքերին, միաժամանակ նրա հետ գոչելով. «Թող թնդա փոթորիկը»։

---

1903), ՌՍԴԲԿ Թիֆլիսի կազմակերպությունը բաղկացած էր հայ և վրաց սոցիալ-դեմոկրատների միություններից։ Չի բացառված, որ Թիֆլիսի այդ միությունները, որ շատ բանով հիշեցնում են ռուս բանվորների Հարավային և Հյուսիսային միություններին, դիտվել են որպես նախադրյալ Կովկասյան միության ստեղծման համար։ Բացի այդ, սկզբնական շրջանում, ՌՍԴԲԿ Թիֆլիսի կոմիտեն հանդիսացել է ոչ միայն Թիֆլիսի, այլև Անդրկովկասի երկաթուղային և արդյունաբերական այլ կենտրոնների սոցիալ-քաղաքական կյանքի կազմակերպող օրգան, քանի որ բացի Բաքվից և Բաթումից, մյուս տեղերում տակավին չէին ձևավորվել տեղական կոմիտեները։ «Հայ սոցիալ-դեմոկրատների միության վերաբերյալ սխալ մտքեր կան Ն. Ստուրուայի «Из истории борьбы за создание и упрочение большевистских организации Закавказья (1883—1904)» գրքում (Тб. 1956)։ Նրանում հեղինակը գրել է, որ իբր թե Միության մեջ մտել են հայ նացիոնալիստական «Դաշնակցություն» և «Հնչակ» կուսակցություններից, որոնք կազմակերպությունը քաշել են դեպի բունդի դիրքերը» (էջ 83)։

[1] Այստեղ և հաջորդ էջերում լենինյան աշխատությունների վերնագրերը տրվում են այնպես, ինչպես թարգմանվել են։

[1] Վ. Ի. Լենինի աշխատությունների նախասովետական շրջանի հայերեն հրատարակությունների բիբլիոգրաֆիական ցանկը (1903—1920 թթ.) տես մեր «Բոլշևիկյան հայ պարբերական մամուլի բիբլիոգրաֆիա» գիրքը, Երևան, 1959, էջ 271—274։

## 2

Հայաստանի բոլշևիկյան կազմակերպությունները, զինված Վ. Ի. Լենինի ապրիլյան նշանավոր թեզիսներով, կուսակցության 1917 թվականի ապրիլյան կոնֆերանսի և VI համագումարի որոշումներով, խոշոր աշխատանք կատարեցին աշխատավոր զանգվածներին լենինյան դրոշի ներքո համախմբելու, նրանց հեղափոխության կողմը նվաճելու գործում։ Անդրկովկասում, այդ թվում՝ Հայաստանում աշխուժանում է քաղաքական կյանքը։ Հեղափոխական գոտեմարտերում մարտնչող հայ բանվորներն ու աշխատավոր զանգվածները, առաջադեմ մտավորականությունը ուշադրությամբ հետևում էին Վ. Ի. Լենինի պայքարին, ուսումնասիրում նրա գաղափարները և ջանում ճիշտ ընկալել դրանք։ Ահա այդ տրամադրություններն է արտահայտել աննկուն բոլշևիկ Բ. Ղարիբջանյանը 1917 թվականի նոյեմբերի 6-ին Ալեքսանդրապոլից Վ. Ի. Լենինին գրած նամակում։ ՌՍԴԲԿ Կենտկոմի ներկայացուցիչ Բագրատ Բորյանի օգնությամբ հեռակա կապ հաստատելով Իլյիչի հետ, նա գրել է. «Ընկեր Լենին։ Կովկասի լեռների վրայով Ձեզ հետ պատիվ ունի խոսելու Բ. Ղարիբջանյանը։ Տեսած չլինելով և ծանոթ չլինելով Ձեզ, ես հիացած եմ ձեզանով և սիրահարված եմ Ձեզ։ Ես ժողովներում և միտինգներում հանդես եմ գալիս Ձեզ անվանելով ռուսական Մարքս»[1]։

1917—1918 թվականներին բոլշևիկյան հայ պարբերականներում և առանձին գրքերով լույս են տեսնում Վ. Ի. Լենինի շատ աշխատություններ։ Այդ ժամանակ «Բանվորի կռիվը» (Թիֆլիս) թերթում հրատարակվեցին նրա «Սոսկալի վտանգը մոտենում է», «Ինչպես վերջ տալ պատերազմին», «Ֆինանսական անկումը և նրա դեմ կռվելու միջոցները», «Կարելի է գնալ առաջ, վախենալով մոտենալ սոցիալիզմին», «Փլուզման դեմ կռվելը և պատերազմը», «Պետություն և հեղափոխություն» և ուրիշ շատ աշխատություններ, նամակներ, ճառեր ու հոդվածներ։ Աշոտ Հովհաննիսյանի խմբագրությամբ Շուշիում հրատարակվող «Նեցուկ» բոլշևիկյան թերթը 1917 թվականի սեպտեմբերին հրատարակել է Վ. Ի. Լենինի «Լոզունգների առթիվ» ծրագրային աշխատությունը։

Լենինյան աշխատությունները լուսավորում էին մասսաների պայքարի ուղին։ 1918 թվականին Իլյիչի շատ աշխատություններ են լույս տեսել Բաքվի հերոսական կոմունայի օրգան «Տեղեկատու», հայկական գործերի կոմիսարիատի օրգան «Կոմունիստ» (Մոսկվա), ՌՍԴԲԿ Անդրկովկասյան երկրային կոմիտեի օրգան «Բանվոր» և այլ պարբերականներում։ 1918 թվականի մարտի 8-ի № 7-ում տպագրվել է Վ. Ի. Լենինի 1913 թվականի դեկտեմբերի 6-ի Ստ. Շահումյանին ազգային հարցի առթիվ գրած նշանավոր նամակը (այն լույս է տեսել նաև «Բակինսկի ռաբոչի», «Իզվեստիա» (Մոսկվա) և այլ թերթերում)։ 1913 թվականին Շահումյանը Աստրախանի աքսորավայրում Վ. Ի. Լենինից ստանալով Կենտկոմի անդամների և կուսակցության աշխատողների Պորոնինոյի խորհրդակցության բանաձևը ազգային հարցի մասին, նոյեմբերի 15-ին այդ առթիվ նամակ է գրում (Շահումյանի այդ նամակը տակավին չի հայտաբերված) Վլադիմիր Իլյիչին, այնտեղ շոշափելով պետական լեզվի, ֆեդերացիայի, ավտոնոմիայի և այլ հարցեր։ Վ. Ի. Լենինը, ծանոթանալով Շահումյանի

[1] См. ЦПА ИМЛ при ЦК КПСС, ф. 2 (В. И. Ленина), оп. 4, д. 163, лл. 15, 16, 16 об.



նամակին, իր նոյեմբերի 23-ի (դեկտեմբերի 6-ի) նամակում հանգամանորեն քննարկում է դրանք և իր պատասխան նամակում բարեկամական դիտողություններ անում Ստ. Շահումյանին, նշում ազգային հարցի լուծման բոլշևիկյան ուղիները։

1918 թվականին Շահումյանը առաջին անգամ հրատարակելով Վ. Ի. Լենինի վերոհիշյալ նամակը, որոշ մեկնաբանություններ է տալիս, և որ գլխավորն է՝ նշում, որ ազգերի ինքնորոշման իրավունքի մասին բոլշևիկյան կուսակցության պաշտպանած հայացքները Վ. Ի. Լենինը արտահայտել է շատ տարիներ առաջ։ 1918—1920 թվականներին Հայկական գործերի կոմիսարիատը և Արևմտահայաստանի համար 1918 թվականին կյանքի կոչված Հայաստանի կոմունիստական կուսակցությունը Մոսկվայում իրականացրեցին Վ. Ի. Լենինի մի քանի աշխատությունների հայերեն հրատարակությունը։ Հայկական գործերի կոմիսարի տեղակալ, բոլշևիկ բանաստեղծ Վահան Տերյանը Վ. Ի. Լենինի «Պետություն և հեղափոխություն» (թարգմանության վերջաբանը գրել է Ալ. Մյասնիկյանը), «Կարլ Մարքս» աշխատությունները թարգմանելուց հետո, 1919 թվականին գրեց «Ի՞նչ է ասում Վ. Ի. Լենինը գյուղացիներին» արժեքավոր հանրամատչելի բրոշյուրը։ 1919 թվականին թարգմանվեցին և հայերեն հրատարակվեցին Վ. Ի. Լենինի «Երրորդ ինտերնացիոնալը և նրա տեղը պատմության մեջ», «Ի՞նչ պետք է լինի մեր կուսակցության անունը», «Բուրժուական դեմոկրատիա և պրոլետարական դիկտատուրա» ու այլ երկեր։ Հայաստանում սովետական իշխանության հաստատման առթիվ Հայաստանի Ռազմա-հեղափոխական կոմիտեի ողջույնին տրված Վ. Ի. Լենինի 1920 թվականի դեկտեմբերի 2-ի պատասխան հեռագիրը այդ օրերին հրապարակվեց նաև բոլշևիկյան հայերեն թերթերում, այդ թվում «Կոմունիստ» (Բաքու), «Կարմիր աստղ» (Կրասնոդար), «Կարմիր աստղ» (Թիֆլիս), «Կոմունիստ» («Խորհրդային Հայաստան» —Երևան) և այլն։ Պատմական այդ հեռագրում հայ ժողովրդի մեծ բարեկամ և խորհրդատու Վ. Ի. Լենինը գրել է. «Ողջունում եմ իմպերիալիզմի ճնշումից ազատագրված աշխատավորական Սովետական Հայաստանին»։

## 3

Վ.Ի. Լենինի աշխատությունների հայերեն թարգմանություններն ու հրատարակությունները մեծ թափ ընդունեցին միայն Հայաստանում սովետական կարգեր հաստատվելուց հետո։ Այսպես, 1920—1965 թվականներին Վ. Ի. Լենինի աշխատությունները հայերեն լեզվով հրատարակվել են շուրջ 390 անուն գրքով, ավելի քան 2 միլիոն 200 հազար օրինակ ընդհանուր տպաքանակով։ Տասնյակ հրատարակություններ են ունեցել «Ի՞նչ են «ժողովրդի բարեկամները» և ինչպե՞ս են նրանք մարտնչում սոցիալ-դեմոկրատների դեմ», «Կապիտալիզմի զարգացումը Ռուսաստանում», «Ի՞նչ անել», «Մի քայլ առաջ, երկու քայլ ետ», «Սոցիալ-դեմոկրատիայի երկու տակտիկան դեմոկրատական հեղափոխության մեջ», «Իմպերիալիզմը որպես կապիտալիզմի բարձրագույն ստադիա», «Պետություն և հեղափոխություն», ««Ձախության» մանկական հիվանդությունը կոմունիզմի մեջ», «Սովետական իշխանության հերթական խնդիրները», «Կոոպերացիայի մասին» և այլն։

Մինչև 1930-ական թվականները հրատարակվեցին Վ. Ի. Լենինի գլխավո-

րապես այն աշխատությունները, որոնք նվիրված են ռուսական երեք հեղափոխություններին, ազգային և ագրարային հարցերին, նոր տնտեսական քաղաքականությանը և երիտասարդության խնդիրներին։ 1932 թվականին հիմք դրվեց Հայաստանի պետական քաղաքական հրատարակչությանը (Կուսհրատ), որը մինչև 1940-ական թվականները մեծ աշխատանք կատարեց սոցիալ-քաղաքական գրականության, առանձնապես մարքսիզմի կլասիկների երկերի հայերեն հրատարակությունների իրականացման ասպարեզում։ Տպագրվեցին Վ. Ի. Լենինի Ընտիր երկերը (վեց հատորով), Երկերի երրորդ հրատարակության 3, 8, 13, 22, 27 հատորները, «1905 թվի հեղափոխության մասին», «Խորհրդային իշխանության հերթական խնդիրները», «Մարքս—Էնգելս—մարքսիզմ», «Նամակներ հարազատներին», «Պրոլետարական հեղափոխությունը և ռենեգատ Կաուցկին», «Փետրվարից դեպի հոկտեմբերը», «Սոցիալիզմը և կրոնը», «Կոմունիստական ինտերնացիոնալի մասին» և ուրիշ այլ աշխատություններ ու թեմատիկ ժողովածուներ։

Վ. Ի. Լենինի աշխատությունների հայերեն հրատարակությունների պատմության մեջ նշանավոր իրադարձություն է Երկերի չորրորդ հրատարակության իրականացումը, որն ապահովել է ՍՄԿԿ Կենտկոմին կից մարքսիզմ-լենինիզմի ինստիտուտի հայկական ֆիլիալը, հետպատերազմյան ժամանակաշրջանում։ Դա միաժամանակ մեծ նվաճում և խոշորագույն իրադարձություն էր Հայաստանի կոմկուսակցության գաղափարական կյանքում, հայ մշակույթի անդաստանում։ Հենվելով կուտակված փորձի վրա, շարունակելով ավագ սերնդի թարգմանիչների լավագույն ավանդները, ֆիլիալի թարգմանչական սեկտորը, նրա շուրջը համախմբած որակյալ խմբագիրներն ու թարգմանիչները ջանք չեն խնայում կատարելագործելու թարգմանական արվեստը, հայ ժողովրդի հոգևոր սեփականությունը դարձնելու լենինյան գրական հարուստ ժառանգությունը։ Վաղուց մշակվել են լենինյան երկերի թարգմանության գլխավոր սկզբունքները, որ երկու խոսքով կարելի է բնորոշել այսպես՝ «Թարգմանության որակի չափանիշը բնագրի իմաստի միանգամայն ճիշտ և լեզվաոճական տեսակետից միանգամայն հասկանալի հաղորդումն է»։ Վ. Ի. Լենինի երկերի թարգմանությունը դրված է տեսական, գիտական ամուր պատվանդանի վրա։ Մերժելով առանձին մարդկանց փայփայած այսպես կոչված մեխանիկական թարգմանության կամ բառացիության արատավոր մեթոդը, ինչպես նաև այն տեսակետները, թե այդ գործերի թարգմանության ժամանակ պետք է ղեկավարվել գեղարվեստական երկերի թարգմանության սկզբունքներով, ինչպես նրանք են ասում «ազատ թարգմանությամբ», հարազատորեն տրվում է բնագրի իմաստը, յուրաքանչյուր տողի կոնկրետ դրույթներն ու առանձնահատկությունները, պահպանելով ֆրազի երանգը։ Մի խոսքով, անցած ժամանակաշրջանում հանրապետությունում ստեղծվել է մարքսիստական գրականության թարգմանության բարձր արվեստ, որը ոչ միայն մի նոր աստիճանի է հասցրել հայոց լեզվի զարգացումը, այլև հնարավորություն է ընձեռել հայ ընթերցողին մայրենի լեզվով մոտիկից հաղորդակից լինելու ռուսական և համաշխարհային կուլտուրայի բարձրակետի՝ լենինիզմի վսեմ գաղափարներին, պայքարելու դրանց իրականացման համար։

Վ. Ի. Լենինի աշխատությունների հայերեն հրատարակությունները հարըստացան նրա ծննդյան 90-ամյակի օրերին, 1960 թվականին։ Շարունակվում է Վ. Ի. Լենինի Երկերի չորրորդ հրատարակության լրացուցիչ հատորների հայերեն տպագրությունը։ Շուտով ընթերցողը կստանա 40-րդ հատորը։ Այս ամենից զատ, լենինյան գրական ժառանգությունը հայերեն հրատարակվում է նաև պարբերականներում, ալմանախներում և այլ ժողովածուներում։

Ստորև հրապարակվող աղյուսակը արտացոլում է Վ. Ի. Լենինի աշխատությունների հայերեն հրատարակությունների պատկերը.

Վ. Ի. Լենինի աշխատությունների հայերեն հրատարակությունները
1903—1965 թվականներին

| Թվականներ | Անունների քանակը | Տպաքանակ | Թվականներ | Անունների քանակը | Տպաքանակ |
|---|---|---|---|---|---|
| 1 | 2 | 3 | 1 | 2 | 3 |
| 1903—1919 | 46 | տվյալներ չկան | 1943 | 1 | 5.000 |
| 1920 | 15 | 20.000* | 1944 | 1 | 3.000 |
| 1921 | 1 | 2.000 | 1945 | 2 | 12.000 |
| 1922 | 1 | 2 000** | 1946 | 2 | 10.000 |
| 1923 | — | տվյալներ չկան | 1947 | 2 | 39.000 |
| 1924 | 4 | 17.000 | 1948 | 8 | 43.000 |
| 1925 | 8 | 27.000 | 1949 | 7 | 35.000 |
| 1926 | 10 | 42.200 | 1950 | 27 | 178.000 |
| 1927 | 4 | 18.000 *** | 1951 | 10 | 65.000 |
| 1928 | 5 | 15.000 | 1952 | 9 | 55.000 |
| 1929 | 5 | 25 000 | 1953 | 13 | 84.000 |
| 1930 | 5 | 19 000 | 1954 | 8 | 55.000 |
| 1931 | 6 | 37.500 | 1955 | 6 | 34.000 |
| 1932 | 11 | 66.500 | 1956 | 6 | 50.000 |
| 1933 | 14 | 83.000 | 1957 | 7 | 50.000 |
| 1934 | 15 | 85.000 | 1958 | 6 | 35 000 |
| 1935 | 17 | 121.000 | 1959 | 3 | 20.000 |
| 1936 | 5 | 31.000 | 1960 | 10 | 100.000 |
| 1937 | 4 | 31.200 | 1961 | 2 | 20.000 |
| 1938 | 10 | 95 000 | 1962 | 3 | 13.000 |
| 1939 | 18 | 142.000 | 1963 | 1 | 5.000 |
| 1940 | 15 | 85.000 | 1964 | 2 | 10.000 |
| 1941 | 9 | 50.000 | 1965 | 4 | 26.000 |
| 1942 | 1 | 3.000 | | | |
| Ը ն դ ա մ ե ն ը | | | | 369 | 1.964.400**** |

* 1920-ական թվականների որոշ հրատարակությունների վրա տպաքանակները չեն նշված, մեր կողմից բերված թվերը հաստատված են գրապալատի նյութերով և կողմնակի այլ տվյալներով։

** Այս թվերի մեջ չի մտնում Վ. Ի. Լենինի «Պետություն և հեղափոխություն» գրքի ԱՄՆ-ում 1922 թ. կատարված հրատարակությունը։

*** Այս թվերի մեջ չի մտնում Վ. Ի. Լենինի «Երիտասարդության միության խնդիրները» («Կոմունիստ երիտասարդությունը և իր դերը» 1927 թ. Սալոնիկում տպագրվածը, որը լույս է տեսել 600 օրինակ տպաքանակով)։

**** Վ. Ի. Լենինի աշխատությունները զանազան այլ ժողովածուներում հայերեն լեզվով լույս են տեսել մոտ 180 հազար օրինակ տպաքանակով։ Սույն աղյուսակում չեն մտնում ինչպես այդ, այնպես էլ սովետական շրջանում պարբերական մամուլում հրատարակված լենինյան երկերը։

Լենինյան երկերի յուրաքանչյուր նոր հրատարակություն հարստացնում է սովետական ժողովրդի գաղափարական պաշարը։ Վ. Ի. Լենինի երկերի հայերեն հրատարակությունները լայն տարածում են գտել ոչ միայն Սովետական Հայաստանում և եղբայրական հանրապետություններում ապրող հայերի շրջանում, այլև տարածվում է ժողովրդական դեմոկրատիայի երկրներում և սփյուռքում ապրող հայ աշխատավորական զանգվածների մեջ։ «Международная книга» կազմակերպության միջոցով ամեն տարի Չեխոսլովակիա, Բուլղարիա, Ռումինիա, Լեհաստան, ինչպես և Մերձավոր Արևելքի ու այլ երկրներ են ուղարկվում լենինյան աշխատություններից, Վ. Ի. Լենինի կյանքին ու հեղափոխական գործունեությանը նվիրված գրքեր, հուշագրություններ և այլ գործեր։

Լենինիզմը աշխատավորների կոմունիստական, ինտերնացիոնալ դաստիարակության հիմքն է։ Վ. Ի. Լենինի աշխատությունների ուսումնասիրությունն օգնում է ճիշտ կողմնորոշվելու ամեն մի իրադրության մեջ, մինչև վերջ հավատարիմ մնալու մարքսիզմ-լենինիզմի մեծ ուսմունքին։ Լենինյան աշխատությունները մեր օրերում օգնում են կոմունիզմի կառուցմանը, կոմունիստական և բանվորական կուսակցություններին զինում պսակազերծելու մարքսիզմի ուրացողների կեղծ ֆրազոլոգիան, չինական պառակտիչների՝ Մաո Ցզե-դունի խմբի հակամարքսիստական, հակասովետական գործողությունները։

Վ. Ի. Լենինի անմահ գաղափարները ապրում են, մարմնչում, զարգանում սովետական ժողովրդի վեհ գործերում, մեծ Հոկտեմբերի նվաճումներում, կոմունիզմի համար մղվող պայքարում, աշխարհի առաջադեմ մարդկանց սրտերում։

Երախտագետ հայ ժողովուրդը իր խոհերով ու ամբողջ սրտով Իլյիչի հետ է։ Ընթանալով դեպի Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության հիսունամյա փառատոնը, հայ ժողովուրդը շնորհակալական առաջին խոսքն ուղղում է Իլյիչին՝ իր մեծ ազատարարին։

Ապրում և հաղթանակում են Վ. Ի. Լենինի գաղափարները։

Լենինիզմը հզոր լուսարձակի նման լուսավորում է աշխատավոր մարդկության կյանքի ու պայքարի ուղին։



Է. ՍԱՐՈՅԱՆ

# ԱՄԵՆՈՒՐ ԼԵՆԻՆԸ ՄԵԶ ՀԵՏ Է

1954 թվականի դեկտեմբերին պետական Զինապալատի դիրեկտորը կանչեց այդ պալատի գիտաշխատողներին.

— Որոշված է Վլադիմիր Իլյիչի աշխատասենյակում և բնակարանում էքսկուրսիաներ կազմակերպել։ Հրավիրել ենք հին բոլշևիկների, ժողկոմխորհի աշխատողների։ Ուշադրությամբ կլսեք ինչ որ նրանք կասեն, որպեսզի ամեն ինչ լինի այնպես, ինչպես Լենինի կենդանության ժամանակ էր։

Պրոլետարիատի մեծ առաջնորդի ծննդյան 85-ամյակի օրը՝ 1955 թ. ապրիլի 22-ին, բացվեցին նրա կրեմլյան աշխատասենյակի, բնակարանի դռները։

— Ժամանակն, ասես, կանգ է առել. կարծես դեռ երեկ էր՝ որ ես մտա այստեղ, Վլադիմիր Իլյիչին վերջին զեկույցը տալու,— հուզմունքից բեկբեկուն ձայնով այցելուների երկարատև լռությունը խզեց Ժողկոմխորհի գործերի նախկին կառավարիչ Վ. Դ. Բոնչ Բրուևիչը։

Դեռ երեք ամիս առաջ Բոնչ Բրուևիչի հետ միասին այդտեղ, իրենց ջանքերն ու հուշերը համատեղելու էին հավաքվել բոլոր նրանք, ովքեր այնպես հաճախ հանդիպում էին Լենինին, տեղյակ էին նրա աշխատանքային առօրյայի մանրամասներին, գիտեին՝ ուր ինչ, ինչպես է դրված... Այդտեղ էին Ժողկոմխորհի նախկին քարտուղար Լիդիա Ալեքսանդրովնա Ֆոտիևան, Իլյիչի գրադարանավարուհի Շուշանիկ Նիկիտիչնա Մանուչարյանցը, Իլյիչի ազգական Վիկտոր Դմիտրիչ Ուլյանովը, Նադեժդա Կոնստանտինովնայի քարտուղարուհին, Ինեսսա Արմանդի աղջիկները և ուրիշ շատ շատերը...

Տարիների լռությունը թոթափած՝ լեզու առան, խոսեցին և իրերը... Ու այդպես կազմակերպվեց, կահավորվեց Լենինի կենտրոնական թանգարանը Կրեմլում։ Հեղափոխության հրապարակում հիմնված լենինյան թանգարանի նրա աշխատասենյակը պատճենավորված է այնպես, ինչպես Կրեմլում։

Ահա թանգարանի համալրման մի փոքրիկ մանրամասն, որը ցույց է տալիս, թե որքա՜ն ջանադրաբար, փնտրել, գտել, բոլոր իրերն իրենց տեղն են դրվել այնտեղ։ Լենինը չէր ծխում, բայց նա ուներ մի ծխախոտատուփ, որը թանկ էր Իլյիչի համար, որովհետև... Բայց ո՞ւր է այն, ոչ մի տեղ չկա։

— Սեյֆում պետք է լինի,— հուշում է Վիկտոր Ուլյանովը։

Կրեմլի պարետ Ա. Յա. Վեդենինի թույլտվությամբ վարպետը բացում է սեյֆը և այնտեղից հանում են Իլյա Նիկոլաևիչի գրպանի հին ժամացույցը, թեյի ու ճաշի արծաթյա գդալները, Մարիա Ալեքսանդրովնայի անձնագիրն ու

Մարիա Իլյինիչնայի շքանշանի գրքույկը, այլ իրեր և... ծխախոտատուփը. «Սիրելի առաջնորդ Իլյիչին՝ Դաղստանի աղքատներից», ահա թե ինչու այնպե՞ս թանկարժեք էր այն և նրա հետ միասին հեռավոր Դաղստանի աղքատների ուղարկած բաժակակալը։

Մոսկովյան Կրեմլ... ծանոթ ու ցանկալի վայր սովետական բոլոր մարդկանց, արտասահմանյան մեր բարեկամների համար։ Ապրիլյան այդ պայծառ օրվանից սկսած, առավոտից երեկո անընդհատ գալիս են այցելուները, տեսնելու Կրեմլի պալատներն ու վանքերը, ծանոթանալու, հիանալու Զինապալատի հարստություններով, լինում ամենուր, որտեղ եղել է Իլյիչը։

Մեզ՝ հուզված այցելուներիս, էքսկուրսավարն առաջնորդում է Լենինի աշխատասենյակը. փոքր է այն, բարձր առաստաղով, երկու լայն պատուհաններով, որտեղից Իլյիչը հաճախ է նայել ու հիացել Կրեմլի Տրոիցկի աշտարակով։ Սենյակի մեջտեղում գրասեղանն է՝ կանաչ մահուդով ծածկված, վրան հեռախոսի երկու ապարատ։ Այստեղ տեսնում ենք երկու գրադարակներ, որոնցից մեկի վրա կուսակցական համագումարների, կոնֆերանսների և այլ նյութերի հետ դրված են ԳՕԷԼՌՕ-ի պլանի մի քանի օրինակ, տեղեկագրեր, օտար լեզուների բառարաններ և Իլյիչի ամենասիրած՝ Վ. Դալի Բացատրական բառարանը։ Գրադարակներից մեկը լցված է զանազան քարտեզներով, աջ պատին նույնպես քարտեզներ են։ Սեղանի վրա է Ի. Ի. Ստեպանովի ՌՍՖՍՀ-ի էլեկտրիֆիկացումը՝ կապված խաղաղ տնտեսության փուլին անցնելու հետ գիրքը։ Այն հեղինակը նվիրել է Լենինին, այն մարդուն, որը ներշնչել էր նրան հենց այդ հանրօգուտ վիթխարի աշխատանքում տեսնելու իր կոչումը։

Այս աշխատասենյակում Իլյիչն ընդունել է մեր երկրի պետական, գիտության ու կուլտուրայի շատ գործիչների, բանվորների ու գյուղացիների։ Գուցե հենց այստեղ է ընդունել մեծ առաջնորդը այն մուժիկին, որին

...Հարկավոր է—մի զույգ կոշիկ։
Դիմել է մուժիկը ուրիշի—
Ասել են չիք,
Դե նա էլ—եկել է Իլյիչին։

Ամենախոր ու հետևողական ինտերնացիոնալիստը այստեղ է ընդունել միջազգային կոմունիստական շարժման այնպիսի ականավոր գործիչների, ինչպես՝ Մարսել Կաշենը, Վիլհելմ Պիկը, Անտոնիո Գրամշին, Վասիլ Կոլարովը, Գեորգի Դիմիտրովը և ուրիշներ։ 1921 թվականին նրա հետ հանդիպելուց հետո ֆրանսիացի ականավոր կոմունիստ Վայան-Կուտյուրեն գրում է. «Ողջ աշխարհը ցնցող այդ մարդը, որի գիտակցության մեջ անընդհատ եռում էին այն ամենը, ինչով ապրում ու շնչում էր այդ աշխարհը, մինչև գիտակցական կյանքի վերջը պահպանել է չինական կուլիի, նեգր բեռնակրի պես զգալու և մտածելու ունակությունը։ Շահագործվող վիետնամցին, հնդիկը նրա համար նույնքան հասկանալի, նույնպիսի բաց գիրք էին, ինչպես լենինգրադյան մետաղագործը, փարիզյան մանածագործը, Նոր Վիրգինիայի հանքափորը»։

«Այն օրվանից, ինչ մեզ մոտ է աշխատել պարոն Ուլյանովը, չենք տեսել մի մարդ, որն այդքան շատ կարդար», ասել է Փարիզի ֆրանսիական ազգային գրադարանի դիրեկտորը։ Այդ և նրա լարված աշխատանքի մասին են վկայում աշխատասենյակի գրքերով լի պահարանները, ժողկոմխորհի՝ գրապահարաններով լի գրադարանը տասնյակ հազարավոր գրքերով։ Գրադարանավարուհուց հետո միայն Լենինն այնպես լավ գիտեր գրքերի տեղը։ Քաղաքական կարևոր



հարցերի շուրջ վիճելիս հաճախ էր ասում. հապա մի խորհրդակցենք Մարքսի հետ, և բազմահազար գրքերի մեջ անմիջապես գտնում էր պետք եկող գիրքը։ Լենինը, որ լավ տիրապետում էր անգլերենին, գերմաներենին, ֆրանսերենին, կարդում լեհերեն, իտալերեն, հասկանում չեխերեն, շվեդերեն, գերադասում էր համաշխարհային մեծությունների գլուխգործոցները կարդալ բնագրով։

Բացի Յակով Միխայլովիչ Սվերդլովից ոչ ոք երբեք չի աշխատել Իլյիչի աշխատասենյակում։ 1918 թվականի օգոստոսին, Լենինի վիրավորվելուց հետո, երկու շաբաթ՝ օրական երկուսից-երեք ժամ նա աշխատել է այստեղ։

Աշխատասենյակի կողքին է գտնվում ժողկոմխորհի և Աշխատանքի ու պաշտպանության սովետի նիստերի երկարավուն դահլիճը, իսկ դրա կողքին՝ Իլյիչի չորս փոքրիկ սենյակներից բաղկացած բնակարանը։ «Բավական էր միայն բացել այդ բնակարանի դուռը,— գրում է պրոֆեսոր Մ. Ի. Ավերբախը Լենինի մասին իր հիշողություններում,— որ անմիջապես զգայիր քեզ ոչ խոստապահանջ, բայց իրոք կուլտուրական մարդու բնակարանում— ամեն ինչ պարզ ու մաքուր, հաճելի, ամեն ինչ իր տեղում է, առանց փայլի, շուքի, պերճանքի ոչ մի առարկա»։ Ահա և Լենինի սենյակը, որը և՛ ննջարան է, և՛ աշխատասենյակ։ Պատուհանի մոտ կապույտ մահուդով ծածկված գրասեղանն է, վրան գրենական պիտույքներ, կողքին բազկաթոռը, պատի մոտ մահճակալը, վանդակավոր այն ծածկոցով, որը 1910 թվականին Ստոկհոլմում նվիրել էր նրան մայրը, իրենց վերջին հանդիպման ժամանակ։

Կրուպսկայայի սենյակը նույնպես և՛ ննջարան էր, և՛ աշխատասենյակ։ Ուստի և ամեն բան դասավորված է այնպես, որ աշխատանքի համար անհրաժեշտ ամեն ինչ ձեռքի տակ լինի։ «Նադեժդա Կոնստանտինովնան միշտ աշխատում էր ոգևորված, իսկ կրքոտ սկզբունքայնությունը, ամեն հարցի նկատմամբ կուսակցական վերաբերմունքը տոկանքնում էին նրա հետ աշխատողներին։ Նրան հարգում էին ո՛չ միայն որպես ամենայն խորությամբ իր գործն իմացող ղեկավարի, կուսակցության հնագույն անդամի, այլ ուղղակի սիրում էին որպես ավագ ընկերոջ ու բարեկամի. անսահման էր նրա հեղինակությունը»— գրել է նրա քարտուղար Վ. Դրիձոն։

Այդ մասին, երբ առիթ էր լինում, համեստ հպարտությամբ խոստովանում էր և Լենինը։ Լենինին և Նադեժդա Կոնստանտինովնային մոտիկից ճանաչողները հիացմունքով են խոսում նրանց փոխըմբռնման, փոխադարձ սիրո, բարեկամության մասին։ Ջոն Ռիդի կինը՝ Լուիզա Բրայանտը, որ երկար ժամանակ մեր երկրում էր և հաճախ էր հանդիպում Իլյիչին, պատմում է. «Լենինը պաշտում է կնոջը և հաճույքով խոսում նրա մասին։ Մի անգամ ես ասացի, որ կուզեի ծանոթանալ նրա հետ. Իլյիչն ասաց.

— Այո, անպայման, նա Ձեզ դուր կգա. նա շատ խելացի կին է»։

Ահա և տպավորությունների գիրքը, ո՞վ գիտե՝ որերորդը... Թանգարանի այցելուների մեծ մասն իր շնորհակալությունն է հայտնում այն կազմակերպողներին։ Թերթում, թեթևակի ծանոթանում ես սեղանին դրված այդ գրքին և հրճվանքով տեսնում, որ ամենքին էլ հիացրել է «Երկրագնդով անցած բոլոր մարդկանցից ամենամարդկայինի» անսահման պարզությունը։ Ամենքն էլ քեզ հետ միասին այդ պարզության մեջ տեսել, զգացել են նրա վեհ, անընդգրկելի ոգին։ Բազում խոհերով ու հույզերով դուրս ես գալիս թանգարանից, զգալով, թե որքա՞ն քիչ բան ես արել և որքա՞ն անելիքներ ունես լենինյան պատգամ-

ները կատարելու, մեծագույն նպատակի՝ մարդկության լիակատար երջանկությունն ապահովելու համար, որին մեծ առաջնորդը նվիրեց իր ողջ կյանքը։

Այդ խոհերով տարված՝ հասնում ենք Լենինի թանգարանին և մտնում ներս։ Այստեղ մեծ ջանադրությամբ հավաքված ու ցուցադրված են Իլյիչի կյանքի ու գործունեության հետ կապված համարյա բոլոր նկարները, աշխարհի տարբեր քաղաքների, նրա աքսորավայրերի նկարները, գաղտնի ու լեգալ տպարանների, նրա բնակարանների, ապրելատեղերի մակետները, աշխարհի, հատկապես սովետական բազմազգ երկրի ժողովուրդների՝ մեծ առաջնորդին ուղարկած նվերները, նրա գործածած իրերը։ Միշտ էլ շատ մարդ է լինում այն ավտոմեքենայի առաջ, որով շրջում էր Լենինը և որի մոտ տեղի ունեցավ էսեր Կապլանի չարագործ հարձակումը, որից հետո խախտվեց նրա առողջությունը։

Հնարավոր չէ մեկ առ մեկ թվել երկհարկ այդ թանգարանի բոլոր նկարներն ու էքսպոնատները։ Բոլոր այցելուները մեծ հետաքրքրասիրությամբ դիտում են այդ համեստագույն մարդու գործածած իրերի, հագուստների ցուցափեղկերը։ Հնամաշ, կարկատած են նրա զգեստներն ու կոշիկները՝ նույնիսկ այն ժամանակ, երբ նա արդեն մեր պետության գլուխ էր կանգնած. երկիր, որի մշակութային ու գիտական ինտելիգենցիան և՛ տանը, և՛ դրսում, և՛ աշխատավայրում, և՛ համագումարներում դեռևս միևնույն կոստյումն էր հագնում։ Ահա թե ինչ է պատմում Կրեմլի գնդացրային կուրսերի նախկին ուսանող Ս. Ե. Կոկորևը. «Մի անգամ կանգնած էի պոստում։ Լենինի տնային աշխատողը դուրս եկավ միջանցք՝ նրա կոստյումը մաքրելու և սկսեց բողոքել ինձ.

— Ահա՛, բոլորին ղեկավարում է, բոլորի մասին հոգում, իսկ իր համար մի կոստյում ճարել չի կարողանում. մի գլուխ նորոգում եմ, կարկատում...

Հետևից անսպասելի ծիծաղ լսվեց։ Շուռ եկանք։ Այդ Իլյիչն էր աննկատելի դուրս եկել աշխատասենյակից և ծիծաղում էր աշխատողի փնթփնթոցի վրա։

— Ոչինչ, ոչինչ,— քնքշանքով նրա ուսին թփթփացնելով և ծիծաղելով ասաց Վլադիմիր Իլյիչը,— ա՛յ, կհարստանանք, նոր կոստյում կառնեմ ինձ համար։ Քիչ կչարչարվեք»...

Հասնում ենք թանգարանի վերջին՝ սգասրահին։ Մեր Միության բոլոր հանրապետությունների դրոշները՝ սգո ժապավեններով, խոնարհված, իրենց մեջ են առել Լենինի փոքրիկ կիսանդրին՝ դագաղում։ Հենց այդպիսին է նա դամբարանում։ Այնտեղ, խոնարհված դրոշների, հունվարյան այդ անողորմ, սառցակալած օրն արտացոլող նկարներով ծածկված պատերի մեջ ավելի խոր ես զգում կորստի ահավոր մեծությունը։ Ահա նկարներից մեկը. դագաղը վերցնում են արդեն, իսկ նրա մոտ, սակավաթիվ հարազատների, բազմաթիվ բարեկամների ու ընկերների հետ միասին դագաղին կռթնել է Իլյիչի կյանքի անվարան, հավատարիմ ընկերուհին՝ վշտաբեկ Կրուպսկայան։ Նա չի հավատում, որ այլևս չի լսելու նրա սրտամոտ, իմաստուն, թևավորող խոսքերը, հոգեպարար ծիծաղը... Բայց իրականությունն անողոք է և, չնայած նրան, որ մի նշանով բոլոր հավաքվածներն իրենց կյանքը կտային, միայն թե նա կենդանանար, Լենինին տանում են դամբարան... Իսկ պատերի տակ պսակներ են, արհեստական դափնետերևներից հյուսված պսակներ՝ բանվորական, զինվորական կոլեկտիվներից, զինակիցներից... «Մնաս բարով, ընկեր իմ» խոնավացած աչքերով կարդում ենք Գորկու պսակի վրա։ Մնա՜ս բարով, շշնջում ենք ու կորստի ցավը մեր սրտում, թողնում վշտամփոփ այդ սրահն էլ։ Տասնհինգ րոպեանոց վավերագրական ֆիլմը դիտելուց հետո դուրս ենք գալիս շենքից ու տեսնելով մեր շուրջը խլրտացող բազմազբաղ, ուրախ դեմքերով, նոր հոգսերով ծանրաբեռն, իրենց երջանկությունը դարբնող մարդկանց, վերասլաց նոր շենքերը, կուլտուրայի օջախներն ու կենսաթրթիռ, ժպտացող մանուկներին, համոզվում, որ Լենինի գաղափարները հաղթել, նրա երազներն իրականություն են դարձել, հոգ չէ, որ դեռևս կան շատ դժվարություններ, արգելքներ։ Մենք հավատում ենք, որ մեր նպատակները կիրականանան. այդ հավատի մեջ է Լենինի անմահությունը։



●

— Կես ժամից կշարժվի Գորկա գնացող ավտոբուսը։ Ցանկացողները մոտենան և տեղավորվեն ավտոբուսում։ Այնտեղ կտեսնեք...

Շատ շատերի հետ մենք ևս տեղավորվում ենք, և ավտոբուսը շարժվում է դեպի մերձմոսկովյան այն նվիրական վայրը, ուր հանգստացել, աշխատել, բուժվել, իր կյանքի վերջին օրերն է անցկացրել ամբողջ աշխարհի աշխատավորների մեծագույն առաջնորդը։ Մտնում ենք սպիտակ հագած պարտեզը։ Պուրակներում ամենուրեք ճյուղածածկ ծառեր են, թփուտներ... Գեղեցիկ է Գորկայի ճերմակազգեստ պարկը։ Ինչպիսի՜ն կլինի այն ամռանը, սաղարթախիտ կանաչով ու բազմերանգ ծաղիկներով...

Անցնում ենք բնության այս հրաշալի անկյունի այն ծառուղիներով, որտեղ զբոսնել, խորհել ու մտածել, ստեղծագործել է Իլյիչը։ Այստեղ, այս նստարանին է Նադյայի հետ նստել, իր գործի մեծությունն զգացող մարդու երջանկաշող ժպիտով զրուցել նա։ Հեռվում, ծառերի մեջ, երևում է սպիտակասյուն այն տաղավարը, ուր ամառվա շոգ օրերին նա սիրում էր հանգստանալ, բնությամբ զմայլվել, ստեղծագործել։

Հասնում ենք Լենինի տուն-թանգարանի հյուսիսային թևաշենքին, ուր ապրել է նա։ 1918 թվականի սեպտեմբերի վերջին, էսեր Կապլանի հրեշավոր մահափորձից հետո, կուսակցության, բժիշկների ու հարազատների ստիպմամբ առաջին անգամ այստեղ եկավ Իլյիչը՝ առողջությունն ու ուժերը վերականգնելու։ Հետագա տարիներին Լենինը հաճախ էր գալիս այստեղ, իսկ 1923 թվականի մայիսից վատառողջության հետևանքով մշտապես այստեղ էր ապրում։

Գորկան եղել է ո՛չ միայն նրա առողջավայրը. մեծ մտածողը տքնել, աշխատել է այստեղ, ղեկավարել կառավարության ու կուսակցության լարված գործունեությունը։ Այստեղ նա հաճախ է ընդունել բանվորների ու գյուղացիների պատվիրակներին, կառավարության, կենտրոնական կոմիտեի անդամներին, զրուցել, խորհուրդներ տվել նրանց, ժամանակին զգուշացրել, շտկել նրանց սխալները։ Այստեղ նա գրել է մի շարք հոդվածներ ու բրոշյուրներ, ավարտել Պրոլետարական հեղափոխությունը և ռենեգատ Կաուցկին նշանավոր աշխատությունը, պատրաստվել կուսակցության, սովետների համագումարներին, Կոմինտերնի երրորդ կոնգրեսին, բազում նամակներ հղել եղբայրական կոմունիստական կուսակցություններին։

Իլյիչի հետ այստեղ էին ապրում նաև նրա ամենամտերիմ մարդիկ՝ կինը և կրտսեր քույրը՝ Մարիա Իլյինիչնան։ Նրա բազմազբաղ, լարված աշխատանքի վկայությունն է այստեղ նրա վիթխարի գրադարանը, ուր Նադյայի և Մարիայի ջանքերով հավաքված են մոտ երեք հազար գիրք։ Այսպես, ամենուրեք, մինչև կյանքի վերջին օրն էլ Իլյիչն իր մտքի զինվորների՝ գրքերի հետ է։

Այստեղ ևս ամեն ինչ պահպանված է այնպես, ինչպես նրա կենդանության

օրոք։ Գեղեցիկ, ճաշակով կահավորված, բարեկեցիկ են բոլոր սենյակները, և՛ աշխատասենյակը, և՛ սեղանատունը… Ահա և Գորկայի ձմեռային այգին։ Այստեղ կա և կինոապարատ, Լենինի հրավերով հաճախ հավաքվում էին Գորկայի սովխոզի գյուղացիները, միասին կինոնկարներ դիտում։ Մահվանից տասնչորս օր առաջ՝ 1924 թ. հունվարի 7-ին, այս այգում փոքրիկ երեխաների մեծ սիրահարը կազմակերպել է նոր տարվա տոնածառ, անձամբ մասնակցել, ուրախացրել նրանց, ինքն էլ ուրախացել, մանկացել նրանց հետ, թերևս վերջին անգամ…

Ինչպես դամբարանի այցելության բոլոր օրերին, այնպես էլ այդ օրը, Ալեքսանդրյան այգին լիքն էր տարբեր լեզուներով խոսող, մաշկի տարբեր գույն ունեցող, Սովետական Միության տարբեր հանրապետություններից, աշխարհի տարբեր ծայրերից եկած մարդկանցով։ Ցուրտ է, ձյունախառն անձրև է մաղում, իսկ մարդիկ գալիս են ու գալիս… ոչ ոք նրանց չի հորդորել, որ գան, հավաքվեն ու դոփելով, ոտքերը ցրտից վար ու վեր անելով մեկ-երկու ժամ շարունակ սպասեն ու քայլեն. սպասեն ու քայլեն դեպի Կրեմլի այն նվիրական պատը, որի մոտ կառուցված է աշխարհի մեծագույն մարդասերի դամբարանը։

Այսօր դեռ ի՜նչ… միլիոններ են եղել հունվարյան այն ցուրտ օրը, երբ այդ նույն տեղում, փայտյա դամբարանում, գալիք սերունդներին ի տես, որպես մարդկայնության մեծագույն օրինակ, ողջ Մոսկվան, ողջ երկիրը ցրտից սառած արցունքներով այստեղ է ամփոփել ծնված ու գալիք առաջնորդներից մեծագույնին։

Մտնում ենք դամբարան… խորհրդավոր, իմաստնացնող լռություն. փշաքաղ մարմիններ, հուզմունքից ծփացող սրտեր ու լարված, սևեռուն մեծ աչք՝ հառված ապակեծածկ այն դագաղին, ուր մեղրամոմի պես գունատ ու պաղ, փակ աչքերով պառկած է բոլոր ազնիվ մարդկանց ամենամոտ բարեկամը, որը մտքի ու սրտի ամենաբաց աչքով այնպես լավ կարողացավ տեսնել ու մարդկությանը ցույց տալ իր ազատագրության ուղին, պատմության ընթացքը։ Այցելուների հոգին ասես տեղափոխվել է աչքերի մեջ. ամենքն են հուզված. և երբ դուրս ես գալիս, հարդալից մի հայացք ձգում աշխարհի ամենապատվավոր ժամապահներին և ուղղվում՝ կարդալու Կրեմլի պատերի մեջ ամփոփված անձնասափորների մակագրությունները ու տեսնելու Լենինի զինակիցների կիսանդրիածածկ գերեզմանները, ձմեռային ցրտությունն օգնում է փոքր-ինչ սթափվելու, թոթափելու հուզմունքը։ Նայում ես դեպի դամբարանն ուղղվող հոծ բազմությանը, որ եկել է անվերջ, գալիս է ու դեռ պիտի գա, և ավելի խորն ես զգում, թե ինչու Մոսկվան այնպես մոտ ու հարազատ է միլիոններին, ինչու առաջին անգամ այստեղ ոտք դնող սովետական մարդը օտարություն չի զգում։ Մոսկվան, ասես, տունն է ամենքիս, հարազատ իր երկնքով՝ լազուր լինի այն, թե գորշ… Նոր միայն ողջ խորությամբ զգում ես, որ բոլոր, բոլոր մարդկանց սրտի խոսքն է խտացրել մեր ժողովրդի տաղանդավոր բանաստեղծը՝ գրելով.

Գիտեք թե աշխարհի արգանդից
Ինչքա՜ն հանճարեղ մարդիկ,
. . . . . . . . . . . .
Անթիվ եղել են,
Կան դեռ

Ու կգան,
Այնինչ Իլյիչը—մե՛կ է
Ուրիշ Իլյիչ — դժվա՛ր թե,
Ուրիշ Իլյիչ — չկա՛։

# ՀՈԴՎԱԾՆԵՐ

## ԳՈՅԱԿՑՈՒԹՅՈՒՆԸ ԵՎ ՀԱԿԱԴԻՐ ԵՐԿՈՒ ՍԻՍՏԵՄՆԵՐԻ ՊԱՅՔԱՐԸ

Բ. ՄԵՀՐԱԲՅԱՆ

Արդի դարաշրջանի հիմնական բովանդակությունը անցումն է կապիտալիզմից սոցիալիզմին, որը խոր ազդեցություն է գործում համաշխարհային պատմական պրոցեսի զարգացման, ինչպես նաև դարաշրջանի հիմնական դասակարգերի ու հակադիր սոցիալական կարգ ունեցող գոյակցող պետությունների պայքարի ձևերի ու եղանակների վրա։ Վերջին հանգամանքը, արդի մարդկության պատմական ճակատագրում ունեցած իր հսկայական նշանակության շնորհիվ, մշտապես գտնվում է մեր կուսակցության ուշադրության կենտրոնում։ Եվ պատահական չէ, որ այդ պրոբլեմի տարբեր կողմերին էր նվիրված ՍՄԿԿ Կենտկոմի դեկտեմբերյան (1966 թ.) պլենումը։ «ՍՍՀՄ միջազգային քաղաքականության և կոմունիստական շարժման համախմբվածության համար մղվող պայքարի մասին» պլենումի որոշումը միահամուռ հավանության արժանացավ մեր ամբողջ կուսակցության կողմից։

***

Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխությունը մեր երկրում լուծելով տնտեսական և սոցիալական հիմնական կոնֆլիկտը, առաջ բերեց հակասությունների նոր շարք՝ հակասություններ պրոլետարիատի դիկտատուրայի միակ պետության և բուրժուական պետությունների միջև։ Մարդկության դասակարգային պատմության մեջ առաջին անգամ դարաշրջանի հիմնական հակամարտ դասակարգերի հակասությունները միջազգային հարաբերությունների մակարդակի բարձրացան, աշխատանքի և կապիտալի հակասություններն ստացան միջպետական հակասությունների բնույթ։

Հակասությունների նոր շարքը ծնունդ է հասարակության նյութական կյանքի զարգացման օբյեկտիվ պահանջների և ոչ թե գիտակցության կամ «մարդկանց սխալ կարծիքի», ինչպես դա հաճախ ներկայացվում է հակակոմունիստական գաղափարախոսության մեջ։ Ո՛չ թե մարդկանց գիտակցությունն

ու կամքն են հակասություններ հարուցում պրոլետարական և իմպերիալիստական դիկտատուրայի պետությունների միջև, այլ այս վերջիններս են մեծապես պայմանավորում մարդկանց գիտակցությունը, կամքը և վարքագիծը։ Որչափով սոցիալական հակադիր կարգ ունեցող պետությունների հակասությունների հիմքը կազմում են թշնամի դասակարգերի արմատական շահերն, այդ չափով էլ այդ հակասություններն անհաշտելի են։ Դրանք չի կարելի ներկայացնել «ավելի ցանկալի» և «ավելի նախընտրելի» սկզբունքով։ Ինչպես բացառվում է ազգային սահմաններում կապիտալիզմը սոցիալիզմի «փոխակերպվելու» հնարավորությունը, այնպես էլ բացառվում է միջազգային մասշտաբով հակադիր սոցիալական սիստեմների «սինթեզը»։ Բայց դրա հետ միասին որքան հավերժական չէ պրոլետարիատի և բուրժուազիայի հարաբերական միասնությունն առանձին երկրի ներսում, նույնքան էլ հավերժական չէ սոցիալիստական և իմպերիալիստական պետությունների գոյակցությունը՝ տարբեր սոցիալական կարգ ունեցող երկրների միաժամանակյա գոյությունն ու զարգացումը հակադիր ուղղություններով (վերընթաց և վարընթաց)։ Այդ հակադրությունների գոյակցությունը սահմանափակված է մի ժամանակաշրջանով, որի սահմաններում լուծվում են պրոլետարիատի և իմպերիալիստական բուրժուազիայի հակասությունները յուրաքանչյուր առանձին երկրում և ամբողջ կապիտալիստական աշխարհում։

Վերջապես, օբյեկտիվ և բացարձակ է գոյակցող հակադրությունների միջև հակասությունների անշեղ սրումը։ Այդ միտումը «դասակարգային պայքարն է՛լ ավելի շիկացնելու մարքսիստների ջանքերի» արդյունքը չէ, ինչպես այդ ներկայացնում են ժամանակակից կապիտալիզմի գաղափարախոսները։ Ո՛չ պատմության մատերիալիստական ըմբռնումը, ո՛չ գիտական կոմունիզմի տեսությունը չեն պարունակել մտքեր այն մասին, որ պրոլետարիատի նպատակների իրագործման համար անհրաժեշտ են արհեստական գործողություններ։ Եռանդուն ձգտելով յուրաքանչյուր կոնկրետ դեպքում օբյեկտիվ հասունացած պայմաններն օգտագործել կապիտալի տիրապետությունը հեղափոխականորեն խորտակելու համար, մեր կուսակցությունը, միաժամանակ, վճռականորեն մերկացնում է սուբյեկտիվիզմը, իրադրությունների կամայական գնահատումները, որոնք կապված են սոցիալիստական ու կապիտալիստական պետությունների միջև եղած հակասությունների լուծման հետ։

Չնայած այն բանին, որ հակասությունների նոր շարքն առանձին երկրների զարգացման անմիջական աղբյուրը չէ (յուրաքանչյուր երկրի զարգացումը պայմանավորված է կոնկրետ սիստեմի սեփական օրենքներով), նա իր առաջացման հենց սկզբից հարաճուն ներգործություն է ունենում համաշխարհային զարգացման ընթացքի և նրա միջոցով՝ ժողովուրդների պատմական բախտի վրա։ Հակադիր կարգ ունեցող երկրների հակասությունների և առանձին երկրի սոցիալական զարգացման միջև անմիջական կապի բացակայությունը նույնական չէ այդ երևույթների միջև կապի բացակայությանը։ Ընդհակառակը։ Այդպիսի կապ կա։ Նրա դերը անշեղորեն աճում է։ Եթե պրոլետարիատի և բուրժուազիայի հակասությունն առանձին կապիտալիստական երկրի զարգացման ներքին աղբյուրն է, ապա հակադիր սոցիալական կարգ ունեցող պետությունների հակասությունն իր զարգացման մեջ վերաճում է արդի դարաշրջանի հիմնական հակասության գլխավոր արտահայտության։ Հոկտեմբերով սկսված դարաշրջանի հիմնական հակասությունը ժամանակակից հասարակական և հա-



մաշխարհային զարգացման գլխավոր շարժիչ ուժն է։ Դրսևորվելով տարբեր դասակարգերի, սոցիալական խմբերի, նրանց գաղափարների ու հայացքների, նրանց ստեղծած հիմնարկների բազմազան մարտերում, նա խոր, ավելի ու ավելի որոշակի, թեև ոչ միշտ միատեսակ, ազդեցություն է գործում պայքարի ծավալման ընթացքի, արդի հասարակական կյանքի և համաշխարհային զարգացման բոլոր հակասությունների լուծման բնույթի ու ձևերի վրա։

Եթե գոյակցության առաջին էտապում, պրոլետարիատի մեծ հեղափոխությունից մինչև երկրորդ համաշխարհային պատերազմը, հակադիր սոցիալական կարգ ունեցող պետությունների փոխհարաբերությունների բնույթից հաճախ կախված էր մեկ երկրում սոցիալիզմի «լինել, թե չլինելը», ապա երկրորդ էտապում դրությունը փոխվեց։ Համաշխարհային կապիտալիստական շղթայում ճակատային ճեղքումից և պրոլետարիատի դիկտատուրան ազգայինից (մեկ երկրում գոյություն ունեցող) միջազգայինի վերաճելուց հետո երևան եկավ պատմականորեն դարն ապրած կապիտալիզմի հետագա գոյության որոշակի կախում՝ հակադիր սոցիալական կարգ ունեցող գոյակցող պետությունների փոխհարաբերությունների բնույթից, նրանց հակասությունների լուծման եղանակից։



Սոցիալիստական և կապիտալիստական պետությունների հակասությունները օբյեկտիվորեն կանխորոշում են նրանց միջև մղվող պայքարի անխուսափելիությունն ու բացարձակությունը։ Դրսևորվելով տարասեռ դասակարգերի, տարալեզու հերոսների, տարաբարո առաջնորդների նպատակային գործունեության, նրանց մշակած գաղափարների և ստեղծած հիմնարկների մեջ պայքարը, վերջին հաշվով, կախված չէ մարդկանց կամքից ու գիտակցությունից։ Ոչ ոք կամովին չի կարող հրաժարվել այդ հակադրությունների պայքարից, ինչպես նաև չի կարող այն հաջողությամբ մղել ըստ իր հայեցողության, հակառակ հասարակական և համաշխարհային զարգացման օրինաչափությունների պահանջների։ Ոչ մի «բարոյականացում» ի վիճակի չէ վերացնելու հակամարտ դասակարգերի և նրանց տիրապետությամբ ստեղծված պետությունների հակասությունները, ոչ դադարեցնելու նրանց միջև մղվող պայքարը, ոչ էլ հանգեցնելու այդ հակադրությունների հաշտեցման։

Սոցիալիստական և կապիտալիստական պետությունների միջև հակասություններով պայմանավորված պայքարը ո՛չ միայն օբյեկտիվ, այլև բացարձակ է։ Նրանում, ինչպես ամեն մի բացարձակ երևույթի մեջ, կա հարաբերականության մոմենտ։ «Բացարձակի մեջ հարաբերականության» էական դրսևորումն է հակադիր սոցիալական կարգ ունեցող պետությունների միջև հակասությունների լուծման եղանակների ու ձևերի կոնկրետությունը, որը կախված է այդ հակադրությունների գոյակցության պատմության տարբեր փուլերում դրանց զարգացման պայմանների փոփոխությունից։ Սոցիալական հակադիր կառուցվածք ունեցող պետությունների հակասությունների օբյեկտիվության և այդ հակադրությունների պայքարի բացարձակության ճանաչումը նույնական չէ հակասությունների լուծման մի եղանակի և մի ձևի բացարձակացմանը։ Եթե հակադիր սոցիալական կարգ ունեցող գոյակցող պետությունների փոխբացասումը և նրանց պայքարը միասնական են ու բացարձակ, ապա դրանց վարման եղանակներն ու ձևերը բազ-

մաղան են։ Բայց բազմազանությունն ըստ էության հանգում է հակասությունների լուծման երկու հիմնական եղանակների՝ ոչ-խաղաղ (պատերազմի միջոցով) և խաղաղ։ Դրանցից յուրաքանչյուրը տարբեր կերպ է դրսևորվում չկրկնվող պայմաններում։

Քաղաքակրթության շատ կենտրոնների փլատակները, ճակատամարտերում միլիոնավոր մարդկանց թափած արյունը՝ պատմության այդ ողբերգական, բայց ոչ անմռունչ հուշարձանները, կասկած չեն թողնում, որ պատերազմը եղել է միջպետական հակասությունների լուծման նախնական և վճռական եղանակ։ Այն աննահանջ ուղեկցել է հին դարերի, անտիկ աշխարհի, միջնադարի ու բուրժուական դարաշրջանի միջազգային հարաբերություններին։ Պատերազմը շարունակում էր մնալ հակասությունների լուծման որոշիչ եղանակը արդի դարաշրջանի առաջին էտապում։ Մեկ երկրում կատարված սոցիալիստական հեղափոխությունը, կապիտալիստական շրջապատման մեջ գտնված սոցիալիզմն անկարող եղան արմատական փոփոխություններ մտցնել միջպետական հարաբերությունների պրակտիկայում. մնալով գերակշիռ ուժ, կապիտալիզմը սանձազերծեց երկրորդ համաշխարհային պատերազմը։

Այնուամենայնիվ, արդի դարաշրջանում կատարվող անցումը կապիտալիզմից սոցիալիզմին՝ ուղեկցվում է նրանով, որ միջպետական հակասությունների լուծման խաղաղ եղանակը դուրս է մղում ոչ-խաղաղ եղանակին։ Մարդկության ամբողջ դասակարգային պատմության ընթացքում լինելով իրական, անցյալում ունենալով իր «պատմական արդարացումը», ոչ-խաղաղ եղանակը սկսեց իր անհրաժեշտությունը, գոյության իր իրավունքը կորցնել արդի աշխարհի սոցիալական կառուցվածքում կատարված խոր տեղաշարժերի ու հասարակական աշխատանքի, արտադրողական ուժերի մեջ կատարված որակական փոփոխությունների հետևանքով, որոնց զարգացման մակարդակից կախված է զենքի բնույթը, շատ դեպքերում նույնիսկ պայքարի եղանակն ու ձևերը։ Մի անհրաժեշտությանը փոխարինելու է գալիս մի ուրիշը, որը համապատասխանում է համաշխարհային զարգացման նոր էտապին և հասարակական առաջադիմության օբյեկտիվ պահանջներին։ Միջպետական հակասությունների լուծման խաղաղ եղանակը տարբեր երկրների դասակարգերի միջև մղվող պայքարի յուրահատուկ մեթոդն է։ Այդ մեթոդը բացառում է պատերազմը՝ զինված բռնությունը, բայց ոչ պետությունների միջև մղվող պայքարը։ Միայն պայքարի ծանրության կենտրոնն է փոխադրվում ստեղծարար աշխատանքի ոլորտը։ Դա է խաղաղ եղանակի էությունը։ Կապված չլինելով ավերիչ գործողությունների հետ, նա զարգանում է հասարակության ստեղծարար գործունեության պահանջներին համապատասխան և ծառայում հասարակական զարգացմանը։ Հակադիր սոցիալական կարգ ունեցող պետությունների միջև հակասությունների լուծման խաղաղ եղանակը մտցնելու և այն միջազգային հարաբերությունների մեջ հաստատելու ՍՄԿԿ պայքարի պատմական փորձը համապատասխանում է արդի դարաշրջանի զարգացման երկու էտապներին՝ երբ իմպերիալիզմի միջազգային դիկտատուրային հակադրված էր պրոլետարիատի ազգային դիկտատուրան և, երբ երկրորդ համաշխարհային պատերազմում իմպերիալիզմի պարտությունից հետո իրար հակադրվեցին միջազգային դիկտատուրաների երկու շարքերը՝ բանվոր դասակարգի միջազգային դիկտատուրան (սոցիալիստական պետությունների համաշխարհային սիստեմը) և իմպերիալիզմի միջազգային դիկտատուրան (իմպերիալիստական պետությունների համաշխար-



հային սիստեմը)։ Այդ երկու տարբեր պայմաններում մեր կուսակցությունը երկու տակտիկա իրագործեց իր խաղաղ ստրատեգիան իրականացնելու հարցում. առաջին՝ միջպետական հակասությունների լուծման խաղաղ եղանակի ներդրումը կապիտալիստական պետությունների հետ փոխհարաբերությունների պրակտիկայում, երկրորդ՝ նրա հաստատումը հանուն հակադիր սոցիալական կարգ ունեցող պետությունների խաղաղ գոյակցության ապահովման, նկատի ունենալով հասարակության կյանքից նվաճողական պատերազմները բացառելու հեռանկարը։

Մեկ երկրում պրոլետարիատի հաղթանակն արդեն հնարավոր դարձրեց միջպետական հակասությունների լուծման եղանակի հիմնավորապես նոր հարցադրումը։ Եթե կապիտալիզմի անբաժան տիրապետության պայմաններում Լենինը ժխտում էր իմպերիալիստական պատերազմը դեմոկրատիկ հաշտությամբ եզրափակելու հնարավորությունը, ապա սոցիալիստական հեղափոխությունից հետո, հակառակ դոկտրինյորների «միակողմանի, այլանդակ, մեռյալ» պատկերացումների, նա ինքն էլ հանդես եկավ դեմոկրատիկ հաշտություն կնքելու առաջարկով և հաշտության դեկրետով առաջին գործնական քայլերն արեց միջպետական հարաբերությունների լուծման նոր եղանակով հին եղանակի՝ համաշխարհային իմպերիալիստական պատերազմի եզրափակման ճանապարհին։ Դրա հետ միասին Լենինը չէր կասկածում, որ մեկ երկրում, նույնիսկ Ռուսաստանի նման հսկայական երկրում, կապիտալի տիրապետության խորտակումը պայմաններ էր ստեղծում միայն այն պայքարի սկսման համար, որը պոտենցիալ կերպով կարող է հետագայում հանգեցնել միջպետական հակասությունների լուծման ոչ-խաղաղ եղանակը խաղաղով փոխարինելուն։ Ուստի, հակադիր սոցիալական կարգ ունեցող պետությունների գոյակցության ամբողջ առաջին էտապի ընթացքում սովետական արտաքին քաղաքականությունն իր բազմազան դրսևորումներով ուղղված էր մի նպատակի՝ ապահովել «խաղաղ դադար» և որքան կարելի է երկարաձգել այն։

Հակադիր սոցիալական կարգ ունեցող պետությունների գոյակցության երկրորդ էտապում էլ ավելի ընդլայնվեցին պրոլետարական հեղափոխության խաղաղ ստրատեգիայի իրականացման հնարավորությունները։ Համաշխարհային ուժերի հարաբերակցության մեջ կատարված էական տեղաշարժերը հօգուտ սոցիալիզմի, ռեալ հնարավորություն ստեղծեցին միջպետական հակասությունների ոչ-խաղաղ եղանակը խաղաղով փոխարինելու, ժամանակակից միջազգային հարաբերություններում խաղաղությունը հաստատելու, նոր համաշխարհային պատերազմը, հասարակության կյանքից նվաճողական պատերազմները բացառելու և խաղաղ գոյակցությունն ապահովելու համար։

* * *

Հնարավորությունն իրականություն չէ։ Միջպետական հակասությունների լուծման խաղաղ եղանակի անբաժան հաստատման իրական հնարավորությունն ինքնըստինքյան սոցիալիստական և կապիտալիստական պետությունների խաղաղ գոյակցության երաշխիք չէ։ Այդ հնարավորությունն իրացնելու համար անհրաժեշտ է վճռական և հետևողական պայքար։

Մեր ժամանակի հիմնական հարցի՝ պատերազմի և խաղաղության, համաշխարհային ջերմամիջուկային պատերազմի կանխման, սոցիալիստական և

կապիտալիստական պետությունների խաղաղ գոյակցության հնարավորությունն իրականության վերածելու հարցի լուծման կապակցությամբ փաստորեն շարժման մեջ է մտնում ամբողջ մարդկությունը: Կապիտալիզմի խորացող անկայունությունը, ինչպես ընդգծվում է կուսակցության XXIII համագումարի որոշումներում, ուժեղացնելով «իմպերիալիզմի ավանտյուրիզմը, նրա վտանգավորությունը ժողովուրդների համար, խաղաղության և սոցիալական առաջադիմության գործի համար», քաղաքական նիրհից հանում և պայքարի հորձանուտն է ներքաշում նաև նրանց, ովքեր դեռ վերջերս համաշխարհային քաղաքականության մայրուղուց հեռու էին քաշված: Համաշխարհային պատմության մեջ առաջին անգամ հակադիր սոցիալական կարգ ունեցող պետությունների խաղաղ գոյակցության համար ոտքի են ելել հարյուր միլիոնավոր մարդիկ, որոնք կազմակերպված են պետությունների մեջ, սոցիալիստական պետությունների համաշխարհային սիստեմի, կապիտալիստական երկրների բանվոր դասակարգի քաղաքական կուսակցությունների, դեմոկրատական միավորումների, հակագաղութային, ազգային-ազատագրական շարժումների մեջ, պաշտպանելով իրենց կենսական շահերը, օբյեկտիվորեն կոնսոլիդացվելով համաշխարհային ջերմամիջուկային պատերազմի սպառնալիքի դեմ մղվող պայքարում: Բոլոր ժողովուրդների պատմական բախտի համար վճռական ու որոշիչ այս կետում առավել ակներևությամբ են միահյուսվում մեր ժամանակի ամենահեղափոխական հասարակական ուժի՝ բանվոր դասակարգի, նրա պետական կազմակերպության շահերը ամբողջ մարդկության կենսական շահերի հետ: Հակվելով խաղաղության և խաղաղ գոյակցության գաղափարներով, որոնք մշակվել են Լենինի աշխատություններում և կուսակցության ծրագրային փաստաթղթերում, բազմամիլիոն մասսաները խաղաղության պայքարի քուրայում դառնում են պատերազմի կանխման էական գործոն:

Ելնելով հեղափոխությունների դարաշրջանում ժողովրդական մասսաների դերի անշեղ աճի վերաբերյալ Մարքսի ուսմունքից, մեր կուսակցությունը, ժողովուրդներին պարզաբանելով պատերազմի սպառնալիքով հղի իմպերիալիստական քաղաքականության ամեն մի կոնկրետ ակտի գաղտնիքները, ձգտում է լայն մասսաների կամքն ու գործողությունները որքան կարելի է ակտիվորեն ի սպաս դնել խաղաղ գոյակցության պայքարին: «Հանցավոր նպատակներ» հետապնդող՝ կապիտալի միջազգային քաղաքականության դեմ ուղղված պայքարի այս ձևը պատգամել է Մարքսը, որը բանվոր դասակարգին կոչ էր անում «ինքնուրույնաբար տիրապետել քաղաքականության գաղտնիքներին, հետևել իրենց կառավարությունների դիվանագիտական գործունեությանը և անհրաժեշտության դեպքում հակազդել նրան իր տրամադրության տակ եղած բոլոր միջոցներով. իսկ այդ գործունեությունը կանխելու անհնարինության դեպքում՝ միանալ՝ այն միաժամանակ մերկացնելու համար...»: Կես դար անց, կապիտալիզմի ընդհանուր ճգնաժամի սկսվելու նախօրյակին Լենինը, զարգացնելով Մարքսի մտքերը միջազգային քաղաքականության մեջ բանվոր դասակարգի պարտականությունների մասին, ընդգծեց ո՛չ միայն քաղաքականությանը նրա ակտիվ միջամտության անհրաժեշտությունը, այլև բուրժուա-դեմոկրատական ազատություններն իմպերիալիզմի քաղաքականության հակաժողովրդական էության մերկացման համար օգտագործելու անհրաժեշտությունը: «Որքան երկրում շատ լինի քաղաքական ազատություն,— գրել է Լենինը,— որքան ամուր ու դեմոկրատիկ լինեն ներկայացուցչական հիմնարկները, այնքան ժողովրդա-



կան մասսաների համար հեշտ կլինի հասկանալ կուսակցական պայքարը և սովորել քաղաքականություն, այսինքն՝ մերկացնել խաբեությունը և հասնել ճշմարտության»:

Իմպերիալիզմի միջազգային քաղաքականության նկատմամբ բանվոր դասակարգի վերաբերմունքի մասին մարքսիզմ-լենինիզմի կլասիկների այդ անկյունաքարային մտքերը բոլշևիկների կուսակցությունը վճռականորեն կենսագործում էր երկու համաշխարհային պատերազմների միջև ընկած ժամանակաշրջանում: Դրա հետ մեկտեղ նա պատրանքներ չէր տածում այն կոնկրետ պայմաններում ժողովրդական մասսաների հնարավորությունների նկատմամբ:

Իմպերիալիզմի, հատկապես ԱՄՆ-ի միջազգային քաղաքականության ագրեսիվ էության մերկացման խնդիրը նոր նշանակություն ձեռք բերեց մարդկության բախտի համար՝ երկրորդ համաշխարհային պատերազմի ավարտից ի վեր, համաշխարհային հեղափոխական պրոցեսի զարգացման նոր էտապում: Դա տեղի ունեցավ այն բանի շնորհիվ, որ իմպերիալիզմի միջազգային քաղաքականության բուն բովանդակության մեջ հեղաշրջում կատարվեց առանձին մոնոպոլիաների կամ մոնոպոլիաների խմբերի շահերին համապատասխանող մասնավոր խնդիրների լուծումից դեպի «ռեակցիոն բռնության» միջոցով համաշխարհային հեղափոխական հոսանքի, նրա բոլոր «շիթերի» և «գույների» հետագա ծավալման կանխման հիմնական խնդրի լուծումը: Սա առաջին: Երկրորդ. իմպերիալիզմի ագրեսիվ քաղաքականության մերկացումը նոր նշանակություն է ձեռք բերել նաև պատերազմ մղելու նոր միջոցների առկայության շնորհիվ, որոնք սպառնում են ընդհանուր աղետով:

Խաղաղ գոյակցության հնարավորության իրականացման համար արտաքին քաղաքական պայքարի մյուս կարևոր ձևը իմպերիալիզմին հարկադրելն է՝ ձեռնպահ մնալու պատերազմից: Դա պայքարի նոր ձև է, որի պատմությունը սկսվում է երկրորդ համաշխարհային պատերազմի ավարտից: Եթե խաղաղությանը և միջազգային անվտանգությանը ուղղակի կամ անուղղակի սպառնալիք ներկայացնող իմպերիալիստական տերությունների ամեն մի առանձին ակցիայի մերկացումը նպատակ ունի, նախ, բացառել պատերազմի գաղտնի նախապատրաստումն ու սանձազերծումը և, երկրորդ, մոբիլիզացնելով հասարակական կարծիքը կոնկրետ հարցի լուծման շուրջ, մասսաներին տվյալ երկրում ոտքի հանել հակամիլիտարիստական պայքարի, ապա արտաքին քաղաքական գործունեության այդ ձևի վերջնական նպատակը ագրեսիայի կանխումն է՝ իմպերիալիստական տերություններին հարկադրելով խաղաղ մնալու, ձեռնպահ լինելու իմպերիալիստական բռնությունից: Երկրորդ համաշխարհային պատերազմից հետո միջազգային հարաբերությունների պատմական փորձը կասկած չի թողնում, որ ռեալ հող կա պայքարի այդ ձևը կիրառելու գոյակցության ներկա էտապում, երբ իմպերիալիզմի քայքայված ուժերին հակադրվում է սոցիալիզմի աճող հզորությունը: Հենց դա էլ ՍՄԿԿ համար հնարավոր դարձրեց իր ծրագրում նշելու, որ առաջին անգամ «պատմության մեջ ստեղծվել է այնպիսի իրադրություն, որի ժամանակ ոչ միայն մեծ, այլև փոքր պետությունները, ինքնուրույն զարգացման ուղին թևակոխած երկրները, խաղաղության ձգտող բոլոր պետությունները, անկախ իրենց ուժից, հնարավորություն ունեն վարել ինքնուրույն արտաքին քաղաքական կուրս»:

Որ սոցիալիզմը կարող է իմպերիալիստական տերություններին ստիպել

ձեռնպահ մնալու բռնությունից և հրաժարվելու բռնություն գործադրելուց, դրա ապացույցն են հետպատերազմյան միջազգային հարաբերությունների այնպիսի ուղենիշներ, ինչպիսիք են արևմտյան տերությունների հաշտության պայմանագրերի հարկադրյալ ստորագրումը (1947 թ. փետրվար) հիտլերյան Գերմանիայի նախկին դաշնակիցների (Ռումինիայի, Բուլղարիայի, Հունգարիայի, Իտալիայի և Ֆինլանդիայի) հետ, որոնք չսահմանափակեցին այդ երկրների ազգային անկախությունն ու պետական սուվերենությունը, Կորեայում սանձազերծված պատերազմի դադարեցումը (1953 թ.), Հնդկաչինում խաղաղության վերահաստատումը (1954 թ.), Կուբայի դեմ զինված ագրեսիայի կանխումը (1962 թ. աշուն), ՄԱԿ-ի գլխավոր ասամբլեայի 20-րդ նստաշրջանում (1965 թ. նոյեմբեր) սովետական առաջարկների ընդունումը «Պետությունների ներքին գործերին միջամտություն թույլ չտալու, նրանց անկախությունն ու սուվերենությունը պաշտպանելու մասին», «Միջուկային զենքը չտարածելու մասին» և այլ ակցիաներ:

Բայց պատմության փորձը կասկած չի թողնում, որ միջպետական հակասությունների լուծման, հակադիր սոցիալական կարգ ունեցող պետությունների խաղաղ գոյակցության հնարավորության իրականացման խաղաղ եղանակի դրսևորման այդ նոր ձևը ծնունդ է սոցիալիզմի հզորության, որը իմպերիալիզմին հարկադրում է խաղաղ մնալ: Այստեղից հետևում է, նախ, որ էկոնոմիկան ոչ միայն հակադիր սոցիալական սիստեմների մրցության, այլև այն պայքարի գլխավոր ասպարեզն է, որ նրանք մղում են միջպետական հակասությունների լուծման հակադիր եղանակների՝ խաղաղ և ոչ-խաղաղ (պատերազմի միջոցով) եղանակների համար և, երկրորդ, որ սովետական պետության տնտեսական ու դրա հիման վրա պաշտպանական հզորության անշեղ բազմապատկումը մի անհրաժեշտություն է, որը թելադրված է միջազգային անվտանգության, հակադիր սոցիալական կարգ ունեցող պետությունների խաղաղ գոյակցության հնարավորության իրականացման շահերով:

Վերջապես, միջպետական հակասությունների լուծման խաղաղ եղանակի մի ձևն էլ սովետական պետության պայքարն է խաղաղ գոյակցության հասնելու պատրաստ բոլոր ուժերի և պետությունների հետ համագործակցելու համար: Սոցիալիստական և կապիտալիստական պետությունների միջև մղվող պայքարի օբյեկտիվությունն ու բացարձակությունը չի բացառում նրանց համագործակցությունը: Այդ հակադրությունների համագործակցության հնարավորությունն ու անհրաժեշտությունը չի մերժվում ո՛չ հասարակական զարգացման մատերիալիստական տեսությամբ, ո՛չ էլ պատմական փորձով:

Սոցիալիստական և կապիտալիստական պետությունների համագործակցության համար մղվող պայքարի տեսական հիմքը կազմում են մատերիալիստական դիալեկտիկայի դրույթներն այն մասին, որ հնարավոր է, իսկ որոշակի պայմաններում նաև անհրաժեշտ գիտակցաբար միացնել հակադրությունները և դրանք այնպես միացնել, որ ի վերջո, Լենինի խոսքերով ասած, ստացվի «սիմֆոնիա», և ոչ թե «կակաֆոնիա»: Ելնելով հակադրությունները գիտակցաբար միացնելու հնարավորության ընդունումից, սովետական արտաքին քաղաքականությունը ձգտում է համագործակցել բոլոր ուժերի և պետությունների հետ՝ լուծելու նախ միջազգային կյանքի սկզբունքային պրոբլեմները՝ Վիետնամի դեմ Միացյալ Նահանգների ագրեսիայի դադարեցումը և այդ երկրից ինտերվենտների բոլոր զորքերի դուրսբերումը. Եվրոպայի անվտանգության



ապահովումը գերմանական հարցի խաղաղ կարգավորման միջոցով. զինաթափման և միջուկային զենքի արգելման հասնելը:

Հակադիր սոցիալական կարգ ունեցող պետությունների խաղաղ գոյակցությունն ապահովելու պայքարում Սովետական Միությունը օգտագործում է հակադրությունների միավորման նաև այնպիսի ձև, ինչպիսին է սոցիալիստական ու կապիտալիստական պետությունների միջև հակասությունների գիտակցաբար սրմանը հակազդելը և դրանց լուծման ծայրահեղ ձևերի կիրառումից գիտակցաբար ձեռնպահ մնալը. կոմպրոմիսների որոնումները, որոնց շնորհիվ, հակառակ «ձախ» հեղափոխական շաղակրատների պատկերացումների, հեղափոխական դասակարգի իսկական հեղափոխական կուսակցությունները պետք է կարողանան, ինչպես սովորեցնում էր Լենինը, պահպանել, ամրապնդել, կոփել, զարգացնել բանվոր դասակարգի և նրա կազմակերպված ավանգարդի՝ կոմունիստական կուսակցության հեղափոխական տակտիկան ու կազմակերպությունը, հեղափոխական գիտակցությունը, վճռականությունը, պատրաստվածությունը: Պատմության մեջ քիչ օրինակներ չկան, երբ կոմպրոմիսները փայլուն կերպով օգտագործվել են բանվոր դասակարգի հեղափոխական պայքարի շահերի համար:

Ժամանակակից միջազգային հարաբերություններում ավելի ու ավելի ակտիվորեն է կիրառվում հակադրությունների նաև այնպիսի գիտակցական միասնություն, ինչպիսիք են տնտեսական, գիտական և կուլտուրական կապերը հակադիր սոցիալական կարգ ունեցող պետությունների միջև: Սովետական արտաքին քաղաքականության պայքարի այդ ուղղության ըստ ամենայնի զարգացման անհրաժեշտությունը, նշվեց կուսակցության XXIII համագումարում Կենտկոմի հաշվետվության մեջ. «...Մենք կողմնակից ենք, որ այդ հարաբերությունները (ՍՍՀՄ և կապիտալիստական երկրների—Բ. Մ.) լինեն ոչ միայն խաղաղ, այլև իրենց մեջ ընդգրկեն փոխադարձաբար շահավետ առավել լայն կապեր էկոնոմիկայի, գիտության, կուլտուրայի ոլորտներում»:

Այլ կերպ ասած, ժամանակակից դարաշրջանը՝ պատմական մեծագործությունների ժամանակը բնութագրվում է ո՛չ միայն սոցիալական և ազգային հակամարտությունների դարավոր ամրոցների խորտակմամբ, այլև սոցիալիզմի և դեմոկրատիայի միավորվող ուժերի վճռական պայքարով այն բանի համար, որ, Մարքսի խոսքերով ասած՝ «Բարոյականության և արդարության հասարակ օրենքները, որոնցով իրենց փոխհարաբերություններում պետք է առաջնորդվեն մասնավոր անձինք, բարձրագույն օրենքներ դառնան նաև ժողովուրդների հարաբերություններում»:



# ԱՐԴՅՈՒՆԱԲԵՐԱԿԱՆ ՁԵՌՆԱՐԿՈՒԹՅՈՒՆԸ–ԿՈԼԵԿՏԻՎՆ ՈՒ ԱՆՀԱՏԸ

Մ. ՄԻՆԱՍՅԱՆ

*Կոմունիզմի շինարարության բազմապիսի խնդիրների կենսագործման վճռական պայմանը սովետական մարդկանց աշխատանքային գործունեությունն է։ Չի եղել հասարակական զարգացման մեկ այլ ժամանակաշրջան, երբ ժողովրդական մասսաները դրսևորեին աշխատանքային այնպիսի ակտիվություն, լուծեին այնպիսի վիթխարի խնդիրներ, ինչպես նոր հասարակարգի կառուցման ներկա էտապում։*

*Պրակտիկան հաստատում է մարքսիստական դրույթն այն մասին, որ որքան ավելի լայն և խոր է հասարակության մեջ տեղի ունեցող հեղաշրջումը, այնքան ավելի առվար պիտի լինի այն մարդկանց թիվը, որոնք կատարում են այդ հեղաշրջումը (տե՛ս Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 28, էջ 544)։*

*Անհրաժեշտ է ընդգծել, որ նոր հասարակարգի կառուցման գործում ժողովրդական մասսաների մեջ առաջատար դերը պատկանում է բանվոր դասակարգին։ Կոմունիզմի կառուցումը բանվոր դասակարգի գլխավոր նպատակն է, նրա հիմնական խնդիրը։ Դեռևս իրենց գործունեության վաղ շրջանում Մարքսն ու Էնգելսը գրում էին, որ կոմունիզմը բանվոր դասակարգի համար հանդիսանում է «ոչ թե իդեալ, որի հետ պետք է համակերպվի իրականությունը», այլ «իրական շարժում, որը ոչնչացնում է ներկա կացությունը», որ «կոմունիզմը պրոլետարիատի գործն է»* (К. Маркс и Ф. Энгельс, Соч., т. 3, стр. 34, 35)։

*Մեր օրերում ավելի ու ավելի նշանակալից է դառնում հասարակության համար բանվոր դասակարգի կատարած աշխատանքը, որը վերափոխում է հասարակությունը, մարդուն, նյութական և հոգևոր հարստություն ստեղծում ժողովրդի համար։ Եվ իրոք, սոցիալիստական արդյունաբերական ձեռնարկություններում բանվորների կատարած աշխատանքի ուսումնասիրությունը ցույց է տալիս, որ այդ պրոցեսում լուծվում են նոր հասարակարգի կառուցման համար վճռական նշանակություն ունեցող այնպիսի խնդիրներ, ինչպիսիք են կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծումը, կոմունիստական հասարակական հարաբերությունների ձևավորումը, սովետական մարդու բազմակողմանի զարգացումը։*

*Սոցիալիստական արդյունաբերական ձեռնարկությունը հասարակության*



*այն առաջավոր օղակն է, սոցիալ-տնտեսական այն բեղմնավոր բջիջը, ուր ձևավորվում են կոմունիստական հասարակարգի բնորոշ հատկանիշները մարմնավորող կոլեկտիվն ու անհատը։ Դա է ապացուցում Երևանի մի շարք արդյունաբերական ձեռնարկությունների, այդ թվում Ս. Մ. Կիրովի անվան սինթետիկ կաուչուկի, Վ. Ի. Լենինի անվան էլեկտրամեքենաշինական, էլեկտրալամպերի, էլեկտրատեխնիկական և մի շարք այլ գործարանների կոլեկտիվների աշխատանքի ու կյանքի ուսումնասիրությունը։*

*Կիրովի անվան գործարանը, որը հանրապետության քիմիական արդյունաբերության առաջնեկն է, Սովետական Միությունում միշտ էլ հայտնի է որպես առաջնակարգ տեխնիկայով զինված ձեռնարկություն։ Գործարանի բոլոր արտադրամասերում հին տեխնիկան փոխարինվում է նորով, անընդհատ կատարելագործվում են տեխնոլոգիական պրոցեսները, իրականացվում է արտադրական պրոցեսների կոմպլեքսային մեքենայացում և ավտոմատացում։ Ձեռնարկությունում ծավալվել է ռացիոնալիզատորական և գյուտարարական շարժումը։ Այստեղ յուրաքանչյուր չորրորդ աշխատողը նորարար է, ռացիոնալիզատոր և գյուտարար։ Առաջավոր փորձի մասսայականացման համար ամեն տարի ստեղծվում են նպատակային խմբակներ, որտեղ ընդգրկվում են ավելի քան 500 բանվոր։*

*Կիրովցիների աշխատանքում և կյանքում օրինաչափություն է հայրենասիրական նախաձեռնություններով սիստեմատիկաբար հանդես գալը։ Գործարանը հանրապետության այն առաջին ձեռնարկություններից է, որտեղ ստեղծվեցին կոնստրուկտորական, տեխնոլոգիական, տնտեսական վերլուծության, տեխնիկական ինֆորմացիայի, աշխատանքի նորմավորման հասարակական հիմունքներով գործող բյուրոներ ու խորհուրդներ։*

*Կիրովի անվան գործարանի կոլեկտիվի ձեռք բերած հաջողությունների գրավականը բարձր կազմակերպվածությունն է, գիտակցականությունը, կուլտուրան, կոլեկտիվի անդամների ճնշող մեծամասնության բարոյական մաքրությունը,* այն, որ յուրաքանչյուր աշխատավորի համար թանկ է կոլեկտիվի պատիվը և կոլեկտիվի մշտական ուշադրության կենտրոնում է յուրաքանչյուր աշխատավորի կյանքն ու աշխատանքը։ *Գործարանում ամենօրյա, սիստեմատիկ աշխատանք է կատարվում աշխատողների քաղաքական, տեխնիկական, տնտեսական գիտելիքների հարստացման, նրանց բարոյական և էսթետիկական դաստիարակության ուղղությամբ։ Գործարանն ունի կադրերի պատրաստման և նրանց որակավորման ամենամյա պլան։ Կոլեկտիվն իր առջև նպատակ է դրել հասնել այն բանին, որ մոտակա մեկ-երկու տարիներին յուրաքանչյուր երկրորդ բանվորը ստանա միջնակարգ կրթություն։*

*Գործարանում մասսայական բնույթ է կրում հարակից մասնագիտություններին տիրապետելու համար ծավալված շարժումը։ Հիմնական մասնագիտությունների բանվորների 50 տոկոսից ավելին ունի երկու և ավելի մասնագիտություն։*

*Կոլեկտիվի մշտական ուշադրության կենտրոնում է նաև բանվորների և ծառայողների ընտանիքը, երեխաների ուսման ու դաստիարակության գործը։ Արհմիութենական կազմակերպությանը կից ստեղծված դպրոցական հանձնաժողովը հաշիվ է պահանջում այն աշխատողներից, որոնք պատշաճ ուշադրություն չեն նվիրում իրենց երեխաների ուսմանն ու դաստիարակությանը, շատ դեպքերում կազմակերպում է անհրաժեշտ օգնություն։*

Կիրովի անվան սինթետիկ կաուչուկի, Վ. Ի. Լենինի անվան էլեկտրամեքենաշինական, էլեկտրատեխնիկական, էլեկտրալամպերի և մի շարք այլ գործարանների կոլեկտիվների աշխատանքի ու կյանքի ուսումնասիրությունը ցույց է տալիս, որ անհատի և հասարակության շաղկապող կարևոր օղակը հանդիսացող սոցիալիստական արդյունաբերական ձեռնարկություններում տեղի է ունենում ինչպես կոլեկտիվի, այնպես էլ անհատի բազմակողմանի զարգացման պրոցես։ Անընդհատ կատարելագործվում են անհատի և կոլեկտիվի փոխհարաբերությունները։

Սոցիալիստական առաջավոր արդյունաբերական ձեռնարկություններում ակնառու է սոցիալիստական աշխատանքի կատարելագործումը, այն միշտապես հարստանում է անհատական և կոլեկտիվ ստեղծագործության տարրերով։ Աշխատանքի պրոցեսում կատարելագործվում է նաև աշխատավորը։ Աշխատանքը դառնում է անհատին կոմունիզմի ոգով վերափոխելու հասարակական նյութական հիմքը։ «Մարդիկ իրենց նորացնում են նույն չափով,— գրում է Մարքսը,—ինչ չափով նրանք նորացնում են հարստության այն աշխարհը, որն իրենք ստեղծում են» («Из неопубликованных рукописей К. Маркса», «Большевик», 1939, № 11—12, стр. 68)։

Սոցիալիստական հասարակարգում աշխատանքի հասարակական բնույթը բարձրանում է նախկինում չտեսնված մի նոր աստիճանի, ընդ որում սոցիալիստական արտադրահարաբերությունների կատարելագործման շնորհիվ աշխատանքում բանվորի անձնական նկատառումներն ավելի են հարստանում հասարակական բովանդակությամբ։ Խորանում է աշխատանքային պարտք հասկացողությունն ու դրա ըմբռնումը։ Ընդ որում, այդ պարտքը գնալով ավելի լրիվ է համընկնում բանվորի ներքին պահանջմունքի հետ։

Այսպիսով, աշխատանքի նկատմամբ բանվորի նոր վերաբերմունքը բնորոշվում է սոցիալական պայմաններով, կոլեկտիվում և կոլեկտիվից դուրս գոյություն ունեցող արտադրական, հասարակական և այլ կապերի ու հարաբերությունների բնույթով։

Արդյունաբերական առաջավոր ձեռնարկություններում կոլեկտիվի ամենօրյա ու սիստեմատիկ ներգործության շնորհիվ բարձրանում է անհատի քննադատական ինքնագիտակցությունը։ Աշխատանքի լավագույն կազմակերպումն ու բարձր կարգապահությունը կոլեկտիվներին հնարավորություն են ընձեռում օգնելու, որպեսզի յուրաքանչյուր աշխատավոր գտնի իր տեղը կոմունիստական շինարարության համաժողովրդական պայքարում, մարդկանց դաստիարակելու հասարակական շահերի անտեսման նկատմամբ անհանդուրժողականության ոգով։

Անհատի և կոլեկտիվի միջև ներդաշնակ փոխհարաբերությունների ստեղծման գործում կարևոր նշանակություն ունի նյութական և բարոյական խթանների ճիշտ զուգակցումը, բաշխման սոցիալիստական սկզբունքի հետևողական կիրառումը։ Անհրաժեշտ է նշել, որ մեր առաջավոր ձեռնարկություններում անձնական նյութական շահագրգռվածությունը հիմնականում ճիշտ է զուգակցվում կոլեկտիվ նյութական շահագրգռվածության հետ, որը խոշոր դեր է կատարում կոլեկտիվի աճման գործում. Նյութական ճիշտ խթանումը ամուր հիմք է դառնում բարոյական փոխհարաբերությունների զարգացման համար։ Արդյունաբերական առաջավոր ձեռնարկությունների կոլեկտիվները ամեն կերպ ձգտում են անհատներին օժտել բարոյական այնպիսի բարձր հատկա-



նիշներով, ինչպիսիք են կոլեկտիվիզմը, ընկերական փոխօգնությունը, որոնք նոր հնարավորություններ են ստեղծում յուրաքանչյուր աշխատավորի տաղանդի և ունակությունների զարգացման համար։ Բարեկամության զգացումն ու փոխադարձ հարգանքը ստեղծում են ստեղծագործական աշխատանքի առողջ մթնոլորտ, բարձր տրամադրություն։

Աշխատավորների միջև նման հարաբերությունների անհրաժեշտությունը թելադրված է նաև ժամանակակից արտադրությամբ։ Արտադրության կոմպլեքսային մեքենայացման և ավտոմատացման դեպքում աշխատանքի և արտադրության կազմակերպման պայմաններն այնպիսիք են, որոնք ավելի ու ավելի մեծ չափերով են համաձայնեցված աշխատանք պահանջում։ Եթե ոչ բարդ հաստոցը սպասարկում էր յուրաքանչյուր բանվորն առանձին, ապա ժամանակակից ավտոմատ գծերի աշխատանքն աներևակայելի է առանց ավտոմատ գծի, արտադրամասի բոլոր աշխատողների համաձայնեցված ջանքերի։ Սոցիալիզմի պայմաններում այստեղ առանձնահատուկն այն է, որ ինչպես աշխատանքում ու արտադրության մեջ, այնպես էլ նրանից դուրս հիմնականում համընկնում են անհատի և կոլեկտիվի, ամբողջ հասարակության նպատակները, շահերը։

Ասվածից ամենևին էլ չի հետևում, թե այս բնագավառում մեզ մոտ հակասություններ չկան, թե արտադրության պրոցեսում կոլեկտիվի և անհատի շահերը հար և ամենուր համընկնում են։ Նշենք, որ դեռ Լենինն էր ասում, թե բնության, ինչպես և հասարակության մեջ լիակատար համընկնում երբեք չի լինում։ Այս դրույթը կարելի է կիրառել նաև արտադրության պրոցեսում կոլեկտիվի և անհատի շահերի փոխհարաբերությունների նկատմամբ։ Սոցիալիստական շինարարության պրակտիկան ցույց է տվել, օրինակ, որ հակասություն կա անհատի ունակությունների և դրանք կոլեկտիվին, հասարակությանը ծառայեցնելու համար ընձեռված ռեալ հնարավորությունների միջև։ Աշխատանքային այն պայմանները, որոնցում աշխատում է մարդը, հաճախ չեն համապատասխանում նրա ունակություններին, նրա պոտենցիալ հնարավորություններին, նրա ձգտումներին, ցանկություններին։ Հասկանալի է, որ նման վիճակը չի կարող նպաստել աշխատանքի ազդակների զարգացմանը, թուլացնում է աշխատավորի նախաձեռնությունը, խոչընդոտում մարդկանց միջև նոր հարաբերությունների ձևավորմանը։ Սոցիալիզմի առավելությունն էլ այն է, որ նա ներքուստ պարունակում է այդ հակասությունը հաղթահարելու հնարավորություն։ Օգտագործելով սոցիալիզմի ընձեռած այդ հնարավորությունը, աշխատանքային կոլեկտիվը ձգտում է հաղթահարել այդ հակասությունը մի կողմից՝ արտադրության տեխնիկան կատարելագործելու, մյուս կողմից՝ աշխատավորների կրթությունն ու որակավորումը բարձրացնելու, նրանց համար աշխատանքի մի տեսակից մյուսին անցնելու իրական հնարավորություն ստեղծելու միջոցով։

Արդյունաբերական ձեռնարկություններում անհատի և կոլեկտիվի շահերի, նրանց փոխհարաբերությունների ներդաշնակ զարգացումն իր արտահայտությունն է գտել ռացիոնալիզատորների և գյուտարարների շարժման մեջ, որը գնալով լայն ծավալ է ընդունում և մեծապես նպաստում արտադրության կատարելագործմանն ու արդյունավետության բարձրացմանը։

Այդ մասին է վկայում Երևանի Վ. Ի. Լենինի անվան էլեկտրամեքենաշինական գործարանում ռացիոնալիզատորական և գյուտարարական առաջար-

կությունների քանակական անընդհատ աճը և տարեկան պայմանական խնայողության բարձրացումը։

| Տարիներ | Ռացիոնալիզատորների և գյուտարարների թիվը | Ստացված առաջարկությունների թիվը | Ներդրված առաջարկությունների թիվը | Ստացվող տարեկան պայմանական օգուտը (հազ. ռուբ.) |
|---|---|---|---|---|
| 1959 | 401 | 820 | 354 | 372,0 |
| 1962 | 494 | 1041 | 454 | 631,1 |
| 1965 | 582 | 1177 | 609 | 680.75 |

Շարժումը մեծապես նպաստում է, որպեսզի կոլեկտիվի ամենօրյա աջակցությամբ ավելի շեշտված դառնան բանվորի ստեղծագործությունը, ինքնուրույնությունն ու ինքնագործունեությունը։

Ուսումնասիրությունները մեզ բերում են այն համոզման, որ անկախ նրանից, թե ռացիոնալիզատորական առաջարկությունն ով է ներկայացնում՝ այն հիմնականում կոլեկտիվ աշխատանքի արգասիք է։

Հիմնականում նյութական բարիքների արտադրության պրոցեսում է բանվորի վարքագծում ակներև դառնում նրա կոլեկտիվիստական հոգեբանությունը։ Կոլեկտիվիզմը շատ-շատերի համար դառնում է ո՛չ միայն կարևորագույն հատկանիշ, այլև վարքագծի նորմա։ Դրա մեջ իր արտահայտությունն է գտնում հասարակության նկատմամբ անհատի բարոյական վերաբերմունքը և, ընդհակառակը։ Բանվորն զգում է կոլեկտիվի ուժն ու պաշտպանությունը, նրա մեջ հավատ է ներարկվում կոլեկտիվի և սեփական ուժերի նկատմամբ, որը բազմապատկում է նրա աշխատանքային եռանդը։ «Անհատը միայն կոլեկտիվում է ստանում այն միջոցները,— գրում են Մարքսն ու Էնգելսը Գերմանական իդեոլոգիայում,— որոնք նրան իր ձիրքերի բազմակողմանի զարգացման հնարավորություններ են ընձեռում» (Соч. т. 3, стр. 75)։

Աշխատանքի արտադրողականության բարձրացման, արտադրության զարգացման վրա արդյունաբերական ձեռնարկություններում անհատի և կոլեկտիվի միջև ստեղծված նոր փոխհարաբերությունների վճռական ազդեցությունն իր դրսևորումն է գտել այն անկետային հարցման արդյունքների մեջ, որը մեր կողմից անցկացվել է Երևանի էլեկտրատեխնիկական և Ջարքախի սարքաշինական գործարանների բանվորների շրջանում։ Հարցերին պատասխանող բանվորների 86,2 տոկոսը կարևոր նշանակություն տալով աշխատավարձին, իրենց պատասխաններում միաժամանակ մեծ տեղ են հատկացրել կոլեկտիվ աշխատանքում հոգեկան բավարարություն ստանալուն, հասարակության համար կատարած գործին, աշխատանքի կազմակերպման ու անվտանգության պահպանման հարցերին, ադմինիստրացիայի, կոլեկտիվի վերաբերմունքին։

Այս տեսակետից բոլորովին հակառակ պատկեր գոյություն ունի կապիտալիստական հասարակարգում։ Բուրժուազիան և նրա գաղափարական սպասարկուները այսօր չեն կարող չնկատել, որ բանվորին պարտադրված արտադրական պրոցեսը նրան ոչ միայն չի մղում ստեղծագործական աշխատանքի, այլ, ընդհակառակը, ճնշում է նրան։ Բուրժուական գաղափարախոսները լավ են հասկանում, որ ներկայումս բանվորի աշխատունակությունը, անձնական



պատասխանատվությունը, արտադրական կարգապահությունը շատ բանով կախված են կոլեկտիվում ստեղծված աշխատանքային մթնոլորտից, բանվորների և կապիտալիստների միջև իրականում գոյություն ունեցող փոխհարաբերություններից, աշխատանքի պրոցեսում նրանց շահագրգռվածությունից։ Նրանք միաժամանակ ճգնում են քողարկել դրսևորվող սուր հակասությունները, ստեղծել աշխատանքի և կապիտալի միջև հոգեբանական ընդհանրության պատրանք։ «Այժմ գոյություն չունի ավելի նշանակալից և ավելի անհրաժեշտ պրոբլեմ, քան բանվորներին և ղեկավարությանը արդյունավետ միավորող հարաբերությունների հաստատումը»,— գրում է բուրժուական սոցիոլոգ և ձեռնարկատեր Ջոնսոնը։

Բուրժուազիայի գաղափարախոսները շրջանցելով սոցիալ-տնտեսական պայմանները, այս պրոբլեմը փորձում են լուծել բանվորի հոգեբանության, գիտակցության, նրա զգացմունքների վրա ազդելով։ Նրանք քարոզում են, այսպես կոչված, դասակարգային համագործակցության, կապիտալի և բանվորի շահերի ընդհանրության գաղափարները։ Հենց այս նպատակի իրականացման համար էլ ստեղծվել է «մարդկային հարաբերությունների դոկտրինան»։ Այս տեսության հեղինակները ձգտում են բանվորի դասակարգային հոգեբանությունը խեղող, նրան դիմազրկող նոր ձևերի ու մեթոդների մշակումով և դրանց իրականացումով բանվորի կյանքը կարգավորել ոչ միայն աշխատանքի, այլև հանգստի ժամանակ, բարեկամական դարձնել բանվորների և ադմինիստրացիայի փոխհարաբերությունները և դրանով ստեղծել այն պատրանքը, որ բանվորի աշխատանքն ազատ է։ Այս նույն նպատակն է հետապնդում նաև «աշխատանքի հումանիզացիայի» տեսությունը։

Ցանկանալով իր ծառայությունը մատուցել բանվորների և կապիտալիստների միջև դասակարգային երևութական համագործակցություն ստեղծելու գործին, ձգտելով քողարկել նրանց միջև գոյություն ունեցող դասակարգային խոր հակասությունները, ամերիկյան հայտնի բուրժուական փիլիսոփա Արթուր Շլեզինգերն առանց երկբայելու գրում է. «Ես կառաջարկեի մեր վեճերից դուրս մղել «կապիտալիզմ» և «սոցիալիզմ» տերմինները։ Այդ բառերը վերածվել են անչափ մշուշապատ հասկացողությունների։ Դրանք վերաբերում են դեմագոգիայի բնագավառին և ոչ թե անալիզի»։

Խոսելով աշխատանքի ու կոլեկտիվի նկատմամբ անհատի նոր վերաբերմունքի մասին, մենք չենք կարող անտեսել նաև այն հանգամանքը, որ մեզ մոտ դեռևս առանձին մարդիկ նյութական շահագրգռվածության սկզբունքի խեղաթյուրման, գիտակցության մեջ կապիտալիզմի մնացուկների առկայության, ձեռնարկության ադմինիստրացիայի ու համապատասխան կազմակերպությունների անհոգի վերաբերմունքի, իր ունակություններին համապատասխան աշխատանքով ապահովված չլինելու և բազմաթիվ այլ պատճառներով, չկարողանալով տալ այդ երևույթների բացատրությունը, դրանցում չտեսնելով սուբյեկտիվիզմի դրսևորումներ, ընդհակառակը, դրանք ներկայացնելով որպես սոցիալիզմի օրինաչափություն, երբեմն հակադրվում են կոլեկտիվին, խուսափում են աշխատանքից։ Ավելին. կան մարդիկ, որոնք ուղղակի պորտաբույծ կյանք են վարում, արհամարհում են հասարակական կարծիքը, ոտնահարում սոցիալիստական համակեցության նորմերը։

Արդյունաբերական առաջավոր ձեռնարկությունների կոլեկտիվները ձգտելով հաղթահարել վերը նշված հակասությունները, միաժամանակ անհան-

դուրժողականության մթնոլորտ են ստեղծում բոլոր նրանց շուրջը, ովքեր համընթաց չեն քայլում կոլեկտիվի հետ, խախտում են սոցիալիստական համակեցության նորմերը, կոմունիստական բարոյականության սկզբունքները։

Սակայն հարկավոր է նշել, որ կոմունիստական բարոյականության նորմերը խախտողների նկատմամբ անհանդուրժողական վերաբերմունքի դրսևորումն այստեղ, իհարկե, չի նշանակում նրանց օտարել կոլեկտիվից։ Աշխատավորական կոլեկտիվներում ձգտում են վերափոխել, դաստիարակել այդպիսիներին, նրանց մոտ բարձրացնել քաղաքացիական պարտքի ու պարտականության զգացումը։

Սոցիալ-տնտեսական անհրաժեշտ նախադրյալների հետ մեկտեղ հասարակության, կոլեկտիվի շահերի նկատմամբ անհատի ոչ-ճիշտ վերաբերմունքը հաղթահարվում է նաև կոլեկտիվի կարծիքով։ Գործուն ուժ է դառնում կոլեկտիվ միտքը, կոլեկտիվ գիտակցությունը։ Այն իրականացնում է բարոյական վերահսկողություն. բարոյական դաստիարակությամբ մարդու թերությունները հաղթահարելուց հետո, կոլեկտիվներն իրենց առջև դնում են ավելի բարդ խնդիր՝ սովետական մարդկանց բարձրացնել անհատի զարգացման ավելի բարձր մակարդակի, որն ունենա բարձր բարոյականություն, վեհ զգացումներ։

Ավելի բարդ ու վեհ են դառնում մարդկային փոխհարաբերություններն այն իմաստով, որ սովետական մարդն իր աշխատանքային ընկերոջը գնահատում է նաև որպես հասարակական կյանքի ընկեր, իր վրա պատասխանատվություն է վերցնում ոչ միայն նրա աշխատանքի, այլև հենց նրա անձի համար։ Կոլեկտիվը բազմակողմանի պատասխանատվություն է կրում յուրաքանչյուրի համար։ Սովետական բանվորի վարքագծում նորմա է դառնում հոգատարությունն ու ուշադրությունը ուրիշի նկատմամբ, կարեկցանքը ընկերոջ կարիքի, նրա դժբախտության նկատմամբ։

Մեր աշխատավորական կոլեկտիվներում տեղի է ունենում անհատի բարոյական կատարելագործման, կատարելության հասնելու պրոցես, ընդ որում ակնառու է այն, որ կոլեկտիվիզմի զարգացումը տեղի է ունենում ինդիվիդուալիզմի և էգոիզմի դեմ մղվող անհաշտ պայքարում։

Չնայած կոլեկտիվում անհատի զարգացման ակնառու հնարավորություններին, բուրժուազիայի գաղափարախոսները գտնում են, որ կոլեկտիվիզմն անհամատեղելի է անհատի զարգացման հետ, որ մարդը չի կարող ազատ լինել անձնական մոտիվներից, եսասիրությունից, սուբյեկտիվիզմից։ Ըստ նրանց կոլեկտիվում իբր անտարբերություն է ստեղծվում մարդու հոգևոր կյանքի նկատմամբ։ Բուրժուական հայտնի փիլիսոփա Օլդոս Հակսլին կեղծելով իրականությունը և ձգտելով վարկաբեկել կոլեկտիվիզմը, գրում է «Կոմունիզմի նպատակն է անհատին զրկել բոլոր իրավունքներից, անձնական ազատության ամենափոքր նշաններից, այդ թվում մտքի ազատությունից, հոգի ունենալու իրավունքից և դարձնել նրան մեծ կոլեկտիվ մարդու բաղկացուցիչ մասը»։

Մարքսիստական փիլիսոփայությունը, սակայն, երբեք էլ կոլեկտիվիզմի հաստատումը չի դիտել որպես անհատական տարբերությունների համահարթում, անհատի նսեմացում։ Ընդհակառակը, սոցիալիստական արդյունաբերական ձեռնարկությունների կոլեկտիվների կյանքի պրակտիկան ցույց է տալիս, որ այստեղ ոչ միայն տեղի չի ունենում անհատի ինքնության համահարթում,



այլև ռեալ պայմաններ են ստեղծվում նրա անհատականության իսկական ծաղկման ու զարգացման համար։ Տեղի է ունենում անհատի ինքնահաստատում։

Սոցիալիստական արդյունաբերական ձեռնարկություններում կոլեկտիվի և անհատի փոխհարաբերությունները, կոլեկտիվի և անհատի ներդաշնակ զարգացման բնորոշ հատկանիշներից մեկն այն է, որ կոլեկտիվի անդամների ընտանիքը, կրթությունը, կենցաղը նույնպես չի դիտվում որպես զուտ մասնավոր, անձնական գործ։

Կոլեկտիվի և անհատի շահերի, նրանց փոխհարաբերությունների ներդաշնակ զարգացման դրսևորումներից է և այն, որ կոլեկտիվը հնարավորություններ է ստեղծում անհատի մասնագիտական որակավորման, հանրակրթական գիտելիքների, ընդհանուր կուլտուրական մակարդակի բարձրացման համար։ Սա արդի գիտատեխնիկական պրոգրեսի, աշխատանքի բովանդակության արմատական փոփոխության հրամայական պահանջ է, որի առավել հաջող կենսագործումը հնարավոր է միայն աշխատավորական կոլեկտիվներում։

Ստորև բերված աղյուսակը տալիս է էլեկտրալամպերի գործարանում աշխատողների որակավորման ուղղությամբ կատարված աշխատանքի պատկերը։

| Որակավորվել են բանվորներ, ինժեներներ, տեխնիկներ | 1962թ. | 1964թ. | 1966թ. |
|---|---|---|---|
| Որակավորումը բարձրացրել են զանազան դասընթացներում (միայն բանվորներ) . . . . . . . . . . . . | 1343 | 1507 | 2952 |
| Գործարանային պրոֆ. տեխն. ուսումնարանում սովորել են . . | — | 242 | 360 |
| Ինժեներա-տեխնիկական աշխատողների որակավորման հատուկ դասընթացներում . . . . . . . . . . . | 145 | 185 | 145 |
| Վարպետների դպրոցում . . . . . . . . . . | — | — | 127 |
| Տեխնիկա-տնտեսագիտական համալսարանում . . . . | — | — | 266 |
| Ընդամենը որակավորումը բարձրացրել են | 1488 | 1934 | 3850 |

Բազմաթիվ արդյունաբերական ձեռնարկությունների կոլեկտիվներում հիանալի տրադիցիա է ստեղծվում՝ պայքարել սիրո և մեծ բարեկամության վրա հիմնված ընտանիքի համար։ Այստեղ ընտանիքի ամրապնդումը, հարգանքը կնոջ, հոգատարությունը երեխաների նկատմամբ՝ դառնում է կոմունիստական բարոյականության հաստատման կարևորագույն բաղկացուցիչ մասը, որը վճռական դեր է խաղում աշխատանքում հաջողությունների հասնելու համար։

Մեր առաջընթացի, կոմունիզմ տանող ճանապարհին ընդլայնվում են սովետական բանվորների հետաքրքրասիրությունները, ավելի բազմակողմանի է դառնում նրանց հասարակական օգտակար գործունեությունը, բարձրանում հասարակական ինքնագիտակցությունը։ Այս ամենը վկայում է, որ, ինչպես Էնգելսն էր ասում, գնալով անհատի և կոլեկտիվի, հասարակության շահերի ընդհանրությունը դառնում է հիմնական սկզբունք, որի մեջ հասարակական շահը այլևս չի տարբերվում յուրաքանչյուր առանձին անձի շահից։ Բանվորն իր գործունեության ոլորտը չի սահմանափակում միայն արտադրությամբ, ընդգրկում է նաև սոցիալական, քաղաքական կյանքը։ Նրա անձնական, հարազատ գործն են դառնում այն պրոբլեմները, որոնք լուծելու ուղղությամբ

աշխատում է ամբողջ երկիրը։ Այն կոլեկտիվի կյանքի հարցերը, որտեղ աշխատում է նա, քաղաքի խնդիրները, որտեղ ապրում է, ամբողջ երկրի շահերն ու պրոբլեմները մեր բանվորներին ավելի քիչ չեն հուզում, քան անձնականը։

Վերը նշվածը, սակայն, չի նշանակում, թե մեր արդյունաբերական ձեռնարկություններում միշտ և լրիվ համընկնում են անհատի և կոլեկտիվի շահերը, ներդաշնակ հարաբերություններ կան աշխատավորական կոլեկտիվների բոլոր անդամների միջև։ Դեռևս կարելի է հանդիպել որոշ կոլեկտիվների, ուր բյուրոկրատը անհատին զրկում է ինքնուրույնությունից, նրան հնարավորություն չի տալիս ազատորեն նախաձեռնել ու գործել, արտահայտել իր ուրույն մտքերը։ Աշխատողը դիտվում է սոսկ որպես կարգադրություններն ու հրամանները անթերի կատարող։ Դա խոչընդոտում է անհատի ունակությունների և տաղանդների բազմակողմանի դրսևորմանը։

Որոշ դեպքերում անհատի և կոլեկտիվի միջև հակասությունների առաջացման գործում որոշակի դեր է կատարում անհատի արժանիքներն ըստ արժանվույն չգնահատելը։ Քիչ չեն դեպքերը, երբ որոշ ղեկավարներ աչքաթող են անում մարդուն աշխատանքային ու քաղաքական հատկանիշներով չափելու լենինյան սկզբունքը։ Դրան երբեմն փոխարինում են անձնական նվիրվածությունն ու անձնական մոտիկությունը. դրանով ղեկավարը հանդես է բերում ինդիվիդուալիստական հոգեբանություն, իր անձնական շահը ներկայացնում է որպես կոլեկտիվի, հասարակության շահ և վնասում կոլեկտիվին ու հասարակությանը։ Անհատը չկարողանալով ճիշտ գնահատել ղեկավարի նման վարքագիծը, դա վերագրում է սոցիալիզմի էությանը, որը մարդկանց աչքում կարող է վարկաբեկել կոմունիզմի մեծ իդեալները։

Արդյունաբերական ձեռնարկություններում անհատի և կոլեկտիվի շահերի ոչ-ներդաշնակ համակցման գործում բացասական դեր են կատարում բաշխման հարաբերությունների դեռևս չլուծված մի շարք հակասություններ։ Այսպես, արդյունաբերական ձեռնարկություններում անմիջապես արտադրության պրոցեսում զբաղված բանվորների և ծառայողների ու ինժեներա-տեխնիկական աշխատողների պարգև-վարձատրումը կազմակերպվում է միասնական աղբյուրից՝ ձեռնարկությանը հատկացված աշխատավարձի ֆոնդից։ Ընդ որում, ինժեներա-տեխնիկական աշխատողների և ծառայողների պարգևատրման առաջին անհրաժեշտ պայմաններից մեկը աշխատավարձի ընդհանուր ֆոնդի գերածախսի բացակայությունն է։ Այստեղից էլ ինժեներա-տեխնիկական աշխատողների և ծառայողների մոտ օբյեկտիվորեն առաջ է գալիս անառողջ շահագրգռվածություն՝ ամեն կերպ տնտեսել աշխատավարձի ֆոնդը։ Ակներևաբար դա կարող է առաջին հերթին կատարվել արտադրական նորմաների վերանայման ճանապարհով։ Իսկ նորմաների վերանայումը, եթե այն հիմնավորված չէ, առաջ է բերում անմիջական նյութական արտադրության մեջ զբաղված աշխատավորների դժգոհություն, հակասություն բանվորների և ինժեներա-տեխնիկական աշխատողների միջև։ Պլանավորման և նյութական շահագրգռման ներկա սիստեմի պայմաններում նման երևույթները բազմաթիվ են։ ՍՄԿԿ Կենտկոմի սեպտեմբերյան պլենումը (1965 թ.) բնականաբար կարևոր ուշադրություն նվիրեց այդ հակասությունների վերացման և նոր սիստեմի պայմաններում նախատեսվեց պարգև-վարձատրման ֆինանսական աղբյուրները խստիվ սահմանազատել։ Բանվորների պարգև-վարձատրությունը նախատեսվում է կազմակերպել աշխատավարձի ֆոնդից և ձեռնարկության շահույթ-



ներից, իսկ ինժեներա-տեխնիկական աշխատողներինն ու ծառայողներինը՝ միայն շահույթից։

Կոլեկտիվի և անհատի շահերի ներդաշնակ զարգացմանը խոչընդոտում է մեկ այլ հանգամանք ևս։ Անհատը դրականորեն գնահատելով իր աշխատանքի սոցիալական էությունը, բնականաբար, իր աշխատանքային գործունեությանը վերաբերվում է գիտակցաբար, բարեխղճորեն։ Սակայն գաղտնիք չէ նաև, որ ոչ բոլոր դեպքերում է նա բավարարվում իր աշխատանքային ֆունկցիաների բովանդակությունից, որն, առաջին հերթին, աշխատանքի վատ կազմակերպման և արտադրության միջոցների տեխնիկական անբավարար կատարելագործման հետևանք է։ Աշխատանքային անվտանգության տարրական նորմերի բացակայությունը, ինչպես նաև ֆիզիկական մեծ ջանքեր պահանջող աշխատանքը չեն կարող բացասաբար չներգործել անհատի հոգեբանության, նրա բազմակողմանի ու ներդաշնակ զարգացման վրա, չեն կարող նրան չվանել աշխատանքից։ Ահա թե ինչու կոլեկտիվների առջև խնդիր է ծառանում՝ սիստեմատիկաբար կատարելագործել արտադրության տեխնիկական միջոցները, անհատի համար ստեղծել ստեղծագործական աշխատանքի պայմաններ։

Սոցիալիստական արդյունաբերական ձեռնարկություններում կոլեկտիվիստական հարաբերությունների զարգացմանը խոչընդոտող գործոններից է շատ տեղերում դեռևս մեծ չափերի հասնող բանվորական ուժի հոսունությունը։ Դա խիստ բացասաբար է ազդում կայուն աշխատանքային կոլեկտիվների ստեղծման կարևոր գործի վրա։ Իսկ անկայուն, հեղհեղուկ աշխատավորական կոլեկտիվում, բնական է, մարդկանց միջև չեն կարող ստեղծվել իսկական կոլեկտիվիստական հարաբերություններ։ Կոլեկտիվը չի կարողանում ճանաչել անհատին և անհատը՝ կոլեկտիվին, ոչ անհատն է կարողանում իր ներդրումը կատարել կոլեկտիվի ընդհանուր գործի մեջ և ոչ էլ կոլեկտիվն է հնարավորություն ունենում բարերար ազդեցություն գործելու անհատի աշխատանքի, կյանքի, նրա կենցաղի տարբեր կողմերի վրա։

Ստորև բերվող աղյուսակը ցույց է տալիս, թե բանվորական ուժի հոսունությունն ինչպիսի վիճակում է Երևանի մի քանի ձեռնարկություններում։

| Ձեռնարկության անվանումը | 1964 թ. | | | 1965 թ. | | | 1966 թ. | | |
|---|---|---|---|---|---|---|---|---|---|
| | բանվորների ընդհանուր թիվը | ազատվածների թիվը | համեմատությունը %-ներով | բանվորների ընդհանուր թիվը | ազատվածների թիվը | համեմատությունը %-ներով | բանվորների ընդհանուր թիվը | ազատվածների թիվը | համեմատությունը %-ներով |
| Էլեկտրասարքավորումների գործարան | 666 | 327 | 49,1 | 876 | 397 | 45,3 | 899 | 462 | 51,5 |
| Ավտոպահեստամասերի գործարան | 1372 | 543 | 39,6 | 1478 | 641 | 43,4 | 1551 | 1006 | 64,9 |
| Սովետաշենի տրիկոտաժի ֆաբրիկա | 434 | 84 | 19,4 | 486 | 21 | 43,2 | 541 | 317 | 58,6 |
| Ֆրեզերային հաստոցների գործարան | 444 | 293 | 66,0 | 445 | 294 | 66,1 | 405 | 259 | 64,0 |

Ուսումնասիրությունները ցույց են տալիս, որ բանվորական ուժի հոսունության հիմնական պատճառներն են աշխատանքի վատ կազմակերպումը, ադմինիստրացիայի կողմից ձեռնարկության ղեկավարման ցածր մակարդակը, գիշերային հերթափոխությունները, բանվորների աշխատանքային, կուլտուր-կենցաղային պայմանների նկատմամբ եղած անբավարար ուշադրությունը, ցածր աշխատավարձը, պարապուրդները և այլն: Բանվորական ժամանակի կորուստներն, օրինակ, մեծ են էլեկտրատեխնիկական գործարանում: Միայն 1966 թվականի առաջին ինն ամիսների ընթացքում այն կազմել է 44473-օր, այսինքն՝ ամբողջ բանվորական ժամանակի 16 տոկոսը: Ստացվում է, որ 197 բանվոր 9 ամիսների ընթացքում չեն աշխատել:

Բանվորական ուժի հոսունությունը, աշխատանքային կայուն կոլեկտիվի բացակայությունը խիստ բացասաբար է անդրադառնում ձեռնարկության աշխատանքի առանց բացառության բոլոր կողմերի վրա:

Կոլեկտիվի և անհատի շահերի ներդաշնակ զարգացման համար կարևոր նշանակություն ունի ինչպես իրավունքների և պատասխանատվության, այնպես էլ վարձատրման սիստեմի որոշ օղակներում դիմազրկության վերացումը: Որպեսզի յուրաքանչյուր անհատ կոլեկտիվում գնահատվի իր բազմակողմանի ձիրքերով և ունակություններով, իր աշխատանքային արժանիքներով, առաջին հերթին պետք է ընտրվի այն չափանիշը, որով որոշվում են այդ արժանիքները: Անհատի մասնակցությունը կոլեկտիվի աշխատանքին և կոլեկտիվի աշխատանքը որպես առանձին անհատների գործունեության հանրագումար՝ հանդես են գալիս սերտ միասնության մեջ: Կոլեկտիվի աշխատանքի արդյունքը պայմանավորված է առանձին անհատների աշխատանքով: Ուստի, հարկավոր է, որպեսզի անհատի աշխատանքը երևա կոլեկտիվի ընդհանուր աշխատանքի մեջ:

ՍՄԿԿ Կենտկոմի սեպտեմբերյան պլենումի և կուսակցության XXIII համագումարի որոշումներն ամենուրեք ուղղված են արտադրամասային տնտհաշվարկի արմատավորմանը, ձեռնարկության շահույթներից տրվելիք պարգևվճարումների դիֆերենցմանը՝ ըստ աշխատանքային երկարատև և ջանասեր գործունեության: Ավելին, ԳԴՀ-ում մտցվում է ոչ միայն ներարտադրամասային ու բրիգադային, այլև ըստ բանվորական տեղի տնտհաշվարկ: Մշակված է ցուցանիշների սիստեմ, որով գնահատվում է յուրաքանչյուր բանվորի աշխատանքը բանվորական տեղում:

Սոցիալիստական արդյունաբերության հետագա զարգացման հզոր շարժիչ ուժն է ձեռնարկություններում կոլեկտիվների և անհատի անընդհատ կատարելագործումը, նրանց փոխհարաբերությունների, շահերի հետագա ներդաշնակ զարգացումը: Դրա համար շատ այլ խնդիրների հետ միասին կարևոր է, որպեսզի մեր գործարաններում և ֆաբրիկաներում տեսնեն, հետազոտեն և ուղղություն տան աշխատավորական կոլեկտիվների և անհատի սոցիալական բազմակողմանի զարգացմանը, հաշվի առնեն ինչպես ամբողջ կոլեկտիվի, այնպես էլ նրա յուրաքանչյուր անդամի շահերն ու պահանջները: Հարկավոր է հետևողական և մտածված աշխատանքով կատարելագործել կոլեկտիվի սոցիալական կառուցվածքը, մշտական ուշադրության կենտրոնում պահել աշխատանքի սոցիալ-տնտեսական և սոցիալ-հոգեբանական առումները:

---

# ՄԻԿՐՈԲՆԵՐԸ ԾԱՌԱՅՈՒՄ ԵՆ ՄԱՐԴՈՒՆ


## Է. ԱՖՐԻԿՅԱՆ

Հայկական ՍՍՀ ԳԱ միկրոբիոլոգիայի ինստիտուտի դիրեկտոր


Գիտության զարգացման մեջ պատմական ուղենիշ հանդիսացավ մանրադիտակային էակների՝ միկրոբների ու վիրուսների առանձնահատուկ աշխարհի հայտնագործումը, որը գրեթե հարյուր տարի առաջ նշանավորեց նոր գիտության՝ միկրոբիոլոգիայի ծնունդը:

Իր զարգացման սկզբնական շրջանում միկրոբիոլոգիան խոշոր հաջողություններ ունեցավ վարակիչ հիվանդությունների հարուցիչների բնույթը պարզելու գործում, այդ պատճառով էլ միկրոօրգանիզմների մասին հասկացողությունը հաճախ կապված էր մարդու ամենադաժան թշնամիների մասին պատկերացման հետ: Միկրոբների հիվանդածին դերի բացահայտումը հիմք ծառայեց նրանց դեմ պայքարի արդյունավետ միջոցներ որոնելու: Միկրոբիոլոգիայի հաջողությունների շնորհիվ հնարավոր դարձավ ստեղծել վարակիչ հիվանդությունների դեմ պայքարելու այնպիսի հզոր միջոցներ, ինչպիսիք են՝ հանրահայտ պատվաստները, բուժիչ շիչուկները և զանազան վարակների դեմ տարբեր քիմիաթերապևտիկ դեղամիջոցներ: Ահավոր վարակիչ հիվանդություններից շատերը, ինչպես՝ ծաղիկը, ժանտախտը, խոլերան, որոնք նախկինում սարսափ էին տարածում ու միլիոնավոր կյանքեր խլում, այժմ, նշված հայտնագործությունների շնորհիվ, հաջողությամբ վերացված են աշխարհի մեծ մասում:

Դեռևս միկրոբիոլոգիայի զարգացման արշալույսին բացահայտվել էր միկրոօրգանիզմների հսկայական դերը մարդու, կենդանիների ու բույսերի կյանքում: Պարզվել է, որ միկրոօրգանիզմներն իրականացնում են նյութերի բազմազան փոխակերպումներ, ապահովելով հողի բերրիությունը, ազոտի, ածխածնի, ծծմբի և այլ տարրերի շրջապտույտը բնության մեջ: Անհիշելի ժամանակներից ի վեր գոյություն ունեցող խմորման պրոցեսները, որոնց օգնությամբ հնարավոր է դառնում ստանալ գինի, հացամթերքներ, գարեջուր, պանիր և այլ կաթնամթերքներ, անխզելիորեն կապված են միկրոօրգանիզմների կենսագործունեության օգտագործման հետ:

Ոչ մի հմուտ քիմիկոս և առավել հագեցած քիմիական լաբորատորիա չի կարող համեմատվել միկրոօրգանիզմների այն ունակության հետ, որով

վերջիններս զարմանալի հեշտությամբ ու արագությամբ իրականացնում են նյութերի չափազանց բարձր ու բազմազան փոխակերպումները։ Միկրոօրգանիզմների այդ առանձնահատկությունները վաղուց են գրավել գիտնականների ուշադրությունը, սակայն մեզ անհրաժեշտ քիմիական արժեքավոր միացությունների արդյունաբերական ստացման համար միկրոօրգանիզմների կենսագործունեության նպատակային օգտագործումը հնարավոր դարձավ միայն վերջերս, շնորհիվ ձեռք բերված հաջողությունների, ինչպես նաև գիտության մյուս ճյուղերի և, ամենից առաջ, քիմիայի ու բիոքիմիայի սերտ համագործակցության։

Միկրոբների հրաշագործ հատկությունների ցայտուն օրինակ կարող են ծառայել անտիբիոտիկները՝ միկրոօրգանիզմային դեղանյութերը։ Երկար տարիներ գիտնականները, գլխավորապես քիմիկոսները, որոնել են հիվանդածին միկրոօրգանիզմներ ոչնչացնող հզոր միջոցներ։ Սակայն հարյուր հազարավոր քիմիական նյութերից այժմ միայն քչերն են օգտագործվում բժշկության մեջ։ Բայց հակամիկրոբային նյութերի ստացման առավել հարուստ աղբյուր հանդիսացան իրենք՝ միկրոօրգանիզմները։

Մեր դարի քառասնական թվականներին դրվեցին միկրոբիոլոգիայի մի նոր ճյուղի՝ անտիբիոտիկ նյութերի արդյունաբերության հիմքերը, որը բուռն զարգացավ և հանգեցրեց միկրոօրգանիզմներից բազմապիսի արժեքավոր նյութերի ու պրեպարատների պատրաստման արդյունաբերական շատ ճյուղերի ստեղծման։ Ներկայումս միկրոօրգանիզմներից հարյուրավոր տոննաներով ստացվող բազմաթիվ անտիբիոտիկներ, ինչպես, օրինակ՝ պենիցիլինը, ստրեպտոմիցինը, բիոմիցինը և այլն մինչև այժմ բժշկության մեջ հայտնի բոլոր դեղամիջոցներից առավել զորեղ դուրս եկան, իսկ դրանց հայտնաբերումն ու կիրառումը մի նոր դարաշրջան բացեցին ժամանակակից գիտության մեջ։

Միկրոօրգանիզմները գրավեցին մասնագետներից շատերի ուշադրությունը՝ ֆիզիոլոգիապես ակտիվ նյութերի և այնպիսի միացությունների արտադրություն կազմակերպելու համար, որոնց ստացումը քիմիական արդյունաբերության մեջ մեծ դժվարությունների հետ է կապված։ Եվ այժմ մենք ականատես ենք, թե ինչպես քիմիական ինդուստրիայի հետ մեկտեղ, լինելության վիճակ է ապրում և բուռն կերպով զարգանում ժողովրդական տնտեսության նոր հեռանկարային ճյուղը՝ միկրոբիոլոգիական սինթեզի արդյունաբերությունը, չափազանց արժեքավոր և մեզ անհրաժեշտ նյութերի ու պրոդուկտների արհեստական ստացման նոր արդյունաբերական մեթոդը։

Միկրոբիոլոգիական արդյունաբերության ստեղծումն ու զարգացումը պայմանավորվել են միկրոօրգանիզմների ժառանգականության և կենսագործունեության կարգավորման ու կառավարման բնագավառում գիտության ձեռք բերած հաջողություններով և արտադրության տեխնոլոգիական պրոցեսների մշակմամբ։ Ներկայումս միկրոբիոլոգիան ունի միկրոօրգանիզմների այնպիսի նոր արհեստական ձևեր ստանալու մեթոդներ, որոնք իրենց արդյունավետությամբ տասնյակ ու հարյուրավոր անգամ գերազանցում են բնության մեջ ապրող միկրոբների ելակետային «վայրի» ձևերին։ Միկրոբիոլոգիայի մասին ժամանակակից մեր պատկերացումն արտացոլում է այն բարդ տեխնոլոգիական սխեմաներն ու սարքավորումները, որոնց հիման վրա օգտագործվում են գիտության և տեխնիկայի վերջին նվաճումները։ Փորձանոթներն ու սրվակ-



ները, որոնց հետ կապվում էր հին հասկացողությունը, այժմ փոխարինվում են պրոցեսների կարգավորման ու ավտոմատիկայի ամենաբարդ սարքեր ունեցող միկրոբիոլոգիական գործարանների հարյուրավոր տոննա հսկայական ինդուստրիալ տարողություններով, որտեղ աճեցվում են միկրոօրգանիզմներ։

Միկրոօրգանիզմները բացառիկ կարևոր նշանակություն են ստանում կերի և սննդի միջոցների արդյունաբերական ստացման համար։ Այդ տեսակետից առանձին հետաքրքրություն է ներկայացնում սպիտակուցների և նրանց բաղադրիչ տարրերի՝ օրգանիզմների կենսագործունեության հիմքը կազմող ամինոթթուների արտադրությունը։

Մեզ համար սպիտակուցային սննդի, ինչպես և ամբողջությամբ առած սննդի մյուս բոլոր տեսակների աղբյուր են ծառայում կենդանի բնությունը, բույսերը, կենդանիներն ու նրանց մթերքները, որ արտադրում են գյուղատնտեսությունը, անասնաբուծությունը և այդ հիմքը վերամշակող արդյունաբերությունը։ Բոլոր այդ մթերքներն այս կամ այն չափով արդյունք են բույսերի ու կենդանիների բջիջների ու հյուսվածքների կենսագործունեության, որոնք հանքային և օրգանական միացություններից առաջացնում են ամենաբազմազան սպիտակուցներ, ածխաջրատներ, ճարպեր, վիտամիններ և սննդի ու կյանքի համար մեզ անհրաժեշտ այլ միացություններ։ Միկրոօրգանիզմների շատ տեսակներ նման պրոցեսներն իրականացնում են առաջացնելով համանման արգասիքներ. ընդ որում, ի տարբերություն բուսական ու կենդանական բջիջների, դրանք կարելի է աճեցնել գործարանային պայմաններում, օգտագործելով պարզ հանքային աղեր ու միացություններ։

Միկրոօրգանիզմներն օժտված են բազմանալու և իրենց հավելաճն ապահովելու հսկայական էներգիայով։ Համապատասխան պայմաններում միկրոբները զարգանում են զարմանալի արագությամբ, յուրաքանչյուր 30—60 րոպեում բջիջները կրկնապատկվում են։ Ահա թե ինչու միկրոօրգանիզմները հարյուրավոր ու հազարավոր անգամ գերազանցում են կենդանիների ու բույսերի զարգացման հավելաճը։ Իսկ այդ նշանակում է, որ միկրոօրգանիզմներն ընդունակ են համապատասխան անգամ ավելի արագ առաջացնել իրենց մասսան ու բազմապիսի պրոդուկտներ և իրականացնել զանազան քիմիական ձևափոխումներ։ Ժամանակակից միկրոբիոլոգիական արտադրությունների ընթացքում մեկ խորանարդ սանտիմետր սննդալուծույթում անդուլ աշխատում են տասնյակ ու հարյուրավոր միլիարդ այդպիսի միկրոսկոպիկ էակներ ու մեծ եռանդով ստեղծում են մեզ անհրաժեշտ արդյունքներ ու նյութեր, որոնց ստանալու համար հարկ է լինում ծախսել վիթխարի միջոցներ, գործադրել հսկայական ջանքեր։

Միկրոօրգանիզմների առանձնապես արժեքավոր և օգտակար ձևեր հանդիսացան շաքարասնկերը, մասնավորապես նրանք, որոնք ստացան կերային անվանումը։ Իրենց կենսագործունեության ընթացքում նրանք յուրացնում են պարզ հանքային միացությունները, դրանք վերածելով կերի ու սննդի արժեքավոր միացությունների ու վիտամինների։ Շաքարասնկերն իրենց սննդային արժեքականությամբ համապատասխանում են կենդանական և բուսական ծագում ունեցող սպիտակուցային բարձրորակ մթերքներին, որոնք լայնորեն հայտնի են անասնաբուծությանն ու թռչնաբուծությանը։ Շաքարասնկերը կոպիտ կերի վրա աճեցնելու դեպքում հաջողվում է այն զգալի չափով հարըս-

տացնել արժեքավոր սպիտակուցներով ու վիտամիններով, խիստ բարձրացնել կերի սննդարարությունը: Մեր երկրում մեծ զարգացում է ստանում շաքարասնկերի արտադրությունը բնափայտի հիդրոլիզատների և ցելյուլոզի արդյունաբերության թափոնների վրա՝ տարեկան տասնյակ հազար տոննա շաքարասնկերի համախառն արտադրանքով և հետագա անշեղ աճման հեռանկարով:

Բացառիկ հետաքրքրություն է ներկայացնում շաքարասնկերի օգնությամբ կերի ու սննդի սպիտակուցա-վիտամինային կոնցենտրատների արտադրությունը նավթի և նավթամթերքների հումքային բազայի վրա: Ժողովրդական տնտեսության զարգացման պլանով մեր երկրում 1970 թ. պետք է շաքարասնկերից մշակվեն տարեկան մոտ մեկ միլիոն տոննա այդպիսի կոնցենտրատներ: Այդ արտադրանքի ժողովրդա-տնտեսական կարևորությունը պատկերացնելու համար բավական է նշել, որ 1 կգ նման շաքարասնկերի սպիտակուցա-վիտամինային կոնցենտրատներն իրենց սննդարարությամբ համարժեք են 3 կգ մսին:

Վերջին ժամանակներս ինտենսիվ աշխատանքներ են ծավալվել ոչ սննդային հումքից, մասնավորապես, նավթամթերքներից ճարպեր արտադրելու համար շաքարասնկերի օգտագործման ուղղությամբ: Ստացված են շաքարասնկերի այնպիսի ձևեր, որոնք այդ միացությունների վրա աճեցնելու դեպքում կազմում են իրենց ընդհանուր կենսական մասսայի 40 տոկոսի չափով ճարպեր. ընդ որում, բաղադրությամբ այդ ճարպերն ունեն բարձր սննդային արժեք:

Միկրոբիոլոգիայի հաջողությունները միկրոօրգանիզմների օգնությամբ սպիտակուցների կարևորագույն կոմպոնենտների՝ ամինոթթուների արդյունաբերական արտադրության հնարավորություն են ընձեռել: Նրանցից շատերի՝ քիմիական մեթոդով ստացումը հարյուրավոր անգամ ավելի թանկ է նստում, քան միկրոօրգանիզմների օգնությամբ: Առանձին ուշադրություն է նվիրվում կերային և սննդային մեծ արժեք ներկայացնող լիզինի, տրիպտոֆանի, գլյուտամինաթթվի և մի քանի այլ ամինոթթուների միկրոբիոլոգիական արտադրությանը:

Մեր երկրում ստեղծվում են միկրոբիոլոգիական արդյունաբերության արտադրական խոշոր կարողություններ, որոնք պետք է մոտակա տարիներում ապահովեն կերային արդյունաբերության կարիքները կարևորագույն ամինոթթուների բնագավառում: Պետք է նշել, որ մի շարք երկրներում, ինչպես, օրինակ, Ճապոնիայում, որը զրկված է գյուղատնտեսությունը և անասնաբուծությունն ընդլայնելու հնարավորությունից, կերի և սննդի պրոբլեմները որոշ չափով լուծվում են տարեկան տասնյակ հազարավոր տոննաներով մշակվող սպիտակուցային միացությունների և ամինոթթուների միկրոբիոլոգիական արդյունաբերության հզոր զարգացմամբ:

Գործարանային պայմաններում միկրոօրգանիզմների օգնությամբ կերային ու սննդանյութերի ստացումը (մի կողմ թողնելով գյուղատնտեսական արտադրության աղբյուրները), իսկական հեղափոխություն է գիտության ու արդյունաբերության մեջ և նրա սոցիալական հետևանքները դժվար է գերագնահատել: Մենք կանգնած ենք առավել խնայողական, էժան և գործնականորեն անսպառ հումքային բազայի վրա կենսականորեն կարևոր սննդամթերքների արդյունաբերական դարաշրջանի շեմին:



Ներկայումս միկրոբիոլոգիական արդյունաբերությունը մշակում է կենդանիների և բույսերի աճման ու զարգացման մեծ քանակությամբ բազմապիսի խթանիչներ՝ վիտամիններ, անտիբիոտիկներ, գիբբերելլիններ և աճախթանիչ այլ պրեպարատներ:

Այնպիսի արժեքավոր ու կարևոր պրեպարատը, ինչպիսին է $B_{12}$ վիտամինը, այժմ արտադրվում է բացառապես միկրոբիոլոգիական եղանակով: Ռեալ նախադրյալներ են ստեղծված A և D վիտամինների միկրոբիոլոգիական արտադրության կազմակերպման համար: Հայտնի է, որ A վիտամինն ստացվում է բարդ և բազմաստիճան քիմիական սինթեզի ճանապարհով, որպիսի հանգամանքը զգալի չափով սահմանափակում է այդ արժեքավոր պրոդուկտի գործնական լայն օգտագործման հնարավորությունները: Ներկայումս արդյունաբերության մեջ արմատավորվում է A վիտամինի ստացման միկրոբիոլոգիական մեթոդը, որն իր արդյունավետությամբ մի քանի անգամ գերազանցում է նրա քիմիական արտադրությունը:

Մեծ ապագա ունի միկրոօրգանիզմների օգտագործումը բազմապիսի միացությունների նպատակադիր և դժվար իրագործվող քիմիական փոխակերպումների իրականացման համար: Այժմ քիմիկոսներն ավելի հաճախ են դիմում միկրոօրգանիզմների օգնությանը, որոնք ընդունակ են զարմանալի կերպով արագ ու հեշտ իրականացնելու բարդ ռեակցիաներ: Այդ ուղղությամբ մեծ հաջողություններ են ձեռք բերված հորմոնների, բարդ բիոխթանիչների, անտիբիոտիկների, առանձին վիտամինների, ալկալոիդների և շատ այլ արժեքավոր միացությունների ստացման ասպարեզում: Քիմիական և միկրոբիոլոգիական սինթեզների համակցումն արդեն հնարավորություն է ընձեռել արդյունաբերության շատ ճյուղերում զգալի չափով էժանացնելու և պարզեցնելու արտադրական տեխնոլոգիայի մի շարք թանկ նստող և բարդ ստադիաներ:

Միկրոբիոլոգիական եղանակով արտադրվում են հսկայական քանակությամբ միացություններ՝ բարդ պոլիմերներ, արյան փոխարինիչներ, նուկլեինաթթուներ, արժեքավոր քիմիական ռեակտիվներ, օրգանական թթուներ և ուրիշ շատ միացություններ: Այժմ ընդհանուր ուշադրություն է գրավում որոշ միկրոբների օգտագործումը օգտակար պահածոների արտադրության մեջ և պղինձ, մանգան, երկաթ և այլ մետաղներ ստանալու համար:

Միկրոօրգանիզմների օգտագործումը բացառիկ նշանակություն ունի բազմապիսի ֆերմենտներ ստանալու համար: Ֆերմենտները յուրօրինակ բարդ սպիտակուցներ են, որոնք պայմանավորում են բիոքիմիական պրոցեսները կենդանի բջջում: Նրանք կազմում են բոլոր կենսական պրոցեսների հիմքը և պայմանավորում կենսագործունեության բոլոր նյութերի փոխանակությունը: Միկրոօրգանիզմները բույսերի և կենդանիների աշխարհում հայտնի բոլոր ֆերմենտների ստացման աղբյուրն են: Այս հանգամանքը միկրոբիոլոգիան դարձնում է ֆերմենտների արդյունաբերական ու տնտեսական տեսակետից ձեռնտու արտադրության միակ հիմքը, մանավանդ որ նրանց քիմիական սինթեզը առայժմ հնարավոր չէ:

Ֆերմենտների միկրոբիոլոգիական արտադրությունը բուռն զարգանում է, իսկ միկրոբային ֆերմենտների զանազան պրեպարատների օգնությամբ այժմ լայնորեն կիրառվում է բժշկության, գյուղատնտեսության և արդյունաբերության մեջ: Այսպես՝ սպիտակուցները տարրալուծող պրոտեոլիտիկ ֆեր-

մենտների օգտագործումը հնարավոր է դարձնում գրեթե տասն անգամ արագացնել հարինգի (տառեխների ցեղին պատկանող ձուկ) հասունացումը ձկնարդյունաբերության մեջ, բարելավելով որակը։ Կոպիտ կերերը պարունակում են դժվար յուրացվող նյութեր, սակայն դրանք համապատասխան միկրոբային ֆերմենտներով մշակվելու դեպքում վերածվում են մարդու և կենդանիների համար դյուրամարս շաքարների։ Ճապոնիայում միկրոբային ֆերմենտների օգնությամբ օսլայից ստանում են տարեկան ավելի քան 200 հազար տոննա գլյուկոզա, որը ստացման առավել շահավետ մեթոդ է, քան գլյուկոզայի արտադրությունը կերային ու բուսական պրոդուկտներից։

Հողի պարարտացման և բույսերի բերքատվության բարձրացման համար կարևոր գործնական նշանակություն ունեն հատուկ միկրոբային պրեպարատները՝ նիտրագինը, ազոտոբակտերինը, ֆոսֆորոբակտերինը և այլն։ Այս դեպքում, երբ նշված բակտերիալ պարարտանյութերը մտցվում են հողի մեջ, վերջինս արհեստականորեն հարստանում է մանրէների օգտակար ձևերով, որի շնորհիվ զգալի չափով բարելավվում է հողի բերրիությունը, հատկապես նրա ազոտական հաշվեկշիռը։

Վերջին տարիներում առանձին ուշադրություն է դրվում միկրոբային պրեպարատների արտադրությունը գյուղատնտեսության վնասատուների՝ միջատների, կրծողների և մոլախոտերի դեմ պայքարելու համար։ Մեր և մի շարք այլ երկրներում արդեն ստեղծվել և գործնականում հաջողությամբ արմատավորվել են արդյունավետ միկրոբային պրեպարատներ՝ առանձնապես վտանգավոր միջատների և կրծողների դեմ պայքարելու համար։

Այդ տեսակետից այժմ առավել մեծ հետաքրքրություն են ներկայացնում հատուկ միկրոբային պրեպարատները՝ ինսէկտիցիդները, վնասաբեր միջատներից շատերի դեմ պայքարելու համար։ Մի շարք դեպքերում նման միկրոբային պրեպարատները միակ արդյունավետ միջոցն են այնպիսի վտանգավոր միջատների դեմ պայքարելու համար, ինչպիսիք են սիբիրյան շերամորդը, ճապոնական բզեզը և մի քանի այլ վնասատուներ։

Այն, ինչ ասվեց վերևում, լոկ մի փոքր մասն է արդի միկրոբիոլոգիայի հսկայական գործնական կիրառման վերաբերյալ, որն իրավամբ արդեն դարձել է առավել օգտավետ գիտություններից մեկը։



Մեր երկրում մեծ ուշադրություն է նվիրվում գործնականորեն արժեքավոր նյութերի և պրեպարատների միկրոբիոլոգիական արդյունաբերության զարգացմանը։ Կուսակցության դիրեկտիվներում ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության զարգացման պլանով նախատեսված է կարևոր միջոցառումներ կենսագործել մեր երկրում կազմակերպելու և զարգացնելու խոշոր միկրոբիոլոգիական արդյունաբերություն՝ կերի, սննդի և ֆիզիոլոգիապես ակտիվ այլ նյութերի արտադրության համար։

Հայաստանի ԿԿ Կենտկոմի և Հայկական ՍՍՀ Մինիստրների սովետի 1964 թ. հուլիսի 24-ի որոշումը ծրագրային վավերագիր հանդիսացավ Հայկական ՍՍՀ-ում կերի, սննդի ու ֆիզիոլոգիական ակտիվ այլ պրոդուկտների միկրոբիոլոգիական սինթեզի արդյունաբերական արտադրության կազմա-



կերպման բնագավառում և այդ ասպարեզի գիտահետազոտական աշխատանքների զարգացման համար։

Կերային ու սննդային նյութերի միկրոբիոլոգիական արտադրությունը Հայաստանում զարգացնելու հրամայական պահանջը թելադրում է ընտրել այդ ուղին, որն առավել նպատակահարմար ու խնայողական է։

Միկրոբիոլոգիական արդյունաբերության խոշոր օբյեկտը կհանդիսանա Լուսավանի՝ լիզինի արտադրության գործարանը, որի կառուցումն սկսվել է անցյալ տարի։ Գործարանը կարտադրի տարեկան 1000 տոննա լիզին, որի նպատակահարմար օգտագործումն արդյունաբերության մեջ՝ հավասարազոր է մոտ 200 հազար տոննա լրացուցիչ մսամթերք ստանալուն, չհաշված մեծ քանակությամբ կերի տնտեսումը։ Այդ ձեռնարկությունը պետք է փորձաարտադրական բազա ծառայի Սովետական Միությունում միկրոբիոլոգիական արդյունաբերության նոր հեռանկարային ճյուղի զարգացման համար և, անտարակույս, հուսալի հիմք կհանդիսանա մեր և մի շարք այլ հանրապետություններում խիստ անհրաժեշտ սպիտակուցային նյութերի արտադրություն կազմակերպելու համար։

Հանրապետության կարևոր արդյունաբերական օբյեկտ կդառնա նաև շաքարանկային հիդրոլիզատների գործարանը, որի կառուցումը նույնպես նախատեսված է իրականացնել ընթացիկ հնգամյակում։ Գործարանի արտադրանքը՝ կերի շաքարանկերը, պետք է ապահովեն հանրապետության թռչնաբուծական տնտեսությունները խտացված կերով, դրանով հնարավոր կլինի զգալի չափով զարգացնել Հայաստանի անասնաբուծությունը։ Այդ գործարանի համար հումքային բազա կծառայեն, հիմնականում սննդարդյունաբերության ձեռնարկությունների մնացորդները և գյուղատնտեսության մեջ չօգտագործվող նյութերը։ Պետք է նշել, որ հանրապետության գյուղատնտեսությունն ունի զգալի հումքային բազա, որը կերային արժեք չի ներկայացնում և կարող է հիմք ծառայել մեզ մոտ կերային շաքարանկերի արտադրությունն ընդլայնելու համար։

1968 թվականին հանրապետությունում կսկսվի բակտերիալ պրեպարատների գործարանի կառուցումը Աբովյան քաղաքում։ Գործարանը հիմնականում կարտադրի բակտերիալ ինսեկտիցիդներ (գործարկման ժամանակաշրջանում 150 տոննա)։ Նախատեսված է տեխնոլոգիական ռեգլամենտների կարգավորման և բակտերիաների նոր արդյունավետ ձևերի օգտագործման շնորհիվ իջեցնել արտադրվող պրեպարատների ինքնարժեքը։ Գործարանը կթողարկի նաև հողը պարարտացնող բակտերիալ պրեպարատներ՝ նիտրագին և ազոտոբակտերին, որոնք, նպատակահարմար օգտագործման դեպքում, տալիս են բերքի զգալի հավելում, մասնավորապես նիտրագինը, որը թիթեռնածաղկավոր կուլտուրաների բերքատվությունը բարձրացնում է, միջին հաշվով, 15—20 տոկոսով։ Գործարանի արտադրանքի մեջ են մտնում նաև սիլոսային մակարդները, որոնց կարիքը ներկայումս զգալիորեն մեծ է։

Միկրոբիոլոգիական արտադրության խոշոր օջախ է Սպիտակի շաքարի գործարանի լիմոնաթթվի արտադրամասը, որի կարողությունը նախատեսված է զգալի չափով ավելացնել այս հնգամյակում։ Այստեղ ևս մեծ անելիքներ կան լիմոնաթթվի արտադրությունը խորքային մեթոդի փոխադրելու ուղղությամբ, որը թույլ կտա համարյա կրկնապատկել այդ արժեքավոր նյութի ելունքը և զգալի չափով տնտեսել հումքը։

Վիտամինների գործարանը, որ կառուցվում է Երևանում, կարտադրի մեծ քանակությամբ C վիտամին, օգտագործելով միկրոբիոլոգիական մեթոդը: Շատ կարևոր է այլ վիտամինների, մասնավորապես A վիտամինի, արտադրության տեխնոլոգիայի բարելավման մեթոդների մշակումը միկրոբիոլոգիական ռեակցիաների օգնությամբ:

Հայկական ՍՍՀ-ում միկրոբիոլոգիական արդյունաբերության զարգացումը պետք է հենվի համապատասխան նյութատեխնիկական բազայի վրա, որը, ցավոք, ներկայումս գտնվում է անբավարար վիճակում: Շատ բան կա անելու տեխնոլոգիական սարքավորման և նրա շահագործման գծով որակյալ կադրեր պատրաստելու ուղղությամբ, ինչպես նաև համապատասխան շինարարական-մոնտաժային բազայի ստեղծման ասպարեզում:

Միկրոբիոլոգիական արդյունաբերության մի շարք ձեռնարկությունների նախագծային և տեխնիկական հարցերի մշակման ընթացքում, Հայկական ՍՍՀ-ում աճել են նախագծողների, տեխնոլոգների և կոնստրուկտորների որակյալ կադրեր: Հասունացել է միկրոբիոլոգիական արդյունաբերության գծով նրանց մասնագիտացված նախագծային միասնական կազմակերպության մեջ միավորելու անհրաժեշտությունը, կազմակերպություն, որը ներկայումս շատ անհրաժեշտ է ընդհանրապես մեր երկրի համար՝ միկրոբիոլոգիական արդյունաբերության բնագավառում կատարվող նախագծային-կոնստրուկտորական այսպիսի մեծածավալ աշխատանքների պայմաններում: Դրանով իսկ մեզ մոտ, հանրապետությունում կստեղծվի գիտահետազոտական, փորձա-արտադրական և նախագծային-կոնստրուկտորական աշխատանքների արդյունավետ կոմպլեքս, առանց որի անհնար է գիտության նվաճումների հաջող ներդրումը արտադրության մեջ:

Հայաստանի ԿԿ Կենտկոմի և Հայկական ՍՍՀ Մինիստրների սովետի վերոհիշյալ որոշմամբ նշված են խոշոր ու պատասխանատու խնդիրներ մեր հանրապետությունում գիտահետազոտական աշխատանքների բնագավառում:

Պետական կարևորություն ունեցող խոշոր գործ է մեր հանրապետությունում գոյություն ունեցող միկրոբիոլոգիական արտադրությունների ինտենսիվացման մեթոդների մշակումը: Այդ, առաջին հերթին, վերաբերում է գինեգործական արդյունաբերությանը, պանրագործությանը, սննդարդյունաբերության, հացաթխման և մի շարք այլ ճյուղերին: Որոշ դեպքերում դրան պետք է հասնել արտադրության տարբեր էտապներում միկրոօրգանիզմների ակտիվ ձևերի կիրառմամբ, իսկ այլ դեպքերում՝ տեխնոլոգիական նոր արդյունավետ սխեմաների, մասնավորապես պրոդուկտների ստացման հարահոս, անընդմեջ եղանակի մշակմամբ: Պետք է խոստովանել, որ մեզ մոտ խմորման արդյունաբերության մեջ թերագնահատվում է միկրոօրգանիզմների նոր ակտիվ ձևերի ստանալու և արտադրության մեջ արմատավորելու ուղղությամբ տարվող աշխատանքը: Օգտագործվում են կամ հայրենական, խառը մերաններ, կամ միկրոբների այնպիսի ձևեր, որոնք փոխանցվում են տասնամյակների ընթացքում:

Բայց չէ՞ որ միկրոօրգանիզմների նոր, ակտիվ ձևեր գտնելով և դրանք արտադրության մեջ արմատավորելով հնարավոր կլինի զգալի չափով բարձրացնել խմորման արդյունաբերության շատ ճյուղեր, երկրին տալ հարյուր միլիոնավոր ռուբլի եկամուտ, առանց մեծ ծախսերի և առանց արտադրության տեխնոլոգիայի խիստ փոփոխությունների:



Հայաստանում ժամանակակից միկրոբիոլոգիական արդյունաբերության խոշոր օբյեկտների ստեղծումը մեր հանրապետության գիտության առջև դրել է մի շարք նոր խնդիրներ. առավել կարևորներից է միկրոբիոլոգիական արտադրությունների տեխնոլոգիական հարցերի մշակումը, որը մինչև վերջերս անտեսվել, տեղ չի գտել գիտահետազոտական հիմնարկների թեմատիկայում: Այդ գործում արմատական բեկում կատարելու անհրաժեշտ պայմանը՝ միկրոբիոլոգիական հիմնարկներին առընթեր ժամանակակից փորձա-արդյունաբերական տեղակայանքների և տեխնոլոգիական լաբորատորիաների կազմակերպումն է:

Միկրոբիոլոգիական արդյունաբերության բնագավառում հանրապետության կենտրոնական գիտահետազոտական հիմնարկը Հայկական ՍՍՀ գիտությունների ակադեմիայի միկրոբիոլոգիայի ինստիտուտն է: Վերջին երեք տարիներում ինստիտուտը մի շարք պատասխանատու առաջադրանքներ է կատարել Հայկական ՍՍՀ-ում միկրոբիոլոգիական արդյունաբերության հեռանկարային ճյուղերի կազմակերպման ուղղությամբ: Մշակված է նախագծային-տեխնոլոգիական դոկումենտացիա՝ միկրոբիոլոգիական սինթեզի խոշոր փորձնական կայան կազմակերպելու համար, մասնավորապես լիզին, միկրոբային ֆերմենտներ և այլ պրեպարատներ ստանալու նպատակով: Ինստիտուտն ավարտել է Աբովյանի բակտերիալ պրեպարատների գործարանի տեխնոլոգիական ռեգլամենտի և նախագծային առաջադրանքի մշակումը: Ավարտվում են ինստիտուտում տեխնոլոգիական բաժին կազմակերպելու աշխատանքները, որը անմիջականորեն պետք է մշակի մեզ մոտ ստեղծվող միկրոբիոլոգիական գործարանների արտադրական թեմատիկան:

Մեր հանրապետությունում շատ բան կա անելու միկրոբիոլոգիական արդյունաբերության ստեղծվող օբյեկտները որակյալ մասնագետներով ապահովելու համար: Արդեն ամենամոտիկ տարիներում մեզ հարկավոր են հարյուրավոր միկրոբիոլոգներ և տեխնոլոգներ, այդ պետք է խիստ անհանգստացնի հանրապետության բարձրագույն ուսումնական հաստատություններին: Համապատասխան մարմինները պետք է լուծեն այս հարցը:

Մեր հանրապետությունում միկրոբիոլոգիական արդյունաբերության նախատեսված խնդիրների հաջող լուծումը կհանդիսանա ժողովրդի բարեկեցության մակարդակի բարձրացման և ժողովրդական տնտեսության զարգացման կարևոր պայմանը:



# ԱՐՏԱԴՐՈՒԹՅԱՆ ԻՆՏԵՆՍԻՎԱՑՄԱՆ ԿԱՐԵՎՈՐ ՊԱՅՄԱՆԸ

Մ. ԳԵՎՈՐԳՅԱՆ

Տնտեսական գիտությունների թեկնածու, դոցենտ

Մասնագիտացված խոշոր արտադրությունը, որպես կանոն, այսօր վար-
վում է ինտենսիվ, միավոր հողատարածության և մեկ անասնագլխաքանակի
հաշվով՝ նյութական և աշխատանքային քիչ ծախսումներով ստացվում է
ավելի շատ արտադրանք, բարձրանում է աշխատանքի արտադրողականությու-
նը, իջնում արտադրված մթերքների ինքնարժեքը: Խոշոր կոլտնտեսություն-
ները, սովխոզներն ու դրանց ներտնտեսային ստորաբաժանումները (բա-
ժանմունքները, ֆերմաները և բրիգադները) տնտեսապես ավելի ձեռնտու
են, քան մանրերը: Դրանց արտադրության կենտրոնացման պայմաններում
բարձրանում է աշխատանքի արտադրողականությունը, կրճատվում անուղ-
ղակի, ոչ-արտադրական ծախսերը, դրանով իսկ նվազում են մեկ միավոր ար-
տադրանքի վրա կատարվող ծախսերը:

ՍՄԿԿ Կենտկոմի փետրվարյան (1964 թ.) պլենումի որոշման մեջ աս-
ված է. «Անհրաժեշտ է մոտակա տարիներին իրագործել անասնապահական
ֆերմաների մասնագիտացումն ու խոշորացումը, որը հնարավորություն կըն-
ձեռի լայնորեն կիրառել մեքենայացումը, բարձրացնել աշխատանքի արտա-
դրողականությունը և իջեցնել արտադրանքի ինքնարժեքը»: Անասնաբուծա-
կան մթերքների արտադրության շեշտակի բարձրացման և ինքնարժեքի իջեց-
ման գործում, մի շարք հիմնական գործոնների հետ միասին, կարևոր նշա-
նակություն ունեն անասնաբուծության արտադրության կենտրոնացումն ու
դրա ստորաբաժանումների խոր մասնագիտացումը:

Գյուղատնտեսական ձեռնարկությունների արտադրության շահութաբե-
րության մակարդակի վրա ազդող գործոնների մեջ նշանակալից տեղ ունի
ինչպես ձեռնարկությունների, այնպես էլ դրանց ներտնտեսային ստորաբա-
ժանումների մեծությունների ճիշտ սահմանումը: Այդ մեծությունները պետք
է որոշել երկրի ամեն մի զոնայի համար առանձին՝ ելնելով արտադրության
կենտրոնացման, մասնագիտացման և աշխատանքների մեքենայացման աս-
տիճանից: Այդ նույն սկզբունքից պետք է ելնեն նաև մեր հանրապետության



կոլտնտեսությունների անասնաբուծական ֆերմաների մեծությունը որոշելիս:

Հանրապետության տարբեր շրջանների բնատնտեսական պայմանների
բազմազանությունը թելադրում է շերտավորել անասնաբուծական ֆերմաների
կենտրոնացումը՝ ելնելով դրանց զարգացման ուղղությունից և մասնագի-
տացման աստիճանից: Ուսումնասիրությունները ցույց են տալիս, որ մեր
հանրապետությունում, նույնիսկ միևնույն բնատնտեսական պայմաններում,
նույնատիպ արտադրական ուղղություն ունեցող կոլտնտեսությունների կաթն-
ապրանքային ֆերմաներն իրենց այժմյան մեծությամբ (կովերի գլխաքա-
նակով, հողատարածությամբ, անասունների գլխաքանակի խտությամբ, հա-
մախառն արտադրանքի ծավալով և այլն) խիստ տարբերվում են միմյանցից:
Այդպես է Լոռվա գյուղատնտեսական գոտու կոլտնտեսություններում, ուր
առավել զարգացած է կաթնապրանքային տավարաբուծությունը, որն այդ
գոտու տնտեսություններում անասնաբուծության զարգացման հիմնական ու
գլխավոր ուղղությունն է լինելու: Տավարաբուծությունն այդ գոտու տնտեսու-
թյունների առավել արդյունավետ և եկամտաբեր ճյուղն է. նրա տեսակարար
կշիռը ամբողջ անասնաբուծության համախառն արտադրանքի մեջ 1962—
1965 թթ. կազմել է 75—75,4, մսի համախառն արտադրանքի մեջ՝ 66—62
տոկոս:

Ստեփանավանի և Կալինինոյի շրջանների բոլոր կոլտնտեսություններն
ունեն մասնագիտացված կաթնապրանքային ֆերմաներ, սակայն այդ գո-
տու նույնիսկ միատիպ և միևնույն արտադրական ուղղություն ունեցող կոլ-
տնտեսություններում կան տարբեր մեծության կաթնապրանքային ֆերմա-
ներ: Այսպես, Ստեփանավանի և Կալինինոյի 31 կոլտնտեսություններից 2-ն
իրենց ֆերմաներում ունեն մինչև 100-ական կով, 7-ը՝ 200, 19-ը՝ 201—500
և 3-ը՝ 700-ից ավելի կով: Պետք է ասել, որ ընդհանրապես մեծ գյուղերի
կոլտնտեսությունները (ըստ հողատարածության և տնտեսությունների թվի)
ունեն խոշոր ֆերմաներ, կովերի մեծ գլխաքանակ: Սակայն, այս երևույթը
հատուկ չէ այդ շրջանի բոլոր կոլտնտեսություններին: Այսպես, Նովոսելցովոյի
կոլտնտեսությունն իր հողատարածությամբ և տնտեսությունների թվով ավե-
լի փոքր է, քան Լոռի Բերդ և Մաքսիմ Գորկի գյուղերի կոլտնտեսությունները,
բայց ունի ավելի խոշոր կաթնապրանքային ֆերմա, քան վերոհիշյալ երկու
կոլտնտեսությունները: Գյառգյառ գյուղի կոլտնտեսությունը և՛ հողատարա-
ծությամբ, և՛ տնտեսությունների թվով շատ ավելի մեծ է, քան նրա հարև-
վան Պուշկինո գյուղի կոլտնտեսությունը, սակայն վերջինիս կաթնապրան-
քային ֆերմայում կովերի գլխաքանակը շուրջ 2 անգամ ավելի է: Անկաս-
կած է՝ կաթնապրանքային ֆերմաների մեծության օպտիմալ չափերը պետք
է սահմանել ամեն մի գյուղատնտեսական գոտու համար առանձին՝ նկատի
ունենալով տավարաբուծության մասնագիտացման ուղղությունն ու աստի-
ճանը:

Զարգացած տավարաբուծական ուղղության կոլտնտեսություններում
կաթնապրանքային ֆերմաներն ավելի խոշոր պետք է լինեն քան բուսաբու-
ծական հիմնական ապրանքային մթերքներ արտադրող կոլտնտեսություննե-
րում: Ֆերմաներում կովերի գլխաքանակի մինիմումը պետք է այնքան լինի,
որ անասնաբուծական աշխատատար պրոցեսների մեքենայացումը տնտեսա-
պես դառնա արդյունավետ, ժամանակակից էլեկտրակթի կայանքները օգ-
տագործվեն լրիվին և բարձր արտադրողականությամբ: Կյանքը ցույց է տա-

լիս, որ աշխատատար պրոցեսների մեքենայացումը փոքր ֆերմաներում տնտեսապես չի արդարացնում. այստեղ մեկ կովի պահպանման կամ մեկ ցենտներ կաթի արտադրանքի հաշվով ավելի շատ կապիտալ ներդրումներ են կատարվում, քան խոշոր ֆերմաներում։

Անասնաբուծական ֆերմաների մեծությունը կախված է նաև բուսաբուծության-կերահայթայթման ինտենսիվության աստիճանից, ինչպես և անասունների պահվածքի ու կերակրման եղանակներից։ Կաթնապրանքային ֆերմայի օպտիմալ չափի սահմանման հիմնական չափանիշը 100 հեկտար օգտագործելի հողերի ու մեկ կովի հաշվով առավել շատ բարձրորակ և միաժամանակ ցածր ինքնարժեք ունեցող արտադրանքի ստացումն է։

Հարց է առաջանում, լուվա գոտու միանման բնատնտեսական պայմաններ ունեցող կոլտնտեսությունների այժմյան կաթնապրանքային ֆերմաներից (նույնատիպ ուղղության) տավարաբուծության զարգացման համար ո՞րն է իր չափով (մեծությամբ) լավագույնը։ Կաթնապրանքային ֆերմաների ինչպիսի՞ մեծության (ըստ կովերի գլխաքանակի կենտրոնացման) դեպքում նվազագույն աշխատանքային ու նյութական ծախսումներով գյուղատնտեսական հարյուր հեկտար հողատարածության և մեկ կովի հաշվով ավելի շատ արտադրանք կստացվի։

Ստեփանավանի և Կալինինոյի շրջանների կոլտնտեսությունների 31 կաթնապրանքային ֆերմաների արտադրական գործունեության ցուցանիշների վերլուծությունը ցույց է տալիս, որ սրանց արդյունավետությունը, արտադրա-էկոնոմիկական ցուցանիշներն ուղղակիորեն կապված են նրանց մեծության, կովերի գլխաքանակի, կենտրոնացման հետ՝ բայց որոշակի սահմաններում, որը, անկասկած, պայմանավորված է արտադրապրոցեսների այժմյան մեքենայացման մակարդակով։

Կաթնապրանքային ֆերմաների արդյունավետության ցուցանիշները Ստեփանավանի և Կալինինոյի շրջանների տնտեսություններում 1962 թ. *(ըստ ֆերմաների մեծության)*

| Կովերի գլխաքանակը ֆերմաներում | Կոլտնտեսությունների քանակը խմբերում | Կովի միջին կաթնատվությունը (կգ) | 100 հեկտար օգտահողերի հաշվով | | | |
|---|---|---|---|---|---|---|
| | | | կով. գլխ. | միս տավարի (ցենտ.) | կաթ (ցենտ.) | համախառն արտադրանք (ռուբ.) |
| Մինչև 200 կով . . . . . | 9 | 1565 | 12 | 17,6 | 181 | 2897 |
| 201 300 » . . . . . | 9 | 1854 | 15.5 | 19,6 | 245 | 4311 |
| 301—400 » . . . . . | 8 | 2075 | 16,6 | 30,3 | 330 | 6250 |
| 401—500 » . . . . . | 2 | 2093 | 14,5 | 31,8 | 295 | 5360 |
| 700-ից ավելի . . . . . | 3 | 1914 | 13,4 | 16,0 | 254 | 5183 |
| Շրջանների կոլտնտեսություններում միջինը՝ . | 31 | 1915 | 14,1 | 23,6 | 264 | 4871 |

Աղյուսակում բերված 31 կաթնապրանքային ֆերմաների խմբավորումը (ըստ կովերի քանակի) ցույց է տալիս, որ ամենից ցածր արտադրացուցանիշներ ունեն առաջին խմբի՝ մինչև 200 կով ունեցող ֆերմաները, իսկ բարձր արտադրացուցանիշներ՝ երրորդ և չորրորդ խմբի (301—400 և 401—500 կով)



ֆերմաները։ Ավելի բարձր խմբում դասվող (700-ից ավելի կով) ֆերմաների ցուցանիշները, համեմատած երրորդ և չորրորդ խմբերի հետ, բավարար չեն։ Առաջին խմբում դասվող ֆերմաներում մեկ կովի միջին տարեկան կաթնատվությունը կազմել է 1565 կգ, երկրորդում՝ 1854, երրորդում՝ 2075, չորրորդում՝ 2093, հինգերորդում՝ 1914 կգ։

Անասնաբուծական մթերքների արտադրությունը 100 հեկտար հողատարածության հաշվով ունեցել է նույնանման օրինաչափություն։ Այսպես, երրորդ և չորրորդ խմբերում դասվող կաթնապրանքային ֆերմաները, որոնք ունեն 301—400 և 401—500 կով, 100 հեկտար հողատարածության հաշվով արտադրել են միս՝ 1,7, կաթ՝ 1,6 անգամ ավելի, քան առաջին խմբի կաթնապրանքային ֆերմաները։

Վերը բերված աղյուսակի տվյալները ցույց են տալիս, որ ֆերմաների մեծությունը ուղղակիորեն ազդում է միավոր տարածության և մեկ կովի հաշվով համախառն արտադրանքի ավելացման վրա։ Առաջին խմբերի կաթնապրանքային ֆերմաները 100 հեկտար հողատարածության հաշվով 2,1 անգամ ավելի քիչ համախառն արտադրանք են ստացել, քան երրորդ և չորրորդ խմբերի ֆերմաները։ Դա բացատրվում է նրանով, որ խոշոր ֆերմաներում աշխատող ձեռքերն ու արտադրամիջոցներն առավել նպատակահարմար են օգտագործվում, կիրառվում է առաջավոր տեխնոլոգիա, որի շնորհիվ կրճատվում են ղեկավար և սպասարկող անձնակազմի պահպանման վրա կատարվող ծախսումները։

Ստեփանավանի և Կալինինոյի շրջանների կոլտնտեսությունների խոշոր կաթնապրանքային ֆերմաներում ոչ միայն ավելի շատ արտադրանք է տրվել միավոր հողատարածության և մեկ գլուխ կովի հաշվով, այլև տրված արտադրանքն ունեցել է ցածր ինքնարժեք։ Ֆերմաներում կովերի գլխաքանակի կենտրոնացման շնորհիվ իջնում են արտադրված մթերքների ինքնարժեքը և միավոր արտադրանքին ընկնող աշխատանքային ծախսումները։ Այդ մասին են վկայում ստորև բերվող աղյուսակի տվյալները։

Ստեփանավանի և Կալինինոյի շրջանների տավարաբուծական ֆերմաների արդյունավետության ցուցանիշները *(կախված ֆերմաների մեծությունից)* 1964 թ.

| Կովերի գլխաքանակը ֆերմաներում | 100 հեկտ. հողատարածության հաշվով | | | Մեկ ցենտ. արտադրանքի ինքնարժեքը | | Մեկ ցենտ. արտադրանքի ծախսումները մարդ-օր | |
|---|---|---|---|---|---|---|---|
| | համախառն արտադրանքը (ռուբ.) | կաթ (ցենտ.) | միս կենդանի քաշով | միս կենդանի քաշով | կաթ | միս կենդանի քաշով | կաթ |
| Մինչև 200 կով . . . . | 4060 | 221 | 23,7 | 92,8 | 15,7 | 14,5 | 2,5 |
| 201—300 » . . . . . | 6223 | 311 | 25,3 | 88,6 | 13,8 | 13,2 | 1,8 |
| 301—400 » . . . . . | 7046 | 364 | 27,9 | 86,4 | 13,2 | 9,9 | 1,7 |
| 401—500 և ավելի կով . | 5020 | 265 | 22,3 | 90,2 | 13,4 | 9,9 | 1,6 |

Այսպիսով՝ նույն շրջանների տնտեսությունների կաթնապրանքային ֆերմաների 1964 թվականի արտադրական գործունեության տվյալների վերլուծությունը նույնպես ցույց է տալիս, որ հիմնականում նույն օրինաչափությամբ, ինչ 1962 թվականին (տե՛ս նախորդ աղյուսակը) խոշոր ֆերմաները միավոր հողատարածության և մեկ գլուխ կովի հաշվով ավելի շատ կաթ ու միս են արտադրել, քան նույնանման պայմաններում գտնվող փոքր կաթնապրանքային ֆերմաները։ Հետևապես, արտադրական բարձր ցուցանիշները բնորոշ են խոշոր ու մասնագիտացված տավարաբուծական ֆերմաների համար։ Միաժամանակ, աղյուսակում բերված տվյալները ցույց են տալիս, որ այդ կաթնապրանքային ֆերմաներում կովերի գլխաքանակի մեծության համեմատ (որոշակի սահմաններում) կաթի ու մսի արտադրության բարձր ցուցանիշներին զուգընթաց համաչափորեն իջնում են կաթի և մսի արտադրության վրա կատարված աշխատանքային ծախսումներն ու դրանց ինքնարժեքը։ Այսպես, առաջին խմբի 9-ը ֆերմաներում մեկ ցենտներ կաթի ինքնարժեքը միջին հաշվով կազմել է 15,7, երկրորդ խմբի 7 ֆերմաներում՝ 13,8, իսկ երրորդ և չորրորդ խմբերի 7 և 8 ֆերմաներում՝ 13,2—13,4 ռուբլի, այսինքն՝ 18—20 տոկոսով ցածր։ Այդ ֆերմաներում, նույն համաչափությամբ, ցածր ինքնարժեքով է արտադրվել տավարի միսը։ Առաջին խմբի ֆերմաներում մեկ ցենտներ մսի (կենդանի քաշը) ինքնարժեքը 1964 թ. կազմել է 92,8, երկրորդինը՝ 88,6, երրորդինը՝ 86,4, չորրորդինը՝ 90,2 ռուբլի։

Կաթի և տավարի մսի արտադրության եկամտաբերությունը, որպես կանոն, ավելի բարձր է 400—500 կով ունեցող ֆերմաներում և ցածր՝ մինչև 200 կով ունեցող ֆերմաներում։ Այսպես, այդ մթերքների արտադրության եկամտաբերությունն առաջին խմբի ֆերմաներում միջին հաշվով կազմել է. կաթինը՝ 12, մսինը՝ 26 տոկոս, երրորդ և չորրորդ խմբերի ֆերմաներում համապատասխանաբար՝ 9 և 75 տոկոս։

Այդ շրջանների կոլտնտեսությունների կաթնապրանքային ֆերմաների 1965 թվականի արտադրական գործունեության ուսումնասիրությունը նույնպես ցույց է տալիս, որ հիմնականում նույն օրինաչափությամբ, ինչ 1962 և 1964 թվականներին, 300—500 կով ունեցող ֆերմաները, միավոր հողատարածության հաշվով, ավելի շատ կաթ և միս են արտադրել, քան մինչև 300 կով ունեցողները։

Այսպիսով, Ստեփանավանի և Կալինինոյի շրջանների կոլտնտեսությունների կաթնապրանքային ֆերմաների արտադրական գործունեության մանրազնին ուսումնասիրությունը ակնհայտ է դարձնում խոշոր անասնաբուծական ֆերմաների տնտեսական արդյունավետությունը մանրերի նկատմամբ։ Այդ գոտում առավել արտադրատնտեսական ցուցանիշներ ունեն 301—400 և 401—500 կով ունեցող ֆերմաները, լավագույն ֆերմաների համեմատ ցածր ցուցանիշներ՝ առավել խոշոր (700 և ավելի կով ունեցող) ֆերմաները։

100 հեկտար գյուղատնտեսական օգտագործելի հողատարածության և մեկ կովի հաշվով համեմատաբար ավելի ցածր արտադրական ցուցանիշներ, ինչպես նաև մեկ միավոր արտադրանքի հաշվով ծախսումների բարձր ցուցանիշներ ունեն մինչև 200 կով ունեցող ֆերմաները։ Հետևապես, մեր կարծիքով, Լոռվա գոտու կոլտնտեսություններում ժամանակակից օպտիմալ կաթնապրանքային ֆերման պետք է ընդունել 400—500 կով ունեցողը և դրան համապատասխան խոշոր եղջերավոր անասունների մյուս սեռահասա-



կային խմբերի գլխաքանակը՝ նախրի նորմալ ընդլայնված վերարտադրությունն ապահովելու համար։

Այդ շրջանների կոլտնտեսությունների 700 և ավելի կով ունեցող ֆերմաների համեմատաբար ցածր արտադրական ցուցանիշները բացատրվում են նախ՝ անասունների գլխաքանակի ցրվածությամբ (տեղաբաշխված են մի քանի կետերում)։ Այս հանգամանքը դժվարացնում է տնտեսավարումը։ Մյուս կողմից՝ կաթնապրանքային ֆերմաների աշխատանքային պրոցեսների և կերհայթայթման ու կերակրման եղանակների մեքենայացման ցածր մակարդակը որոշակիորեն սահմանափակում է կովերի գլխաքանակի ավելի մեծ քանակության արդյունավետ կենտրոնացումը։

Բացի այդ, վերը նշված կաթնապրանքային ֆերմաներում կովերի գլխաքանակի օպտիմալ մեծությունը սահմանելիս պետք է ելնել այդ ֆերմաների կոմպլեքս մեքենայացման տնտեսական արդյունավետությունից։ Ֆերմաներում Յոլչկա կամ YDC—3 կթի կայանքի տեղադրման դեպքում, մեկ—երկու կթվորը 2—2,5 ժամվա ընթացքում կարող են կթել 110—130 կով։ Հաշվի առնելով և այն հանգամանքը, որ, միաժամանակ, կովերի շուրջ 10—15 տոկոսը ցամաքած կլինեն, իսկ 5-ը՝ ծնարանում, ապա մեկ կթի կայանքը կըսպասարկի ոչ-պակաս 150 կով, երկու կթի կայանք տեղադրելիս՝ 300, երեքի դեպքում՝ 450 կով և այլն։

Ստեփանավանի և Կալինինոյի կոլտնտեսությունների զգալի մասը կաթնապրանքային ֆերմաներում դեռևս առաջիկա հնգամյակում կունենա կովերի գլխաքանակի մինիմալ մեծություն։ Այդ կաթնապրանքային ֆերմաների խոշորացումը (մինչև դրանց օպտիմալ չափը) մոտակա տարիներին, առաջին հերթին, կընթանա 100 հեկտար հողատարածության հաշվով՝ կովերի գլխաքանակի խտության բարձրացման հաշվին։ Բերված աղյուսակներում առաջին և երկրորդ խմբի կաթնապրանքային ֆերմաները (կոլտնտեսությունները) 100 հեկտար օգտագործելի հողի հաշվով ունեն ընդամենը 12—15,5 կով։ Մինչդեռ, այդ խմբի կոլտնտեսությունները ունեն ընդարձակ բնական խոտհարքներ և արոտներ, այսինքն՝ ամենակարևոր պայմանը, որպեսզի կովերի խտությունը 100 հեկտար հողատարածության հաշվով բարձրանա 20-ի, դրանով զգալիորեն կմեծանան ֆերմաները և կհասնեն տվյալ գոտու համար վերը նշված օպտիմալ չափին։ Կաթնապրանքային ֆերմաների խոշորացման երկրորդ ուղին փոքր, մինչև 100 կով ունեցող կոլտնտեսությունների (Հովնանաձոր, Ղըլդաշ և այլն) միավորումն է իրենց սահմանակից կոլտնտեսություններին։



# ՆԱՄԱԿՆԵՐ ԵՎ ԹՂԹԱԿՑՈՒԹՅՈՒՆՆԵՐ



## ՀԱՅԱՍՏԱՆԻ ՊԵՌԼԻՏՆԵՐԸ

Վերջին տարիներին Սովետական Միությունում արդյունաբերության ու շինարարության մեջ լայնորեն կիրառվում է պեռլիտը, որն արժեքավոր հումք է։ Դա հրաբխային թթու է, ապակենման, ջուր պարունակող ապար, որը 900—1200 աստիճան ջերմության պայմաններում փքվում է ու դրա շնորհիվ ծավալը մեծանում է 10—20 անգամ։ Փքուն պեռլիտը շինարարության մեջ օգտագործվում է որպես բետոնի թեթև լցանյութ, ջերմա-մեկուսիչ շինվածքային արդյունաբերության մեջ՝ լավագույն ջերմամեկուսիչ։ Այն կիրառվում է նաև քիմիական (ճենապակու և հախճապակու) արդյունաբերության մեջ։

Հայաստանում պեռլիտի հումքի ընդհանուր հանույթը 1964 թվականին կազմում էր 712 հազ. խոր. մետր, որից միայն 35 հազ. խոր. մետրն է օգտագործվել փքուն պեռլիտ ստանալու համար, իսկ մնացածը օգտագործվել է բնական վիճակում՝ իբրև բետոնի թեթև լցանյութ։ 1962 թվականին Սովետական Միությունում սկսվեց ֆրակցիոնացված պեռլիտ արտադրող երեք խոշոր գործարանի կառուցումը, որից Ուկրաինայում՝ 152, Բուրիաթիայում՝ 145 և Հայաստանում՝ 250 հազ. խոր. մետր կարողությամբ։ Հայաստանում այդ գործարանը շահագործման հանձնվեց անցյալ տարի։

Այս գործարանների ֆրակցիոնացված պեռլիտի արտադրության բազայի վրա Սովետական Միությունը հնարավորություն կունենա տարեկան ստանալու ավելի քան 3 միլիոն խոր. մետր փքուն նյութ։

Թեթև արհեստական մյուս լցանյութերի (կերամզիտ, ագլոպորիտ և այլն) համեմատությամբ փքուն պեռլիտի տեխնիկա-տնտեսական ցուցանիշների առավելությունները ակնհայտ են, սակայն դրա արտադրությունը պատշաճ չափով չի զարգանում։ Այդ հետևանք է այն բանի, որ արդյունաբերության երիտասարդ, բայց մեծ հեռանկար ունեցող այս ճյուղում կապիտալ ներդրումները ձգձգվում են, չի իրագործվում ՍՍՀՄ Մինիստրների սովետի «Փքուն պեռլիտի արտադրության զարգացման մասին» որոշումը։

Գործող կայանքներն այժմ թողարկում են ցածրորակ արտադրանք և տեխնիկապես հետամնաց են։ Անբավարար են օգտագործվում եղած կարողությունները։ Անհամամասնություն գոյություն ունի ֆրակցիոնացված պեռլիտ թողարկող ձեռնարկությունների արտադրանքի և փքուն պեռլիտների արտադրության կարողությունների ավելացնելու գործում։



Ներկայումս փքուն պեռլիտի ինքնարժեքը շատ բարձր է. այն տատանվում է 5 ռ. 74 կ. մինչև 22 ռ., մինչդեռ տարեկան 30—50 հազ. խոր. մետր արտադրական կարողություն ունեցող արտադրամասերում նախատեսված է 1 խոր. մետրի ինքնարժեքը հասցնել 4 ռ. 35 կ.— 4 ռ. 55 կ.։

Գործող կայանքների ցածր արտադրողականության, հումքի և նյութերի ոչ ճիշտ հաշվառման ու օգտագործման հետևանքով մեծանում է աշխատողների թիվը, ավելանում են սարքավորումների վերանորոգման, վառելիքի, էլեկտրաէներգիայի, ջրի և այլ նյութերի ծախսերը, բարձրանում է արտադրանքի ինքնարժեքը։

Այժմ կերամզիտի ձեռնարկությունները հանքանյութը այրելուց անմիջապես կերամզիտի ավազ չեն ստանում, այն ստացվում է միայն լրացուցիչ աշխատանք կատարելու շնորհիվ, որը 2—2,5 անգամ բարձրացնում է տվյալ լցանյութի 1 խոր. մետրի ինքնարժեքը (հասցնելով 10—18 ռուբլու)։ Ինքնարժեքն իջեցնելու համար անհրաժեշտ է կերամզիտ թողարկող գործարաններում ստեղծել փքուն պեռլիտի կայանքներ (նույն կոմպլեքսի կազմում)։

Արհեստական լցանյութերի արտադրության ավելացման կարևոր գործոն է վառելիքի ծախսումը։ Երկրի կերամզիտ թողարկող գործարանների կեսից ավելին օգտագործում է հեղուկ վառելիք։ Ըստ քիմիական մեքենաշինության գիտահետազոտական ինստիտուտի Իրկուտսկի ֆիլիալի նախագծի, մեկ խոր. մետր փքուն պեռլիտ արտադրելու համար (50 հազ. խոր. մետր կարողություն ունեցող կայանքներում) պայմանական վառելիքի ծախսը կազմում է 46 կգ., իսկ ըստ ջերմանախագծային գիտահետազոտական ինստիտուտի նախագծի՝ 51 կգ.։ Մինչդեռ Միության մասշտաբով կերամզիտի արտադրության վառելիքի միջին պայմանական ծախսը 1 խոր. մետր լցանյութ ստանալու համար 1963 թվականին կազմել է 120,6 կգ., 1964-ին՝ 113 կգ. իսկ 26—50 հազ. խոր. մետր կարողության արտադրամասերում՝ 121,6 կգ.։

Հայաստանի հումքից 1970 թվականին փքուն պեռլիտի արտադրությունը հասցնելով 4660 հազ. խոր. մետրի, հնարավոր կլինի տարեկան տնտեսել ավելի քան 327 հազ. տոննա պայմանական վառելիք (9,2 միլիոն ռուբլի)։

Առաջարկված չափով փքուն պեռլիտը լայնորեն կկիրառվի Անդրկովկասյան հանրապետություններում, Ռուսաստանյան ֆեդերացիայի կենտրոնական ու հարավային շրջաններում, հատկապես արդյունաբերական ու բնակարանային շինարարության խոշոր զոնաներում, ինչպես նաև Միջին Ասիական հանրապետություններում։

Պեռլիտների պանելներով պատրաստված շենքի ընդհանուր կշիռը, 1—464 Ս տիպային նախագծով կառուցված ծանր բետոնե տների համեմատությամբ, իջնում է մոտ 2 անգամ, որի շնորհիվ տնտեսվում է 25 տոկոս ցեմենտ-ավազ և 20 տոկոս պողպատ. ընդ որում, պեռլիտբետոնե պանելների պատրաստման տեխնոլոգիան ավելի հեշտ է, քան շերտավոր երկաթբետոնինը, որը և հնարավորություններ է ընձեռում մեքենայացնելու տվյալ պրոցեսները։ Պեռլիտբետոնե կոնստրուկցիաներից բնակելի և արդյունաբերական շենքերի կառուցման գործում հարուստ փորձ ունեն Կիևի, Օդեսայի, Չիտայի, Իրկուտսկի, Ուլան-Ուդեի և այլ քաղաքների շինարարները, իսկ Հայաստանը, որտեղ կան ամենամեծ հնարավորությունները, բավարարվել է միայն մեկ փորձնական բնակելի շենք կառուցելով։

Ջերմամեկուսիչ շինվածքային արդյունաբերության մեջ փքուն պեռլիտը

կարելի է օգտագործել էներգետիկ և տեխնոլոգիական սարքավորումների, ար-
դյունաբերական տարբեր վառարանների ու կոմունիկացիաների մակերեսների
մեկուսացման համար՝ ավելի քան 900 ջերմաստիճանի պայմաններում, իսկ
սառնամանիքում մինչև —200 աստիճան։

Փքուն պեռլիտից ստացվող ջերմամեկուսիչ նյութերի ինքնարժեքը զգալի
չափով ցածր է ներկայումս օգտագործվող սովելիտային, ասբովերմիկուլիտա-
յին և մյուս նյութերի ինքնարժեքից։ Պեռլիտների արդյունավետությունը մեծ
է հատկապես վակուումփոշիացման-մեկուսացման բնագավառում. այստեղ
դրանք գրեթե 20 անգամ էժան են, քան օգտագործվող, այսպես կոչված, «աէ-
րոգել» նյութերինը, որոնք խիստ դեֆիցիտային են։

Չնայած Հայաստանը բոլոր հնարավոր միջոցներն ունի ջերմամեկուսիչ
նյութեր արտադրելու, սակայն 2—3 անգամ բարձր գներով այդպիսին ներ-
մուծվում է երկրի այլ տնտեսական շրջաններից։ Ուստի, անհրաժեշտ է Արա-
գած պեռլիտ գործարանում կազմակերպել ջերմամեկուսիչ նյութերի արտա-
դրությունը։

Հայաստանի կառավարության որոշմամբ վերոհիշյալ գործարանում նա-
խագծվում է կառուցել տարեկան 50 հազ. տոննա կարողությամբ պեռլիտ
վերամշակող արտադրամաս, որը հնարավորություն կընձեռի ստանալու կա-
նագիտ (բազմատեսակ ապակի ստանալու կոմպլեքսային հումք), մետասիլի-
կատ նատրիա, հեղուկ ապակի և այլ քիմիական նյութեր, որոնք կապահովեն
ժողովրդական տնտեսության տարբեր բնագավառների պահանջները։ Տվյալ
արտադրամասի արագ կառուցումն ու գործարկումը կարևոր նշանակություն
ունի, որի վրա համապատասխան վերադաս օրգանները պետք է լուրջ ուշա-
դրություն նվիրեն։

Հաշվարկները ցույց են տալիս, որ պեռլիտի վերամշակման արտադրա-
մասի կառուցման համար կծախսվի մոտ 4560 հազ. ռուբլի և այն 2—3 տա-
րում կթողարկի ավելի քան 10 մլն ռուբլու համախառն արտադրանք, որի ընդ-
հանուր ինքնարժեքը կկազմի 3890 հազ. ռուբլի։ Հետևաբար տվյալ արտադրա-
մասի կապիտալ ներդրումները կհատուցվեն նորմատիվ ժամկետից շուտ։ Այս-
տեղ խիստ կարևոր է ժամանակի ֆակտորը. որքան արագ կառուցվի արտա-
դրամասը, այնքան մեծ և արդյունավետ կօգտագործվեն կապիտալ ներդրում-
ները։

Նկատի ունենալով պեռլիտի հումքի արտասահմանյան, ինչպես նաև մեր
երկրի պահանջմունքները, Արագած պեռլիտի գործարանն իր ներկա հզորու-
թյամբ 1970 թվականին չի կարող բավարարել այդ պահանջները. ուստի,
նպատակահարմար է, նրա կարողությունները հասցնել տարեկան 250—400—
450 հազ. տոննա։ Մեր կարծիքով, իր բազմաճյուղ արտադրանքով այդ գործա-
րանը հետագայում կդառնա լեռնաքիմիական կոմբինատ։

Ապակու արդյունաբերության և, հատկապես, կիսապիտակ տարայի
ապակու արտադրության համար պետք է հրաժարվել հեռավոր տնտեսական
շրջաններից բերվող թանկարժեք հումքից։ Նպատակահարմար է Հոկտեմբեր-
յանի ապակետարայի գործարանում օգտագործել Թալինի շրջանի Արթենի հան-
քավայրի պեռլիտի ավազը։ Անհրաժեշտ է այստեղ մանրատման ու տեսակա-
վորման ֆաբրիկա կառուցել, որի հումքը, ինչպես նշվեց, կօգտագործվի ապա-
կու արտադրության, իսկ թափթփուկները (որպես լցանյութ)՝ շինարարության
մեջ։ Այս միջոցառումները կտան տնտեսական մեծ արդյունք։



Պեռլիտի հումքի մյուս խոշոր բազան, իր մեծ պաշարներով Հրազդանի
շրջանի երեք խոշոր հանքավայրերն են։ Այստեղ պեռլիտի արտադրության
կազմակերպումը նույնպես անհետաձգելի խնդիր է։ Նախատեսված է հնգամյա-
կում կառուցել մանրատման ու տեսակավորման երկու խոշոր ֆաբրիկա՝ յու-
րաքանչյուրը 1,4 մլն խոր. մետր կարողությամբ, որոնցից մեկը շահագործ-
ման կհանձնվի հնգամյակի վերջում, իսկ մյուսը՝ 1971—1972 թվականներին.
դա հնարավորություն կընձեռի զարգացնելու պեռլիտի վերամշակումը։

Հրազդանի հանգույցի, ինչպես նաև Սևանի ավազանի շրջանների արդյու-
նաբերական ու բնակարանային շինարարության հետագա զարգացման համար,
պեռլիտի ու Հրազդանի լեռնաքիմիական կոմբինատի ցեմենտի առկայության
պայմաններում, նպատակահարմար է արագացնել երկաթբետոնե կոնստրուկ-
ցիաների ու տնաշինական գործարանի կառուցումը՝ տարեկան 250—270 հազ.
խոր. մետր կարողությամբ։ Դրա համար անհրաժեշտ է ստեղծել համապա-
տասխան հարմարանքներ՝ փքուն պեռլիտ ստանալու համար։ Այդ գործարանը
կապահովի պանելների և մյուս կոնստրուկցիաների արտադրությունը։ Մեր
կարծիքով նպատակահարմար է այդ գործարանը կառուցել Հրազդանում կամ
Աբովյանում։

Երևանի տնաշինական կոմբինատի փքուն պեռլիտի կայանքի լրիվ ու ռա-
ցիոնալ օգտագործման հետ մեկտեղ, երաշխավորվում է դրա կարողություն-
ները 10 հազ. խոր. մետրից հասցնել 45—50 հազ. խոր. մետրի և Երևանի
սեյսմիկ պայմաններից ելնելով, շինարարության մեջ օգտագործել ավելի
թեթև կոնստրուկցիաներ։

Հայաստանի անսպառ հումքի բազան հնարավորություն է տալիս խոշոր
չափերով զարգացնել պեռլիտի հանույթը և այն լայնորեն օգտագործել ար-
դյունաբերության և շինարարության բազմազան ճյուղերում։

Ա. ՀԱԿՈԲՅԱՆ
ՍՍՀՄ շինանյութերի արդյունաբերության
մինիստրության քարերի և սիլիկատների
գիտահետազոտական ինստիտուտի ավագ
գիտաշխատող

# ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ԱՇԽԱՏԱՆՔԻ ԿԱՐԵՎՈՐ ՕՂԱԿԸ

Հրահանգիչը՝ շրջկոմի պատասխանատու աշխատողներից է, այն շրջա-
փոկը, որն իր ամենօրյա գործունեությամբ կենդանի կապ է պահպանում շրջ-
կոմի և սկզբնական կազմակերպությունների միջև։ Հրահանգչի աշխատանքն իր
դրական կամ բացասական կնիքն է թողնում կուսակցական օրգանի գործու-
նեության այս կամ այն բնագավառի վրա։

Սկզբնական կուսկազմակերպությունների քարտուղարները և բյուրոյի ան-
դամները հաճախ են հանդիպում դժվարությունների, որոնց հաղթահարման
համար նրանք կուսակցական փորձառու ընկերների կոնկրետ օգնության ու
խորհուրդների կարիքն ունեն։ Այստեղ էլ դարձյալ լուրջ նշանակություն է ստա-
նում կուսշրջկոմի հրահանգչի գործնական օգնությունը հիմնարկ-ձեռնարկու-

թյունների կուսկազմակերպություններին և նրանց քարտուղարներին, դրսևորվում հրահանգչի ձեռներեցությունը:

Քաղաքային միլիցիայի վարչության ավտոտեսչության կուսկազմակերպությունը, որը շուրջ 100 կոմունիստ է միավորում, գործում էր բավական բարդ պայմաններում. կոմունիստները ցրված էին քաղաքով մեկ, կուսբյուրոն, նրա քարտուղար Ն. Միհրանյանը լուրջ դժվարությունների էին հանդիպում ներկուսակցական-քաղաքային աշխատանքների կազմակերպման ճանապարհին: Նրանք չէին կարողանում ինչպես հարկն է ներազդել կուսակցական-պետական կարգապահության ամրապնդման վրա:

Ավտոտեսչության կուսկազմակերպությունում ստեղծված վիճակը չվրիպեց կազմակերպությանն սպասարկող հրահանգիչ Ռ. Ստեփանյանի աչքից: Նա հաճախ էր լինում կազմակերպությունում, հանդիպում քարտուղարի, բյուրոյի անդամների, ակտիվի հետ: Հրահանգչի հետ խորհրդակցելով, կուսբյուրոն որոշեց ստեղծել արտադրամասային կազմակերպություններ ու կուսակցական խմբեր: Այդպես էլ եղավ: Վերջիններիս քարտուղարներն ու կուսկազմակերպիչներն ստացան գործնական խորհուրդներ. ինչպես ընտրել կուսժողովի օրակարգը, ինչպես գործնականում կազմակերպել որոշումների կատարումը, ինչպիսի ձևեր ու մեթոդներ գործադրել կոմունիստների պատասխանատվության բարձրացման ու կուսակցական պետական կարգապահության ամրապնդման ուղղությամբ: Հետևողական գործունեությունը տվեց իր առաջին արդյունքները. բարձրացավ ավտոտեսչության կուսակցական կազմակերպության մարտունակությունը, նկատելիորեն բարելավվեց կազմակերպական-քաղաքական աշխատանքը հիմնարկի ներքին օղակներում:

Կոշիկի անհատական պատվերների առաջին ֆաբրիկայի նախորդ հաշվետու ընտրական ժողովում, որին մասնակցում էր շրջկոմի հրահանգիչ Ս. Հովհաննիսյանը, կոմունիստները պահանջեցին, որպեսզի կուսբյուրոն ուժեղացնի դաստիարակչական աշխատանքը կոլեկտիվում, ավելի խոր թափանցի արտադրության էկոնոմիկայի մեջ, առանձնահատուկ ուշադրություն նվիրի թողարկվող արտադրանքի որակին:

Ժողովից ամիսներ էին անցել, բայց ֆաբրիկայում էական առաջխաղացում չէր նկատվում: Հրահանգիչը իր առջև խնդիր դրեց. ավելի հանգամանորեն խորամուխ լինել այդ կազմակերպության գործունեության մեջ: Ս. Հովհաննիսյանի առաջարկությամբ ու անմիջական մասնակցությամբ նախապատրաստվեց և շրջկոմի բյուրոյի քննարկմանը դրվեց ֆաբրիկայի կուսկազմակերպության աշխատանքը՝ ձեռնարկության տեխնիկա-տնտեսական ցուցանիշների կատարման ու թողարկվող արտադրանքի որակի բարձրացման ուղղությամբ: Հարցի մանրակրկիտ ուսումնասիրությունից և հանգամանալից քննարկումից բավական անհրապույր պատկեր պարզվեց: Կատարելով համախառն արտադրանքի պլանային առաջադրանքները, ֆաբրիկան հաճախ թերակատարում էր անհատական պատվերների պլանները, չէր ապահովում շահույթների պլանը: Կուսկազմակերպության բյուրոն անբավարար էր օգտագործում ունեցած հնարավորությունները՝ կուսակցական վերահսկողության ուժեղացման, հանձնարարված գործի նկատմամբ աշխատողների, առաջին հերթին, կոմունիստների պատասխանատվությունը բարձրացնելու համար:

Կազմակերպությանը շրջկոմի բյուրոյի որոշմանը ծանոթացրեց հրահանգիչ Ս. Հովհաննիսյանը: Նա օգնեց կուսբյուրոյին մշակելու որոշման կենսագործման կոնկրետ միջոցառումներ, խորհուրդ տվեց, թե ինչպես աշխուժացնել արհմիութենական և կոմերիտական կազմակերպությունների աշխատանքը: Հովհաննիսյանը մշտապես տեղյակ էր ֆաբրիկայի կոլեկտիվի, կուսակցական կազմակերպության ողջ գործունեությանը, հաճախ էր լինում այնտեղ, զրուցում բանվորների, ինժեներա-տեխնիկական աշխատողների հետ:

Եվ ահա կուսակցական կազմակերպության կազմակերպական և քաղաքական-դաստիարակչական հետևողական աշխատանքը, կոշիկագործների ուժերի հմուտ մոբիլիզացումը բարերար ազդեցություն ունեցան արտադրության բոլոր տեղամասերի վրա: Ծավալված սոցիալիստական մրցությունից ֆաբրիկան հաղթող դուրս եկավ, նվաճեց շրջանային կոմիտեի ու շրջսովետի գործկոմի փոխանցիկ դրոշը: Ֆաբրիկայում նկատելիորեն բարձրացավ աշխատանքի արտադրողականությունը, իջավ ինքնարժեքը, իրացվեցին կանացի և տղամարդկանց նրբագեղ կոշիկների մի քանի տասնյակ նոր մոդելներ, որոնք մեծ պահանջարկ ունեն և՛ հանրապետությունում, և՛ նրա սահմաններից դուրս:

Կուսակցական օրգանի գործունեության կարևոր բնագավառներից մեկն էլ կուսակցության շարքերի աճն է ու երիտասարդ կոմունիստների դաստիարակությունը: Կազմակերպությունների հետ տարվող սիստեմատիկ աշխատանքի շնորհիվ, հատկապես կուսակցության XXIII համագումարից հետո, նկատելի առաջխաղացում կա կուսակցության շարքերի համալրման գործում: Այդ ժամանակամիջոցում կուսակցության շարքերը ընդունվածների քառորդ մասը կանայք են, 97 տոկոսը՝ բարձրագույն և միջնակարգ կրթություն ունեն, մոտ 30 տոկոսը կոմերիտականներ են, երկու երրորդը բանվորներ ու ինժեներա-տեխնիկական աշխատողներ: Նման համալրումը, անշուշտ, նպաստում է կուսակցության որակական կազմի բարելավմանը, նրա հեղինակության ու մարտունակության բարձրացմանը:

Բայց, իհարկե, միշտ չէ, որ կուսշարքերի ընդունելության գործում պահպանվում է կանոնադրական պահանջը: Դեռևս չի հաղթահարված այն թերությունը, երբ առանձին կազմակերպություններ շարունակում են խախտել անհատական ընտրության լենինյան սկզբունքները, թույլ են տալիս լուրջ սխալներ ու վրիպումներ:

Ահա մի բնորոշ օրինակ:

Շրջանի № 1 տնային կառավարչության բավական մեծաթիվ, հիմնականում անհատական կենսաթոշակառուներ միավորող կազմակերպությունը միաձայն կուսթեկնածու էր ընդունել քառասնամյա փականագործ Գ. Մուրադյանին: Կազմակերպությանն սպասարկող հրահանգիչ Ա. Ասատրյանը ընդունելության գործը մանրակրկիտ ուսումնասիրելուց հետո կարողացավ պարզել, որ Մուրադյանը գողության համար նախկինում դատապարտված է եղել ազատազրկման և բարոյական ոչ մի արժանիք չունի կուսակցության շարքերն ընդունվելու համար: Երաշխավորող կոմունիստները, որոնք թեթևակի մոտեցում էին հանդես բերել կուսակցության շարքերի համալրման շատ կարևոր գործի նկատմամբ, ետ վերցրին իրենց երաշխավորությունները, իսկ կուսկազմակերպությունը վերանայեց իր նախկին որոշումն ու այն չեղյալ համարեց:

Ու այսպես, ամենօրյա ուշադիր, հետևողական աշխատանքով շրջկոմի հրահանգիչները օգնում են կազմակերպություններին, ներազդում կուսշարքերի որակական կազմի բարելավմանը:

Հրահանգչի օգնության, խորհուրդների կարիքն ամենից ավելի զգում են սակավանդամ կուսակցական կազմակերպությունները։ Ստեղծվել է, ճիշտ է, սխալ, բայց ամուր արմատավորված մի այսպիսի տրադիցիա. կուսակցության շրջկոմի և վերադաս այլ օրգանների ներկայացուցիչներն այդ կազմակերպություններում քիչ են լինում, դրանք շրջկոմի հրահանգչի տնօրինության ոլորտից շատ հաճախ դուրս չեն գալիս։ Բայց չէ որ այդ կազմակերպություններն էլ շրջկոմի օգնության ու ղեկավարության կարիքն ունեն։ Շրջանում հարյուրից ավելի սկզբնական կուսկազմակերպություններ կան, որոնք չունեն բյուրո, դրանց զգալի մասը հազիվ հինգ-վեց կոմունիստ են միավորում։ Արդարությունը պահանջում է ասել, որ շնորհիվ հրահանգիչների ջանասեր աշխատանքի, այդ կազմակերպությունները մշտապես շրջկոմի տեսադաշտում են։

Վերջին երկու տարում շրջկոմի բյուրոն սակավանդամ կազմակերպությունների գործունեությանը վերաբերող պլանային երեք հարց է քննարկել։ Հունվար ամսին, օրինակ, շրջկոմը անդրադարձավ շրջանի սակավանդամ դպրոցական կազմակերպությունների ներկուսակցական-քաղաքական աշխատանքների վիճակին։ Հարցի քննարկմանը նախորդել էր տևական մանրակրկիտ ուսումնասիրություն։ Դպրոցական գործին ու կուսակցական աշխատանքին լավատեղյակ ակտիվիստներից կազմված հանձնաժողովը գլխավորում էր դպրոցական կազմակերպություններն սպասարկող հրահանգիչ Ժ. Ազիզյանը։ Հանձնաժողովի անդամները, բացահայտելով թերությունները, գործնական օգնություն ցույց տվեցին դրանք վերացնելու համար, դա նպաստեց այդ կուսկազմակերպությունների գործունեության ակտիվացմանը։

Շրջանային կոմիտեի աշխատողները ջանում են հնարավորին չափ հաճախ լինել տեղերում. դա կօգնի ժամանակին վերացնել թերությունները սկզբնական կուսկազմակերպությունների աշխատանքում, կբարձրացնի նրանց մարտունակությունը, առավել կուժեղացնի շրջկոմի կապը ստորին օղակների հետ։ Այնուամենայնիվ, այս հարցում թերությունները դեռևս լրիվին չեն հաղթահարված։ Կարելի է հիշատակել տասնյակ օգտակար խորհուրդներ և առաջարկություններ, որոնք անում են կոմունիստները իրենց ժողովներում։

ՀՍՍՀ Գիտությունների ակադեմիայի արևելագիտության սեկտորի կուսկազմակերպության վերջին հաշվետու-ընտրական ժողովում կուսակցության անդամ Ն. Ներսիսյանը ուղղակի հայտարարեց.

— Մենք դժգոհ ենք շրջկոմից, մասնավորապես կազմակերպությանն սպասարկող հրահանգիչներից այն բանի համար, որ նրանք մեզ հետ կապ են պահպանում հիմնականում հեռախոսային զանգերի միջոցով, տուրք են տալիս թղթաբաբանության, չեն ապահովում որակյալ օգնություն։

Մենք հաճախ ենք ասում, որ հրահանգիչը կուսակցական աշխատանքում կենտրոնական դեմք է։ Բայց երբ հանգամանորեն խորամուխ ենք լինում շրջկոմի ապարատի աշխատողների գործունեության մեջ, պարզվում է, որ առանձին կամպանիաների ժամանակ հրահանգիչներին ուղղակի վերածում ենք գրասենյակային աշխատողների։ Եվ գաղտնիք չէ, որ հրահանգիչը երբեմն կազմակերպություն է գնում ամենևին էլ ոչ կոնկրետ, կենդանի օգնության, այլ պարզապես հարցի նախապատրաստման կամ զեկուցագրերի համար, հնարավորին չափ շատ «սուր» փաստեր հավաքելու նպատակով։

Պետք է գտնել կուսակցական աշխատանքի այս լուրջ բացը հաղթահարելու ձևը, որը մեզ համար, անկեղծ ասած, շատ դժվար է։ Մեր կազմակերպական



քաժնում, օրինակ, աշխատում են հինգ հրահանգիչ, որոնցից յուրաքանչյուրն սպասարկում է միջին թվով ութսուն սկզբնական կուսկազմակերպություն, չհաշված արտադրամասայինները։ Այս վիճակից դուրս գալու ելքը մենք գտնում ենք հիմնականում հասարակական աշխատանքի լայն կիրառման ու հրահանգիչների որակական կազմի, նրանց աշխատանքի ձևերի ու մեթոդների անընդհատ կատարելագործման մեջ։

Պետք է ասել, որ «հրահանգչի պրոբլեմը» մնում մշտապես շրջկոմի ղեկավարության ուշադրության կենտրոնում է։ Այլ կերպ չի էլ կարող լինել. չէ՞ որ մեր շրջկոմի գործող ղեկավար ապարատի մոտ երկու երրորդը հրահանգիչներ են։ Նրանց կազմը պարբերաբար թարմացվում է։ Տասը հրահանգիչներից յոթը մինչև շրջկոմ գալը կազմակերպական աշխատանքի լավ դպրոց են անցել՝ կոմերիտմիության քաղաքային ու շրջանային կոմիտեներում, երկուսը եղել են սկզբնական կուսակցական կազմակերպությունների քարտուղարներ։

Իհարկե, պակաս կարևոր չէ և հրահանգիչների հետ տարվող աշխատանքը։ Անհրաժեշտ է, որ նրանք տիրապետեն մարդկանց հետ աշխատելու արվեստին։ Այս հարցերը հաճախ են քննարկվում շրջանային կոմիտեում անցկացվող խորհրդակցություններում (ամեն երկուշաբթի)։ Բացի այդ, փորձի փոխանակման ու աշխատանքի պատասխանատվության բարձրացման նպատակով հրահանգիչների ինքնահաշվետվությունների քննարկմանն է պարբերաբար անդրադառնում նաև շրջկոմի ապարատի սկզբնական կուսակցական կազմակերպությունը։ Հրահանգիչների ուսուցմանը մեծապես նպաստում են ՀԿԿ Երևանի քաղաքային կոմիտեի նախաձեռնությամբ կազմակերպված «Կուսակցական աշխատողի օր» թեմատիկ սեմինարները, որոնց մասնակցում են նաև մեր հրահանգիչները։

Յ. ՊՈՂՈՍՅԱՆ
ՀԿԿ Երևանի կազմակերպության
Սպանդարյանի շրջկոմի քարտուղար



## ԵՐԻՏԱՍԱՐԴ ԳԻՏԱԿԱՆ ԱՇԽԱՏՈՂԻ ամբիոն

Հ. ՀՈՎՍԵՓՅԱՆ

# ՍՏԵՓԱՆ ՇԱՀՈՒՄՅԱՆԸ ՊԵՏՈՒԹՅԱՆ ՄԱՍԻՆ

Ստեփան Շահումյանի կյանքը, նրա հասարակական և քաղաքական գործունեությունը սերտորեն կապված է Ռուսաստանի և Անդրկովկասի հեղափոխական շարժումների, կոմունիստական կուսակցության պատմության հետ։

Շահումյանի հասարակական, քաղաքական, իրավական հայացքները ձևավորվեցին այն ժամանակ, երբ Ռուսաստանն ապրում էր արդյունաբերական կապիտալի զարգացման և բանվորական շարժման բուռն վերելքի շրջան, երբ Անդրկովկասը՝ ցարական Ռուսաստանի գաղութներից մեկը, տնտեսապես հետամնաց էր։ Ահա այդ պայմաններում է, որ Ստ. Շահումյանը՝ խոր ըմբռնելով կապիտալիզմի էությունը, նրա հակասություններն ու զարգացման տենդենցները, Վ. Ի. Լենինի ղեկավարությամբ ծավալում է իր հեղափոխական գործունեությունը։

Աննկուն բոլշևիկը, մարքսիզմ-լենինիզմի հեղափոխական ուսմունքի հիման վրա, իր աշխատություններում, հոդվածներում, ճառերում և զեկուցումներում շոշափել է հասարակական և քաղաքական կյանքի բազմաթիվ հարցեր։ Դրանց մեջ իրենց առանձնահատուկ տեղն ունեն պետության և իրավունքի վերաբերյալ Ստ. Շահումյանի զարգացրած հայացքները։

Անհրաժեշտ է նշել, որ մեր իրականության մեջ իրոք բազմակողմանիորեն ուսումնասիրվել են նրա փիլիսոփայական, պատմական, գրականագիտական և ժուռնալիստական հայացքները։ Սակայն մինչև այժմ չեն ուսումնասիրվել պետական-իրավական հայացքները, համենայն դեպս, հրապարակի վրա չկա մի աշխատություն, որը հատկապես նվիրված լինի այդ հարցին։

Ստ. Շահումյանի ապրած ժամանակաշրջանում շատերն են զբաղվել պետության ծագման ու նրա էության հարցերով, որոնց ըմբռնումները բխել են այս կամ այն դասակարգի շահերից։ Այդ առթիվ Ստ. Շահումյանը նշում է, որ ժամանակակից եվրոպական հասարակության ամեն մի դասակարգ՝ հանձինս իր թեորետիկների, ցանկանում է, որ ճշմարտությունն իր կողմը լինի։ Նա ցույց է տալիս, որ հասարակական գիտությունների այս կամ այն հարցի վերաբերյալ եղած ճշմարտությունը երկու դասակարգերից մեկի կողմն է, և այդ մեկը, դժվար չէ հասկանալ, որ պրոլետարիատն է, որովհետև ներկա հասարակության մեջ ճշմարտությունը համապատասխանում է միայն պրո-



լետարիատի դասակարգային շահերին։ Ահա թե ինչու բուրժուական տեսաբանները դիտավորյալ խճճում են պետության հարցը՝ շահագործվող մասսայի համար անհասկանալի դարձնելու նպատակով։ «Ես արդեն ասել եմ, որ հազիվ թե մի ուրիշ հարց, որը դիտավորյալ, թե ոչ դիտավորյալ կերպով բուրժուական գիտության, փիլիսոփայության, իրավագիտության, քաղաքատնտեսության և հրապարակախոսության ներկայացուցիչների կողմից այնքան խճճված լինի,— ասում է Վ. Ի. Լենինը,— որքան պետության հարցը» (Վ. Ի. Լենին, Պետության մասին, Հայպետհրատ, 1950, էջ 5)։

Մարքսիզմը, ի հակադրություն բուրժուական գաղափարախոսության, ապացուցել է, որ պետությունը հասարակությանը դրսից պարտադրված ուժ չէ, որ այն պատմական կատեգորիա է, կապված դասակարգային հասարակության առաջացման հետ։ Պետությունը դասակարգային հակասությունների անհաշտելիության արդյունք է, նշել է Վ. Ի. Լենինը, այն որպես հարկադրման հատուկ ապարատ, առաջացել է այնտեղ ու այն ժամանակ, երբ հանդես է եկել հասարակության դասակարգային բաժանումը։

Լինելով ականավոր մարքսիստ, Ստ. Շահումյանը բնականաբար պետության հարցում ևս կանգնած էր մարքսիստական դիրքերում։ Նա նշում է, որ պետությունն արդյունք է պատմական որոշ էտապում ծնված դասակարգերի միջև եղած պայքարի։ Նրա անհրաժեշտությունը զգացվել է այն դեպքում, երբ հասարակությունը երկփեղկվել է դասակարգերի, և այն դասակարգը, որը կյանքում ավելի ուժեղ է, պետության միջոցով իր կամքն է թելադրել հակառակորդ դասակարգին։ Այս առթիվ նրա մոտ կարդում ենք.

«Առավել ուժեղ և կյանքում իշխող դասակարգը նյութական կյանքի արտադրական պրոցեսում վերածում է իր կոլեկտիվ կամքը, որը, ինչպես մենք գիտենք, թելադրվում է նրա տնտեսական դրությամբ ու տնտեսական շահերով և հակադիր է այլ դասակարգերի կոլեկտիվ կամքին,— նա իր այդ դասակարգային կամքը վերածում է հասարակական կամքի, մարմնացնում է հասարակական ու պետական հիմնարկությունների մեջ, որոնք նրա ձեռքին վերածվում են հետագա դասակարգային պայքարի գործիքների» (Ստ. Շահումյան, Երկեր, հ. 1, էջ 99)։

Խոսելով աթենական, հռոմեական և գերմանական պետությունների մասին, Ստ. Շահումյանը դրանց ծագման պատճառը համարում է միայն դասակարգային հակասությունները, որոնք առաջացել էին հարուստների ու աղքատների միջև, և որ դրանք լուծելու համար տոհմական կարգերը անընդունակ էին և այդ պատճառով էլ սկսվեց պետական կյանքի անհրաժեշտությունը, «...երբ առաջ է գալիս փոխանակությունը, զարգանում են արհեստներն ու վաճառականությունը, ծնունդ են առնում աշխատանքի բաժանումն ու դասակարգային շերտավորումը և այդ բոլորի շնորհիվ անհրաժեշտորեն սկսվում է պետական կյանքը» (Նույն տեղը, հ. 2, էջ 288)։

Ստ. Շահումյանը ցույց է տալիս, որ տնտեսապես տիրապետող դասակարգն աստիճանաբար ստեղծում է բանակ, դատարան, ոստիկանություն, բանտեր և այլ օրգաններ, և այդպիսով իսկ տիրող դասակարգը պատմական որոշ էտապում իր տիրապետությունը մարմնացնում է քաղաքական իշխանությամբ։

Այսպիսով, Ստ. Շահումյանը, մերկացնելով բուրժուական գաղափարախոսության այն պնդումները, թե պետությունը մեկընդմիշտ տրված ինչ-որ

բան է, վճռականորեն պաշտպանում է մարքսիզմի տեսակետը, որ մշտապես պետություն չի եղել և այն պատմական կատեգորիա է։

Ցույց տալով պետության ծագման բուն պատճառները, Ստ. Շահումյանն իր աշխատություններում և հոդվածներում նշում է նաև այն հանգամանքը, որ արմատական տարբերություն գոյություն ունի տոհմական կարգի և պետական կարգի միջև։ Տոհմը նախ անհատական միություն էր,— նշում է Ստ. Շահումյանը,— որի հասարակական միության հիմքը ցեղական, արենակցական սկզբունքն էր։ «Այն օրվանից, երբ գոյացել են առաջին պետությունները՝ մարդկային նույնիսկ հնագույն անցյալում այդ սկզբունքը զիջել է իր տեղը հարևանության կամ տերիտորիայի սկզբունքին» (նույն տեղը)։

Այնուհետև, եթե տոհմական կարգերի ժամանակ գոյություն չուներ հարկադրանք կիրառող ապարատ, որին մենք պետություն ենք համարում, ապա վերջինիս օրոք երևան են գալիս բանակը, բանտերը, դատարանը և այլ օրգաններ, որոնք կոչված են սանձահարելու ճնշվածների դիմադրությունը։

Դասակարգերի, մասնավոր սեփականության բացակայությունը նախնադարյան հասարակարգում բացառել է պետության անհրաժեշտությունը։ Մարդիկ այդ ժամանակաշրջանում իրենց գործերը վարել կամ ֆունկցիաներն իրականացրել են հասարակության կողմից ընտրված մարդկանց միջոցով։

Ստ. Շահումյանն իր գործունեության ընթացքում մարքսիստական տեսանկյունից է մոտեցել նաև պետության էության հարցին։ Բուրժուական իդեոլոգները միշտ էլ իրենց հասարակարգը ներկայացրել են որպես ընդհանուրի բարօրություն, իսկ պետությունը՝ բոլոր մարդկանց բարօրության մեքենա։

Մերժելով բուրժուական գաղափարախոսության պնդումները պետության վերդասակարգային լինելու, մարդկանց հաշտեցնելու, տնտեսական կյանքում եղած հակասությունները վերացնելու մասին, Ստ. Շահումյանը ցույց տվեց, որ պետությունը դասակարգային է իր առաջացման իսկ օրից, որ պետությունը, բոլոր անտագոնիստական ֆորմացիաներում, տիրող դասակարգի ձեռքին զենք է՝ հակառակորդ դասակարգի ճնշումն ու շահագործումը կազմակերպելու համար։ «...պետությունը, պատմության մեջ միշտ հանդիսացել է դասակարգային տիրապետության կազմակերպություն» (Ստ. Շահումյան, Երկեր, հ. 1, էջ 99)։

Ստ. Շահումյանն ընդգծում է, որ բուրժուական պետություններն ամեն տեղ՝ թե՛ ԱՄՆ-ում, Անգլիայում, Բելգիայում և թե Ռուսաստանում, պաշտպանում են տիրող դասակարգի շահերը։ Պետական մարմինները բուրժուազիայի ձեռքին զենք են մասնավոր սեփականության «սրբազան» ու «անձեռնմխելի» իրավունքը «նվիրագործելու», կապիտալիստական շահագործման հրեշավոր հիմունքները ամրապնդելու և հավերժացնելու համար։ Ստ. Շահումյանն իր Դասակարգերը ժամանակակից եվրոպական հասարակության մեջ փիլիսոփայական և իրավաբանական արժեքավոր աշխատությունում վերլուծելով պրոլետարիատի և չքավոր գյուղացիության թշվառ վիճակը, ցույց է տալիս, որ իշխանության գլուխ կանգնած դասակարգը, օգտագործելով պետության ուժը՝ Անգլիայում 1801 թվականից մինչև 1831 թվականը գյուղացիներից խլել է 3 511 770 ակր հող և պառլամենտի միջոցով ձևակերպել որպես օրինական քայլ։

Բելգիայում 1845 թվականին երդվյալների դատարանը դատապարտել է 2750, Ֆրանսիայում՝ 3798 հոգու՝ մասնավոր սեփականության դեմ ուղղված



այս կամ այն ոտնձգության համար։ Պետության դասակարգային էությունը ավելի ցայտուն է դրսևորվում իմպերիալիզմի էպոխայում։ Շահումյանը նշում է իմպերիալիզմի ժամանակաշրջանում պետության գլխավոր խնդիրներն ու ֆունկցիաները։ Նա գտնում է, որ բուրժուական պետություններն ունեն երկու հիմնական ֆունկցիա՝ ներքին և արտաքին, այդ ֆունկցիաներն այժմ էլ պահպանվում են բոլոր կապիտալիստական պետություններում։

Վերլուծելով բուրժուական պետության գլխավոր խնդիրը՝ սեփականության ու շահագործման սրբագործումը, Ստ. Շահումյանը նշում է, որ այդ պետությունը կոչված է ճնշելու կեղեքվողների դիմադրությունը և երկրորդ՝ այլ պետությունների հաշվին ամեն կերպ ընդարձակելու պետության սահմաններն ու ազդեցության ոլորտները։ Այս ֆունկցիայի մեջ է մտնում նաև իր տերիտորիաների պաշտպանությունը։

Մարքսը ուսումնասիրելով հեղափոխությունների և, հատկապես, փարիզյան կոմունայի դասերը, եկավ այն հաստատ հետևության, որ բուրժուազիան ոչ թե ոչնչացնում է ֆեոդալական պետական ապարատը, այլ օգտագործում է իր դասակարգային շահերի համար, իսկ պրոլետարիատը չի կարող բուրժուական պետական ապարատը օգտագործել սոցիալիստական հասարակարգ կառուցելու համար, նա պետք է ջարդուփշուր անի այն և ստեղծի իր դիկտատուրան։

Այս հետևությունը կարևոր նշանակություն ունեցավ պետության մասին մարքսիստական ուսմունքի համար, մեծ դեր խաղաց բուրժուական գաղափարախոսության դեմ մղվող պայքարում և բանվոր դասակարգի ու կոմունիստական կուսակցությունների ստրատեգիան մշակելու գործում։

Ստ. Շահումյանն իր մարքսիստական հայացքները շարադրելիս մոռացության չի տվել նաև այս կարևոր հարցը։ Նա ցույց է տալիս, որ բուրժուազիան ֆեոդալիզմի դեմ իր հեղափոխական պայքարում, խլելով քաղաքական իշխանությունը, չդիպավ հին պետական ապարատին, ընդհակառակը՝ կատարելագործելով այն, օգտագործեց իր հակառակորդ դասակարգին ճնշելու համար։

Բուրժուական հեղափոխությունների ժամանակաշրջանում, ընդգծում է Ստ. Շահումյանը, շահագործողական դասակարգի գաղափարախոսները ելնելով կապիտալիզմի շահերից, հռչակեցին «ազատություն», «եղբայրություն», «հավասարություն» լոզունգները և միաժամանակ քննադատեցին ֆեոդալական պետությունը, որպես բռնության, շահագործման ապարատի։

Սակայն, ինչպես ցույց տվեց պատմությունը. բուրժուազիան այդ քննադատված հին պետական ապարատը հարմարեցրեց կապիտալիստական հասարակարգի էությանը։ «Բուրժուազիան արել է այն, ինչ որ կարող էր անել։ Նա,— դասակարգային տիրապետության մի ձևը — հնացածը,— գրում է Ստ. Շահումյանը,— անպետքը,— փոխարինել է մի այլ, ավելի ժամանակակից ձևով» (Նույն տեղը, հ. 2, էջ 139)։

Ստ. Շահումյանը հենվելով Մարքսի ուսումնասիրությունների և պատմության հարուստ փորձի վրա, ցույց է տալիս, որ կապիտալիստական պետական ապարատը «կատարելագործվում է», բռնության մեքենան ամրապնդվում է, հետևաբար ուժեղանում են բանվոր դասակարգի դեմ իրականացվող հալածանքները, հեղափոխական շարժումների դեմ պայքարելու միջոցները։

Ուսումնասիրելով հասարակությունների զարգացման պատմությունը, Ստ. Շահումյանը նշում է, որ պատմական զանազան ժամանակաշրջաններում պետությունը հանդես է եկել քաղաքական տարբեր ձևերով. ստրկատիրական ֆորմացիայում՝ միապետության, հանրապետության, արիստոկրատիայի և դեմոկրատիայի ձևով։ Նույնպիսի ձևով են հանդես եկել ֆեոդալական և կապիտալիստական պետությունները։

Ստ. Շահումյանը ընդգծում է, որ պետության ձևերի տարբերությունը չի առաջացնում բովանդակության տարբերություն այն պատճառով, որ նրանք միշտ էլ տիրող դասակարգի ձեռքին զենք են հանդիսացել աշխատավոր մասսաներին ճնշելու և շահագործելու համար։

Ռուսաստանում, Անդրկովկասում, Եվրոպայում բուրժուական տեսաբանները պետական ձևերի իրավաբանական տարբերությունն օգտագործում էին պրոպագանդիստական նպատակներով՝ աշխատավոր ժողովրդին խաբելու համար։ Օրինակ՝ Ռուսաստանում խոսում էին այն մասին, որ Դումայի առկայությունն, իբր, փոխել է ռուսական ինքնակալության էությունը կամ Անդրկովկասում երբևէ գործող պետական հաստատությունները ելնում են վրացիների, հայերի և ադրբեջանցիների շահերից։ Եվ դա այն դեպքում, երբ այդ պետական ապարատը չարամտորեն թշնամանք էր սերմանում Անդրկովկասի ազգությունների միջև։ «Ժամանակակից պետությունները,— և ինքնակալ միապետությունները, և կոնստիտուցիոն, նույնիսկ հանրապետական պետությունները (ինչպես ֆրանսիական բյուրոկրատիկ-ցենզային հանրապետությունն է),— բուրժուազիայի ձեռքում զենք են՝ ժողովրդական մասսաներին ստրկացնելու և ճնշելու համար» (նույն տեղը, էջ 143)։

Ստ. Շահումյանը շահագործողական պետությունների քաղաքական ձևերի և կառուցվածքի բազմազանությունը կապում է պատմական ժամանակաշրջանի, դասակարգային ներքին փոխհարաբերությունների և միջազգային դրության հետ։ Նա նշում է, որ բուրժուական պետությունները պետական կառուցվածքի տեսակետից բաժանվել են պարզ — ունիտար և ֆեդերատիվ պետությունների։ Կենտրոնացված ունիտար պետությունները առաջացել են ֆեոդալական մանրատվածությունը վերացնելու պրոցեսում, միասնական շուկա ստեղծելու համար, իսկ ֆեդերատիվ պետությունները՝ պատմական տարբեր ժամանակաշրջաններում, որոնք մի տեղ հանդես են եկել որպես ֆեոդալիզմի մնացորդ, իսկ մի այլ տեղ՝ գաղութների միություն։ Վերջինիս օրինակը ԱՄՆ-է։

Խոսելով այդպիսի պետությունների մասին, Ստ. Շահումյանը ընդգծում է, որ իմպերիալիզմի դարաշրջանում կապիտալիստական ֆեդերատիվ պետությունը հետզհետե դառնում է ունիտար, որտեղ ենթարկվող ազգերը զրկվում են իրենց իրավունքներից։

Վերլուծելով կապիտալիստական հասարակության էությունը, նա ցույց է տալիս այն հակասությունները, որոնք օրինաչափորեն առաջանում են տիրապետող ազգի և ենթարկվող ազգերի բուրժուազիայի միջև։ Այդ պայքարն արտահայտվում է նրանում, որ տիրող ազգի բուրժուազիան ձգտում է պահպանել ֆեդերատիվ պետությունից դեպի ունիտար ընթացած պետության կառուցվածքը, իսկ ենթարկվող ազգի բուրժուազիան՝ անդամահատել բազմազգ ունիտար պետությունը։

Իր հեղափոխական և տեսական գործունեության ամբողջ ժամանակա-



շրջանում Շահումյանը պայքարում էր մարքսիզմ-լենինիզմի անշեղ իրականացման համար։ Իր հոդվածներում, ճառերում և աշխատություններում, փայլուն պաշտպանելով մարքսիզմի ճշմարտացի ուսմունքը, նա այն զարգացնում էր Անդրկովկասի իրականությանը համապատասխան։

Ստ. Շահումյանը բազում թելերով կապված էր համաշխարհային պրոլետարիատի մեծ ուսուցիչ և առաջնորդ Վ. Ի. Լենինի հետ։ 1917 թվականի փետրվարյան բուրժուա-դեմոկրատական հեղափոխությունից հետո, ազատվելով աքսորից, նա վերադառնում է Բաքու, ուր պրոլետարիատը նրան հեռակա կարգով ընտրել էր Բաքվի սովետի նախագահ։

Լենինի Ապրիլյան թեզիսները նոր ուղիներ բացեցին նրա հեղափոխական գործունեության համար։ Կարճ ժամանակամիջոցում նա հանդիպեց Թիֆլիսի, Ալեքսանդրապոլի և ապա Բաքվի բոլշևիկներին, որտեղ մանրամասն վերլուծելով լենինյան պլանը, կոչ արեց՝ տապալել բուրժուա-նացիոնալիստական պետությունները և ստեղծել պրոլետարիատի դիկտատուրա։

Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխությունը նոր դարագլուխ բացելով մարդկության պատմության մեջ, ոգևորեց Անդրկովկասի ժողովուրդներին։ Հեղափոխական և հակահեղափոխական ուժերի պայքարը ավարտվեց Բաքվում սովետական իշխանության հաղթանակով։ 1918 թվականի ապրիլի 25-ին Բաքվի սովետի նիստում ստեղծվում է ժողովրդական կոմիսարների սովետ, որի նախագահն է ընտրվում Ստ. Շահումյանը։

Ստ. Շահումյանն իր գործունեության այդ դժվարին ժամանակաշրջանում պայքարում էր պրոլետարիատի դիկտատուրայի ստեղծման համար։ Նա ցույց է տալիս, որ պրոլետարիատը հասնելով քաղաքական իշխանության, չի ավարտում իր դասակարգային պայքարը տապալված, բայց դեռևս չոչնչացված շահագործողական դասակարգերի դեմ։ Այդ պատճառով էլ պրոլետարիատն իր դիկտատուրան պետք է օգտագործի թշնամի դասակարգերի դեմ։ «Պատմությունը մեզ սովորեցնում է, որ մահացող դասակարգերը, հակառակորդի դեմ պայքարում մեռնող դասակարգերը դիմում են ամենաանարժան պրիոմների, կանգ չառնելով ոչ մի միջոցի առաջ...» (նույն տեղը, էջ 439)։

Մարքսիզմի թշնամիները Բաքվի պայմաններում պահանջում էին, որպեսզի պրոլետարիատը հրաժարվի բուրժուազիայի նկատմամբ բռնություն գործադրելուց։ Ստ. Շահումյանը մերկացնելով նման պահանջ ներկայացնողներին, ցույց է տալիս, որ բանվոր դասակարգը չի կարող հրաժարվել բռնությունից, որ տապալված դասակարգերի նկատմամբ բռնություն չօգտագործելու լոզունգը վնաս է պրոլետարիատին։

1918 թվականի հունիսի 2-ին Ստ. Շահումյանը հանդես գալով կոմունայի մասին հրապարակային դասախոսությամբ, կուսակցական կազմակերպություններին և պրոլետարիատին սովորեցնում էր խստորեն հաշվի առնել Փարիզի կոմունայի դասերը։ Հեղափոխությունն արձագանք գտավ ամբողջ երկրում,— ասում է Ստ. Շահումյանը դասախոսության ժամանակ,— Փարիզի հեղափոխական պրոլետարիատի բարձրացրած կարմիր դրոշը շատ կողմնակիցներ գտավ։ Բայց անպատրաստ, պետական փորձառություն չունեցող Փարիզի բանվորների բազմաթիվ սխալները ճակատագրական դարձան նրանց համար։

Ամենից առաջ, շնորհիվ այն հանգամանքի, որ Փարիզը պատշաճ կերպով չկապվեց բոլոր գավառների հետ, որոնք հեղափոխական տեսակետից

խիստ ետ էին մնացել նրանից, Թիերին հաջողվեց լիկվիդացնել հեղափոխությունը գավառներում և նրանց կտրել Փարիզի ազդեցությունից, գերմանացիների հետ միասին շրջապատելով այն։

Մյուս խոշոր սխալը հետևյալն էր. գրավելով իշխանությունը, Փարիզի բանվորները չձերբակալեցին իրենց թշնամիներին և դրանով չկանխեցին ռեակցիայի հնարավորությունը։ Նրանք չգրավեցին կարևոր կետ Վերսալը, որին տիրելը վճռում էր Փարիզի բախտը» (Նույն տեղը, հ. 3, էջ 248—249)։

Ստ. Շահումյանն իր պրակտիկ գործունեության ընթացքում վիթխարի ջանքեր գործադրեց կապիտալիստական մասնավոր ձեռնարկությունները, հատկապես նավթային արդյունաբերությունն ազգայնացնելու համար։ Նա պահանջում էր ո՛չ միայն սահմանափակել բուրժուական մասնավոր սեփականությունը, այլ հետագայում հասնել նրա իսպառ վերացմանը։

Սակայն, կարո՞ղ է պրոլետարիատի իշխանությունը, մնալով սովետական, չունենալով տնտեսական հիմքեր ստեղծելու ձգտումներ, լինել սոցիալիստական, լինել կոմունիստական, հարցնում է Ստ. Շահումյանը։ «Լիովին իրականացնելով սովետի քաղաքական իշխանությունը, մենք չէինք կարող այժմ սահմանափակվել կյանքի տնտեսական բնագավառում բուրժուական հիմունքները պահպանողների դերով և ստիպված էինք անմիջապես դիմելու կոմունիստական կարգի կազմակերպման» (Նույն տեղը, էջ 253—254)։

Այսպիսով, պրակտիկորեն իրականացնելով պրոլետարիատի դիկտատուրայի կազմակերպումը, Ստ. Շահումյանը ուղղություն է տալիս նաև նրա գործունեությանը։ Նա ցույց է տալիս, որ պրոլետարիատի դիկտատուրայի պետությունը, ի հակադրություն բուրժուական պետության, պետք է հենվի աշխատավորական լայն մասսաների աջակցության վրա։

Քանի որ պրոլետարիատի դիկտատուրան բանվորների և գյուղացիների դաշինքի հատուկ ձև է, ուստի, այն պետք է ամեն կերպ ամրապնդի բանվորների և գյուղացիների դաշինքը։ Դրա հետ միասին նա պայքարում է պրոլետարիատի դիկտատուրայի ինտերնացիոնալիստական էությունը, բնույթն է՛լ ավելի զարգացնելու համար։ Պրոլետարիատի ուժը նրա դասակարգային միջազգային համերաշխության մեջ է, ասում է Ստ. Շահումյանը։ Զարգացնելով այդ միտքը, նա նշում է, որ ինչպես ներկայումս, այնպես էլ ապագա ազատ Ռուսաստանում, որքան ավելի սերտ միացած լինեն զանազան ազգությունների բանվորները, այնքան ավելի լավ կարող են կռվել իրենց դասակարգային շահերի համար։

Ստ. Շահումյանն իր մի շարք զեկուցումներում և հոդվածներում ցույց է տալիս պրոլետարիատի դիկտատուրայի ֆունկցիաների էությունը։ Նա, ինչպես պարզվեց վերևում, նշում է, որ պրոլետարիատի իշխանությունը պետք է ճնշի թշնամի դասակարգերի դիմադրությունը և կազմակերպի սոցիալիստական հասարակարգի տնտեսական հիմքերը։ Սրանք կապիտալիզմից սոցիալիզմին անցնելու ժամանակաշրջանում պետության ներքին հիմնական ֆունկցիաներն են։ Դրա հետ մեկտեղ պրոլետարիատի դիկտատուրայի պետությունը պետք է կատարի կուլտուր-դաստիարակչական աշխատանքներ, կազմակերպի սոցիալիստական կարգ ու կանոնի, հանրային սեփականության պաշտպանությունը։ Իսկ արտաքին ոլորտում նա պետք է պաշտպանի պրոլետարիատի իշխանության նվաճումներն արտաքին հարձակումներից։

Ստ. Շահումյանին զբաղեցրել է նաև պրոլետարիատի դիկտատուրայի



քաղաքական ձևի հարցը, որը կարևոր տեղ է գրավում պետության վերաբերյալ մարքս-լենինյան ուսմունքում։

Վ. Ի. Լենինը 1917 թվականին վերլուծելով երկու հեղափոխությունների և 1905—1917 թթ. կազմակերպված բանվորների ու զինվորների դեպուտատների սովետների փորձը, եկավ այն եզրակացության, որ պառլամենտական դեմոկրատական հանրապետությունը չի կարող հանդիսանալ պրոլետարիատի դիկտատուրայի քաղաքական ձևը։ «Ո՛չ թե պառլամենտական հանրապետություն,— Բ. Դ. սովետներից դրան վերադառնալը կլիներ մի քայլ դեպի ետ,— այլ բանվորների, բատրակների և գյուղացիների դեպուտատների սովետների հանրապետություն ամբողջ երկրում, վարից մինչև վեր» (Վ. Ի. Լենին, Ապրիլյան թեզիսներ, 1954, էջ 6)։

Պետության քաղաքական ձևի մասին մարքսիստական ուսմունքի զարգացումը Լենինի կողմից Շահումյանը պաշտպանեց Անդրկովկասի իրականության մեջ։ Նա 1917 թվականի մայիսի 14-ին քննադատելով կոալիցիոն միմիստրությանը, կոչ է անում իշխանությունը լիովին հանձնել բանվորական և գյուղացիական սովետների ձեռքը։ «Ո՛չ թե բուրժուական-պառլամենտական հանրապետություն՝ կապիտալիստների ու կալվածատերերի գլխավորությամբ, ոչ թե կովկասյան «սեյմը» բեգերի, աղնվականների, բուրժուա-նացիոնալիստական պաշտպանողականների գլխավորությամբ, այլ սովետների բանվորա-գյուղացիական հանրապետություն,— ահա թե ինչը կարող է մեզ փրկել կործանումից (Ստ. Շահումյան, Երկեր, հ. 3, էջ 69)։

Ստ. Շահումյանը 1913 թվականին գրած Ազգային կուլտուրական ավտոնոմիայի մասին աշխատության մեջ, ինչպես նաև հետագա հոդվածներում և զեկուցումներում ցույց է տալիս, որ դասակարգային տիրապետության օրոք չի կարող լինել զուտ, մաքուր դեմոկրատիա։ Պատմության մեջ դեմոկրատիան միշտ եղել է դասակարգային, հետևաբար դասակարգերի գոյությունն անհրաժեշտաբար պետության գոյություն է պահանջում։ Պետությունը չի կարելի վերացնել, քանի գոյություն ունեն դասակարգերը — այսպիսի եզրակացության է հանգել Ստ. Շահումյանը դեռևս 1908 թվականին։

Ընդհանուր գծերով սրանք են Ստ. Շահումյանի հայացքները պետության մասին։

ճշգրտվել ու հարստանալ ըստ կուտակված փաստական նյութի: Իսկ եթե խոսքը վերաբերում է օբյեկտիվ դիալեկտիկային, ապա սրա օրենքները կարող են փոխվել միայն իրենց դրսևորման ձևով, որովհետև օբյեկտիվ աշխարհում նոր որակների առաջացումը մատերիայի ու դրա շարժման ձևափոխություն է կամ դրա արդյունքը: Դա հավասարապես վերաբերվում է նաև հասարակությանը: Տնտեսական մի ֆորմացիա մյուսից տարբերվում է, առաջին հերթին, արտադրողական ուժերի զարգացման աստիճանով և արտադրահարաբերությունների սիստեմով, այսինքն՝ հասարակական մատերիայի ու շարժման գոյության ձևերով: Դիալեկտիկայի օրենքները չեն կարող իրենց բնույթով կամ բովանդակությամբ փոխվել, որովհետև դա կլիներ այդ օրենքների վերածումն իրենց հակադրությանը, որն անհնար է: Օրինակ, քանակի և որակի փոխադարձ փոխանցման օրենքը բնության մեջ չի կարող մի բովանդակություն ունենալ, իսկ հասարակության մեջ ուրիշ: Ուստի, դիալեկտիկայի օրենքները, որպես օբյեկտիվ իրականության համընդհանուր օրենքներ, բացարձակ են, իսկ դրանց դրսևորման ձևերը պատմական են ու անցողիկ: Այս օրենքները սուբստանցի ատրիբուտների նշանակություն ունեն: Իսկ ատրիբուտները ոչ սկիզբ ունեն, ոչ վերջ: Այս ճշմարտությունը հայտնի է եղել դեռ Սպինոզային:

Երբ Բ. Ուկրաինցևը դիալեկտիկայի օրենքները հարաբերական ճշմարտություններ է համարում, նա կատարում է երկու սխալ. նախ օբյեկտիվ օրենքը շփոթում է սուբյեկտի կողմից դրա արտացոլման հետ, որովհետև ճշմարտությունը սուբյեկտի մտքերի համընկնումն է իրականության հետ, հետևաբար դրա մասին կարելի է խոսել միայն այն դեպքում, երբ կա ճանաչող սուբյեկտ ու դրա հարաբերություն օբյեկտիվ աշխարհի հետ: Երկրորդ, նա մոռանում է այդ օրենքների համընդհանուր ատրիբուտային բնույթի մասին, նույնացնելով դրանք կոնկրետ երևույթների պատմական օրենքների հետ: Օրինակ, կապիտալիզմի օրենքները պատմական են թե՛ ձևով և թե բովանդակությամբ, իսկ այդ հասարակության մեջ գործող դիալեկտիկայի համընդհանուր օրենքները պատմական են միայն ձևով: Եթե դրանք պատմական լինեին նաև բովանդակությամբ, այդ դեպքում համընդհանուր համարվել չէին կարող, այսինքն՝ չպիտի հանդես գային և՛ բնության մեջ և՛ հասարակության բոլոր ֆորմացիաներում: Բայց դա այնպիսի մի փաստ է, որ ընդունվում է ո՛չ միայն մարքսիստների, այլև շատ ոչ-մարքսիստների կողմից:

Ահա թե ինչու իրավունք ունենք ասելու, որ կոմունիզմի օրոք գործող դիալեկտիկայի օրենքների դրսևորումը տարբերվում է բուրժուական աշխարհում դրանց ունեցած դրսևորումից ոչ թե իր լրիվությամբ կամ ունիվերսալիզմով, այլ ձևով, նրանով, որ այստեղ հակադրությունների միասնությունն ու պայքարը անտագոնիստական չեն, որ քանակի ու որակի փոխադարձ փոխանցումը կատարվում է ո՛չ թե տարերայնորեն, այլ պլանավորված և, որ բացասման բացասումն այլևս քաղաքական հեղաշրջման մեթոդով չէ, որ տեղի է ունենում: Անշուշտ, սրանք էական են, բայց մեզ իրավունք չեն տալիս ասելու, թե կա երկու դիալեկտիկա՝ «անտագոնիստական դիալեկտիկա» և «ոչ-անտագոնիստական դիալեկտիկա»: Եղել է ու կա միայն մեկ դիալեկտիկա, որը տարբեր հասարակությունների մեջ դրսևորվել ու դրսևորվում է տարբեր ձևերով: Այդ բանում համոզվելու համար քննության առնենք այն հարցը, թե դիալեկտիկայի հիմնական օրենքներն ու կատեգորիաները ինչպես են հանդես գալիս սոցիալիստական հասարակության մեջ:

## 2. ՀԻՄՔ ԿԱ՞, ԱՐԴՅՈՔ, ՀՐԱԺԱՐՎԵԼՈՒ «ՀԱԿԱԴՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՄԻԱՍՆՈՒԹՅՈՒՆ ՈՒ ՊԱՅՔԱՐ» ՁԵՎԱԿԵՐՊՈՒՄԻՑ

Երկու դիալեկտիկայի կողմնակիցները գտնում են, որ հակադրությունների միասնության ու պայքարի օրենքը սոցիալիստական հասարակայնության նկատմամբ կիրառելի չէ, որովհետև «Սոցիալիզմի ժամանակ հակասությունները դադարում են մեկը մյուսին բացասող սոցիալական հակադրությունների ձևը լինել» («Вопросы философии», 1966, № 10, стр. 148): Իսկ ի՞նչ բնույթի ու պայքարի ձև է, օրինակ, սոցիալիստական սեփականության երկու ձևերի միջև եղած հակասությունը: Դա հակասական, բայց ոչ հակադիր կողմերի պայքարի ձև է, պատասխանում է Յ. Ստեփանյանը: Բարի: Բայց ինչո՞ւ է հակասական կողմերի միջև պայքար տեղի ունենում, եթե դրանք ոչնչով չեն հակադրվում: Ինչն է պատճառը, օրինակ, որ սոցիալիստական հասարակության երկու դասակարգերի հարաբերությունը միասնական լինելու հետ միասին, նաև հակասական է: Մի՞թե գաղտնիք է, օրինակ, որ կոլտնտեսությունները ձգտում են իրենց արտադրածը բարձր գներով վաճառել, իսկ բանվորները, իրենց հերթին, ցանկանում են գյուղատնտեսական մթերքներն էժան գնով ձեռք բերել: Հնարավո՞ր է ասել, թե այս երկու ձգտումները միմյանց հակադիր չեն: Իհարկե, ո՛չ: Դրանց հակադրությունն է, որ ծնում է հակասություն, իսկ պետությունն աշխատում է հակասությունը լուծել գների կարգավորման մի-



ջոցով: Մեր կուսակցության Կենտկոմի ու կառավարության վերջին շրջանի որոշումները գյուղատնտեսական մթերքների գների կարգավորման մասին ճիշտ կարգի ձեռնարկումներ են:

Ասածներից հետևում է, որ կողմերի միջև հակասություն առաջանալ չի կարող, եթե դրանք հակադիր չեն: Երբ կողմերի հարաբերությունը տակավին տարբերության աստիճանի վրա է, դրանց միջև պայքար չկա, որովհետև կողմերն իրար նկատմամբ չեզոք են, նրանց կապը արտաքին և ոչ ներքին հարաբերության բնույթ ունի: Մարքսը կապիտալի դրամային և ապրանքային ձևերի հարաբերությունը համարում է տարբերության հարաբերություն, վերցնելով դրանց շրջանառու կապիտալի մեջ միավորվելու պրոցեսից դուրս: Նույնը պետք է ասել սոցիալիստական սեփականության երկու ձևերի հարաբերության մասին: Այդ հարաբերությունը տարբերության բնույթ ունի, երբ չի դիտվում որպես սեփականության մի նոր ձևի առաջացման պայման: Բայց իրականում դրանց կապն այնպիսին է, որ սեփականության հիշյալ ձևերը զարգացման ընթացքում ներաճում են մի նոր՝ կոմունիստական շրջանի սեփականության մեջ: Այդ ներաճումը ոչ այլ ինչ է, բայց եթե իր ձևով պետական սեփականությունից տարբեր, զարգացման մակարդակով ցածր կոլտնտեսային սեփականության բարձրացումն առաջինի աստիճանի:

Եթե սեփականության հիշյալ ձևերի հարաբերությունը նշված առումով հակադիր չլիներ, ապա դրանց միջև հակասություն առաջանալ չէր կարող և այդ ընթացքում վերջինն առաջինի հետ ձուլվելը անհնար կլիներ: Բանն այն է, որ հակասությունը դա հակադրությունների փոխադարձ ներթափանցման պրոցես է (Էնգելս), դա պայքարի մի ձև է, երբ մեկը ձգտում է գրավել մյուսի տեղը կամ էլ ձուլվելով իր հակադրության հետ, մի նոր երևույթ կամ որակ առաջացնել: Այն փաստը, որ սոցիալիզմի ժամանակ բանվոր դասակարգի և գյուղացիության կամ մտավոր ու ֆիզիկական աշխատանքի միջև հակասություններ կան, վկայում է որ դրանք ո՛չ միայն նույնը չեն, այլ դրանց միջև պայքար է գնում մի նոր ամբողջության՝ բանվորներն ու գյուղացիները դասակարգերի չբաժանված մի հանրության, իսկ մտավոր ու ֆիզիկական աշխատանքն աշխատանքի ավելի բարձր, դրանց միասնությունը կազմող մի նոր տեսակի մեջ ձուլվելու համար:

Յ. Ստեփանյանը հավատացնում է, որպես թե «կոմունիստական ֆորմացիայի առաջացման փորձը սովորեցնում է, որ ամեն մի հակադրություն հակասություն է, բայց ամեն մի հակասություն հակադրություն չէ» («Вопросы философии, 1966, № 10, стр. 146): Ի՞նչ հակասություն կա, օրինակ, հարավային և հյուսիսային բևեռների միջև, որոնք հակադիր են: Անշուշտ, ոչ մի: Ուրեմն, ամեն մի հակադրություն դեռևս հակասություն չէ: Ճիշտ չէ Յ. Ստեփանյանի նաև երկրորդ հարցադրումը: Եթե կողմերի հարաբերությունը հակասական է, ապա դա չի կարող ո՛չ հակադիր կողմերի հարաբերությունը լինել, որովհետև հակասության կողմերից յուրաքանչյուրը ձգտում է գրավել մյուսի տեղը կամ ձուլելով դրան իր մեջ առաջացնել մի նոր որակ, որը կլինի երկուսի էլ բացասումը մի երրորդի մեջ, հակառակ պարագայում հակասություն առաջանալ չի կարող: Յ. Ստեփանյանի բերած օրինակը ցենտրալիզմի և դեմոկրատիզմի հարաբերությունը սոցիալիզմի օրոք հենց այդ է ապացուցում: Ցենտրալիզմը դեմոկրատիզմ չէ և ընդհակառակը: Դրանց այդ հակադիր լինելն է, որ հնարավորություն է ընձեռում ցենտրալիզմի միջոցով չեզոքացնել դեմոկրատիզմի ծայրահեղությունները, ասենք, օրինակ, տնտեսական շինարարության ընթացքում առաջացող տեղայնությունը, իսկ դեմոկրատիզմի միջոցով էլ թույլ չտալ, որ ցենտրալիզմը հանգեցնի տեղական ձեռներեցության բացասմանը: Ուրեմն, ցենտրալիզմն ու դեմոկրատիզմը սոցիալիստական հասարակության մեջ հակադրություններ են ու նրանց միջև եղած հակասությունը ոչ այլ ինչ է, բայց եթե այդ հակադրությունների փոխադարձ ներթափանցում:

Հիմք ընդունելով հակադրության և հակասության հարաբերության վերոհիշյալ իր ըմբռնումը, Յ. Ստեփանյանը գտնում է, որ կոմունիզմի նկատմամբ դիալեկտիկայի՝ հակադրությունների միասնության ու պայքարի օրենքը պետք է ձևակերպել որպես «հակասական կողմերի ու տենդենցների միասնության և պայքարի» օրենք («Вопросы философии», 1965, № 10, стр. 148): Երբ Լենինը տվեց այդ օրենքի իր ձևակերպումը, նա ոչ մի վերապահում չարեց այն մասին, թե կոմունիզմի օրոք դա պետք է այլ ձևակերպում ունենա, որովհետև նա գիտեր, որ գիտության հիմնական օրենքները կարող են տարբեր բնագավառներում արտահայտության տարբեր ձևեր ունենալ:

Բայց Յ. Ստեփանյանն այդ չէ, որ ցանկանում է նշել: Նրա կարծիքով, «հակադրությունների միասնություն ու պայքար» ձևակերպումը դիալեկտիկայի օրենքի ձևակերպման մասնակի դեպք է, որովհետև, ըստ նրա, «հակադրություն հասկացությունը այնքան էլ ունիվերսալ չէ, այդ պատճառով էլ առաջարկում է այն «փոխարինել» հակասություն հասկացությամբ, որն

հիմքերի բացասումը կատարվեց միայն ըստ ձևի, փոխվեց սեփականատիրության միայն ձևը, իսկ մասնատիրական բնույթը պահպանվեց ու զարգացավ։

Եթե վերցնենք այդ ֆորմացիաների զարգացման տարբեր աստիճանները, ապա կնկատենք, որ դրանց հաջորդական բացասումները հասարակությունների տնտեսական հիմքերի արմատական բացասումները չեն, այլ միայն զարգացման աստիճանների։ Կապիտալիզմի մանուֆակտուրային արտադրության բացասումը մեքենայական արտադրության կողմից կամ արդյունաբերական կապիտալի տիրապետության բացասումը ֆինանսականի տիրապետությամբ՝ իմպերիալիզմի հաստատումը տեղի ունեցավ կապիտալիզմի շրջանակներում, այսինքն՝ գոյություն ունեցող տնտեսական հիմքի պահպանման հիման վրա։ Միայն սոցիալիզմի կողմից կապիտալիզմի բացասումն էր, որը վերածվեց հասարակության ո՛չ միայն քաղաքական սիստեմի, այլ նաև տնտեսական հիմքի արմատական, սեփականատիրության ո՛չ միայն ձևի, այլև բովանդակության՝ մասնատիրական բնույթի բացասմանը։

Հակառակ հիշյալ փաստերի, Վ. Զիրտկովը հավատացնում է, որ «անտագոնիստական բացասման», այսինքն՝ «անտագոնիստական հակասությունների հիման վրա կատարվող բացասման ամենաէական և ամենաբնորոշ գիծը, դա հասարակության «հիմքի արմատական ջարդել-փշրելն է» (նշված աշխ., էջ 273)։ Իսկ ոչ-անտագոնիստական՝ սոցիալիստականից կոմունիզմին անցնելիս բացասումների բնորոշ հատկանիշն այն է, որ այս դեպքում հասարակության հիմքը և այն «տնտեսական օրենքները, որոնք սոցիալիզմի ժամանակ արդեն հաստատվել են, պահպանվում են ու շարունակում են զարգանալ» (նույն տեղը, էջ 276)։

Այս հիման վրա էլ մեր հեղինակը եզրակացնում է. «...բացասման ընթացքում տնտեսական և հասարակական կյանքի հիմքերի պահպանումը կամ վերացումը այնքան էական է, որ այդ կապակցությամբ մենք իրավասու ենք մի բացասումը մյուսով որոշակիորեն տարբերել, իրավասու ենք դրանց բաժանել երկու տիպի՝ անտագոնիստականի և ոչ-անտագոնիստականի» (նույն տեղը, էջ 277)։ Նախ մենք տեսանք, որ հիմքի պահպանումը տեղի ունի նաև «անտագոնիստական բացասումների» ժամանակ, ուստի, դա միայն սոցիալիզմին բնորոշ համարել չի կարելի։ Երկրորդ, ճիշտ չէ, որ սոցիալիզմի օրոք հաստատված տնտեսական օրենքներից ոչ մեկն էլ կոմունիզմին անցնելիս չի բացասվելու։ Օրինակ, տնտեսական այնպիսի կարևոր օրենք, ինչպիսին մարդկանց բավարարումն է ըստ իրենց աշխատանքի, կոմունիզմի ժամանակ չի գործելու, դրա փոխարեն գործելու է ըստ իրենց պահանջմունքների բավարարման օրենքը։ Երրորդ, սոցիալիզմի ժամանակ ևս որոշ բացասումներ անտագոնիստական բնույթ ունեն։ Օրինակ, իդեալիզմի բացասումը դիալեկտիկական մատերիալիզմի կամ կրոնի բացասումը գիտական աթեիզմի կողմից հիմքերի բացասում է։ Չորրորդ, սոցիալիզմի շրջանի բացասումների բնորոշ հատկանիշը արտադրության և առհասարակ հասարակական պրոգրեսի անընդհատության ապահովումն է նորանոր հնարավորությունների հայտաբերման ու եղածների կատարելագործման միջոցով։

Սրանք են ահա սոցիալիստական հասարակության զարգացման դիալեկտիկայի բնորոշ գծերը։ Դրանցից ոչ մեկն էլ սկզբունքորեն չեն հակադրվում դիալեկտիկայի օրենքներին, այլ ամբողջությամբ բխում են դրանցից, հանդիսանալով դրանց դրսևորման կոնկրետ ձևերը նոր պայմաններում։ Այդ պատճառով էլ չկա ու չի կարող լինել երկու դիալեկտիկա. կա միայն մի դիալեկտիկա՝ մարքսիզմ-լենինիզմը, որի հետևողական ու ստեղծագործական կիրառումն ապահովում է բացահայտելու սոցիալիզմից կոմունիզմին անցնելու օրինաչափությունները։



# ԸՆԴԴԵՄ ԱՐՏԱՎՈՐ ՄԻՏՈՒՄՆԱՎՈՐՈՒԹՅԱՆ

Լենինյան ուղիով ամսագրի անցած տարվա 11-րդ համարում լույս տեսավ Մ. Հակոբյանի Երբ անտեսվում են վավերագրերը գրախոսականը Մորավիայի արծիվը գրքի մասին։

Մ. Հակոբյանը քննադատությունն սկսում է՝ Բարև, Արտեմ ֆիլմից։ Հենց սկզբից ասենք, որ այն փաստագրական հաջողված ֆիլմ է, որը քննարկվել է Մոսկվայում, Կիևում, Պրագայում, Լենինգրադում, Բուդապեշտում, Վարշավայում և արժանացել բարձր գնահատականի։ Ֆիլմի ռեժիսոր Գ. Մելիք-Ավագյանը, իրավ լավ գործ է կատարել։ Այն դիտել են պատերազմի բովով անցած ուկրաինացի և չեխ նախկին պարտիզաններ, դիտել խորին հուզմունքով, արտահայտել իրենց ջերմ խոսքը։ Այդ առթիվ 1966 թվականի մայիսի 8-ին «Правда» թերթը տպագրեց Կիևի իր թղթակցի՝ Մ. Օդինեցի Եվ վերճիշվեցին պարտիզանական օրերը վերնագրով հոդվածը։ Բարև Արտեմ ֆիլմը արժանացել է առաջին կարգի 7 դիպլոմի։

Սակայն Հակոբյանը գրում է. «Բայց այլ է, երբ ֆիլմը դիտում է պատերազմի բովով անցած վետերանը, վերարտադրվող իրադարձություններին ու դրվագներին լավատեղյակ մեկը, հերոս պարտիզանին և նրա ջոկատին վերաբերող վավերագրերին ծանոթ հանդիսատեսը»,— այսինքն՝ գրախոսողը։ Եվ քանի որ նա է «լավատեղյակը», դրա համար էլ գրում է. «ով փոքր-ինչ առնչություն է ունեցել պարաշյուտի հետ, լավ գիտե, որ մարդիկ գիշերվա խավարում չեն կարող պարաշյուտով վայրէջք կատարել շենքի տանիքին...»։ Ինչպիսի՜ միամտություն։ Եվ դա ասում է պատերազմական հարցերով զբաղվող պատմաքննադատ-ռազմագետը։ Նախ, հետախույզ-պարաշյուտիստների թռիչքը պետք է տարբերել սպորտային թռիչքներից։ Առաջինները սովորաբար միշտ իրականացվել են գիշերով և ոչ թե ցերեկով։ Հասկանալի է, որ երկրորդ խմբի (այդ թվում՝ Մելնիկ, Պետրոսյան) վայրէջքը շենքերի տանիքին ոչ թե եղել է նպատակային, այլ ակամա։ Դրա համար ոչ թե Մ. Հակոբյանի վավերագրերին պետք է հավատալ, այլ կենդանի մնացած դեսանտայիններին և այն փաստաթղթերին, որոնք, մեր կարծիքով, առավել հավաստի են։

Դեսանտայինների վայրէջքին ո՛չ միայն խանգարել է նպատակակետից 180 կիլոմետր հեռանալը, այլև քամու հոսանքը։ Ո՛չ Մելնիկը և ոչ էլ Հակոբյանը հիմքեր չունեն օդանավի անձնակազմին մեղադրելու անփութության մեջ։ Դա անազնվություն է։ Օդաչուները չէին կարող տարբերել յուրայինների և հակառակորդի կրակային ազդանշանները և, շփոթվելով, ընկել են ծուղակի մեջ։ Նրանք բոլորն էլ զոհվել են քաջաբար, որոնց հուշարձանը կանգնեցված է Լոունի քաղաքի մոտ։

Ուկրաինայում և Չեխիայում կինոռեժիսոր Գ. Մելիք-Ավագյանին, ինչպես և գրքի հեղինակներին հանձնվել են բազմաթիվ լուսանկարներ։ Դրանցից մեկը, ըստ մակագրության, պատկերում է գեներալ Բիրյուկովին և էսէսականի համազգեստով պարտիզան հետախույզ Ա. Պետրոսյանին։ Դա ոչ թե մենք ենք լուսանկարել, այլ ստացել ենք Բռնոյի ռազմական արխիվից։ Հնարավոր է, որ թյուրիմացություն լինի (թեև գրքի հեղինակներն այդ լուսանկարը չեն օգտագործել), բայց և հնարավոր չէ Բիրյուկովին ձևափոխել և անվանակոչել Ա. Ն. Սաբուրով։

Հրապարակի վրա Արտեմ Պետրոսյանի ձեռքով գրված ոչ մի ինքնակենսագրական էլ չկա, որի մասին հաստատորեն նշում է Հակոբյանը։ Պարտիզան-հետախույզից (որի գործունեությունը բացարձակ գաղտնիություն էր պահանջում) դա ոչ ոք չէր կարող պահանջել։ Մ. Հակոբյանի հիշատակած ինքնակենսագրությունը գրվել է քրոջ՝ Ս. Պետրոսյանի ձեռքով, թոշակավորման փաստաթղթերին կցելու համար։

Բերենք մի քաղվածք գրախոսությունից (էջ 91). «Ըստ հեղինակների ստեղծվել է սովետական դեսանտայինների կազմակերպված ջոկատների միասնական հրամանատարություն և այդ ջոկատների գլխավոր հրամանատար է նշանակվել Արտեմ Պետրոսյանը։ Նման բան երբեք չի եղել և պարտիզանական պայքարի առանձնահատկությունների պայմաններում դա պարզապես անհնար էր»։

Մենք համաձայն ենք Մ. Հակոբյանի հետ. իրոք, այդպիսի բան չի եղել և գրքում էլ այդ մասին՝ ոչ մի խոսք։ Գրաքննադատի հնարանքն է այդ։ Գրքում պարզորոշ ասված է.

«Մելնիկը սեղանի վրայից վերցրեց հեռագիրը։

— Այստեղ ասված է. «Կազմակերպել պարտիզանական բրիգադ։ Հրամանատար հաստատել Մելնիկին, հրամանատարի տեղակալ Մորյակովին, կոմիսար՝ Խիմիչին»։

Օլգա Շաֆարժին նշանակեցին Յան Կոզինի անվան պարտիզանական բրիգադի շտաբի պետ, Զդենեկ Շրամեկին՝ մատակարարման պետ։ Ամենադժվարին, պատասխանատու պարտականությունը դրվում էր հետախուզական և հատուկ դիվերսիոն ջոկատների գլխավոր հրամանատարի վրա... Այդ ջոկատների գլխավոր հրամանատար նշանակվեց Արտեմ Պետրոսյանը։

Ի՞նչ կա այստեղ չհասկանալու, երբ գրաքննադատը իրեն համարում է իրադարձությունների ու դրվագների լավատեղյակ մարդ: Խոսքը ոչ թե դաշտավարական բրիգադա կազմակերպելու մասին է, այլ պարտիզանական բրիգադի, որը, մոտավորապես պահպանելով համանուն զորատեսակի առանձնահատկությունները, պետք է իր մեջ միավորեր պարտիզանական ջոկատները կամ ստորաբաժանումները: Դժվար չէ հասկանալ, որ ամեն մի ջոկատ էլ իր կազմում ուներ դիվերսիոն հետախուզական ջոկատ: Ահա այդ ջոկատների (և ոչ թե ամբողջ բրիգադի) գլխավոր հրամանատար է նշանակվում Ա. Պետրոսյանը:

Շարունակենք. «Ճշմարտությունն այն է, ինչ գրում է ինքը՝ Արտեմ Պետրոսյանն իր ինքնակենսագրականում (ընդգծենք, որ այդպիսին չկա.—Ա.Հ., Ա. Ռ.). «Առ 1945 թվականի մայիսի 15-ը եղել եմ Յան Կոզինայի (Մելնիկ) անվան ջոկատում՝ դիվերսիաների գծով պարտիզանական ջոկատի հրամանատարի տեղակալի պաշտոնում»»:

Մ. Հակոբյանը շատ է սիրում վավերագրերով արտահայտվել և զարմանում ես, որ արխիվային հանրահայտ փաստաթղթերի փոխարեն առաջնորդվում է գոյություն չունեցող ինքնակենսագրականով:

Ահա ճշմարտությունն ասող բազմաթիվ վավերագրերից (որը հաստատված է պարտիզանական շարժման Ուկրաինական շտաբի կողմից՝ Գ. Մելնիկի և Ն. Խիմիչի ստորագրությամբ) մեկից վերցրած քաղվածքը.

«Կատարելով իր պարտքը հայրենիքի առաջ և որպես Յան Կոզինի անվան պարտիզանական բրիգադի հրամանատարի՝ դիվերսիաների գծով տեղակալ և որպես դեսանտային կարմիր դիվերսանտ ընկ. Պետրոսյանը կառավարական առաջադրանքները կատարել է գերազանց»:

Եթե բերված օրինակն էլ չի բավարարում Մ. Հակոբյանին, ապա մենք նրան խորհուրդ կտայինք ծանոթանալ Յան Կոզինի անվան բրիգադի հրամանատարության վերջնազեկույցին, որը խնամքով պահպանվում է ՄԼԻ-ի Ուկրաինական ֆիլիալի արխիվի՝ Հայրենական պատերազմի պատմության բաժնում:

Մենք ևս սկզբնական շրջանում հիշատակում էինք, որ Չեխոսլովակիա ուղարկված դեսանտայինների թիվը եղել է 17: Ի դեպ, այդ մասին կան տարբեր վավերագրեր. դրանցից մեկում հիշատակվում է 17, մյուսներում՝ 19, 15, 18... Բանը նրանում է, որ մինչև վերջին պահը, ինքնաթիռի թռիչքից նույնիսկ մի քանի րոպե առաջ, դեսանտայինների կազմում եղել են փոփոխություններ: Եվ դա հասկանալի է, որովհետև սովորական ուղևորների մասին չէ խոսքը, այլ այն մարդկանց, որոնց բազմակողմանի ստուգելուց հետո պետք է վստահվեր մարտական կարևոր առաջադրանքը:

Մեր կողմից 18 դեսանտայինների հիշատակման համար հիմք են ծառայել Կիևի մարքսիզմ-լենինիզմի ինստիտուտի արխիվում Յան Կոզինի անվան բրիգադի մարտական գործունեության վերաբերյալ պահպանվող զեկուցագիրը (ֆ. 149, պ. 2, գ. 1) և չեխ մի խումբ պատմաբանների հեղինակությամբ վերջերս հրատարակված Պարտիզանական շարժումը Չեխոսլովակիայում երկրորդ համաշխարհային պատերազմի տարիներին գիրքը (տե՛ս էջ 330):

Արխիվային նյութերը տարբեր կերպ կարելի է օգտագործել: Ո՛չ միայն արխիվային նյութերը, այլև կենդանի մարդկանց վկայությունները մենք օգտագործել ենք՝ գեղարվեստական գիրք գրելու համար: Մորավիայի արծիվը գեղարվեստական գործ է, իրական դեմքերի ու դեպքերի գեղարվեստական վերարտադրություն: Ամենևին էլ հարկ չկար հաշվապահական տեղեկագիր ստեղծելու օպերացիաների, պայթեցված կամուրջների, զինապահեստների և երկաթուղիների թվերի ու տոկոսների մասին: Մեր նպատակն է եղել կենդանի ականատեսների (նախկին պարտիզանների) հետ զրուցելով շունչ տալ փաստերին ու թվերին, պարզել թե ինչպե՞ս, ի՞նչ պայմաններում է պայթեցվել այս կամ այն կամուրջը, ինչպես է իրագործվել այս կամ այն օպերացիան: Ընթերցողին դա էր պետք և ոչ թե չոր ու ցամաք թվերի մատյան:

Կասկածի տակ վերցնել Պրոստեյան խճուղու վրա կատարված դեպքը և այն համարել հորինվածք, առնվազն անհեթեթություն է: «Ճարպիկ դիպլոմատի» (ինչպես Արտեմին անվանում է Ն. Խիմիչը) համար դա ինչ-որ արտասովոր բան չի եղել: Ահա մի քաղվածք բրիգադի կոմիսար Ն. Խիմիչի տված բնութագրից. «Արտեմը հեշտությամբ էր կարողանում պայթեցնել կամուրջները, «լեզուներ» էր որսում, վարում բազմատեսակ մեքենաներ... Արտեմին ուղարկում էին թշնամու հետախուզելու և նրա թիկունքում դիվերսիաներ գործելու այն ժամանակ, երբ ուրիշ ոչ-ոք չէր կարող այդ անել»:

Յան Կոզինի անվան պարտիզանական բրիգադի հանդերձապահեստում պահպանվում էին գերմանական, իսկ հետագայում նաև հունգարական զինվորների ու հրամանատարների համազգեստներ: Դրանցից հաճախ էին օգտվում դիվերսիոն հետախուզական ջոկատի անդամները: Արտեմ Պետրոսյանի թշնամու թիկունք թափանցելը (Ուկրաինայում և Չեխոսլովակիայում) հաստատվում է ո՛չ միայն բազմաթիվ վավերագրերով, այլև նրա մարտական ընկերների տված բնութագրերով:



Պետրոսյանը լավ է իմացել և՛ ռուսերեն, և՛ գերմաներեն, և՛ չեխերեն: Նա գիտեր հիանալի նկարել, գծագրել, օժտված էր գերասանական ընդունակությամբ, փորձում էր պիեսներ գրել: Գեղեցիկ ու վայելչակազմ այդ երիտասարդը, ինչպես ընկերներն են վկայում, եղել է արտակարգ ճարպիկ ու հնարամիտ: Դիվերսիոն-հետախուզական շատ օպերացիաներ անձամբ Արտեմն է նախաձեռնել ու ծրագրել: Յան Կոզինի անվան պարտիզանական բրիգադի հրամանատարության կողմից տրված բնութագրում Պետրոսյանի մասին ասված է.

«Որպես պարտիզանական բրիգադի հրամանատարի՝ դիվերսիաների գծով տեղակալ Ա. Պետրոսյանը առաջադրանքները կատարելիս իրեն դրսևորել է գերազանց: Նա յուրովի հնարամտությամբ անձամբ կազմակերպել է դիվերսիոն գործողություններ գերմանական հափշտակիչների զինվորական էշելոնների վրա և անձամբ մասնակցել է օպերացիաներին, ղեկավարել դիվերսիոն խմբերը...»:

Եվ այսպես, «Կարմիր դիվերսանտի» (ինչպես վավերագրում անվանում են Պետրոսյանին) համար դժվար չէր իրականացնել գերմանական զորքերի նոր դասավորության հետախուզությունը: Պրոստեյան խճուղու վրա Արտեմի՝ էսէսական լեյտենանտի համազգեստով երևալը և նրա կեղծ վիրավոր ներկայանալը Հակոբյան գրաքննադատը անմարդկային է համարում (էջ 88): Ստացվում է, որ զինվորի հնարամտությունը, ճարպկությունը, համարձակ գործելակերպը անմարդկային բաներ են: Իսկ ի՞նչ կասի Մ. Հակոբյանը՝ կարդալով Զդենեկ Շրամեկի նամակից քաղված այս տողերը. «Մենք հույս չունեինք, թե Արտեմը կվերադառնա Ցրիգլանտից: Այդ դժվարին գործողությունը նա ձեռնարկեց գրեթե ինքնուրույն՝ չմտածելով, թե ինչ է սպասում իրեն: Ճանապարհվելիս՝ նա զգեստավորվեց մի քանի օր առաջ մեզ մոտ գերված ֆաշիստ սպայի հագուստով»:

Պրոստեյան խճուղու հետ կապված դեպքը Արտեմը հաճախ է վերհիշել ու պատմել իր ընտանիքի անդամներին: «Լսելով Արտեմին,— ասում է քույրը,—մենք մի սարսուռ էինք զգում ու խնդրում, որ նա այլևս չշարունակի...»:

Մ. Հակոբյանը այնուհետև գրում է. «Արտեմ Պետրոսյանը բարեբախտաբար միայն մեկ անգամ է վիրավորվել՝ թեթև, ձախ ոտքից (1942 թվականի հոկտեմբեր)»: Եթե նույնիսկ նկատի ունենանք, որ Մ. Հակոբյանը ճիշտ է, ապա 1942 թվականի հոկտեմբերին վիրավորվելը ոչ մի կապ չունի Պետրոսյանի՝ ռազմական ճամբարում (մինչև 1943 թ. օգոստոսի 27-ը) ծանր վիրավորվելու հետ: Գրաքննադատը երևի մոռացել է, որ «Սովետական Հայաստան» թերթի 1964 թվականի հուլիսի 26-ի համարի երրորդ էջի Եվ նա լռում էր... իր ակնարկում գրել է, որ 1942 թվականին, Նովգորոդ-Վոլինսկի սովետական ռազմագերիների ճամբարում, Պետրոսյանը ծանր վիրավոր էր:

Երկու տարի հետո հակասելով իրեն, նա ո՛չ միայն պակասեցնում է հերոս զինվորի վերքերը, այլև մի վերք հիշատակելով՝ այն էլ համարում է թեթև:

Որպեսզի այլևս չանդրադառնանք այս հատվածին, ասենք, որ Ա. Պետրոսյանն իրականում վիրավորվել է չորս անգամ՝ ձախ ոտքից, գլխից, ձախ ուսից, աջ ոտքի ազդրից, չհաշված անլուր տառապանքներից ստացած թոքաբորբը, որը հյուծել, քայքայել էր նրան: Դրա համար վավերագրեր պետք չեն և ոչ էլ հաշվապահական վերլուծություններ: Եվ զինվորական կոմիսարիատի փաստաթղթերում ամեն ինչ չէ, որ գրանցված պետք է լինի:

Մենք ավելորդ ենք համարում խոսել Զեռնիգովի բնագծում Պետրոսյանի լինելու, նրա կողմից թշնամու տանկը պայթեցնելու մասին: Ուկրաինացի Գրիգորի Միրզենկոն (քաղաք Զոպորոժիե) լավություն անելու կամ սիրաշահելու համար չէ, որ այդ ամենը պատմել է մեզ: Մ. Հակոբյանն իրեն դնում է անհարմար վիճակում, գրելով. «Գոյություն ունեցող փաստաթղթերը ոչինչ չեն ասում ֆաշիստական տանկ ոչնչացնելու և այդ ժամանակ Արտեմի գլխից վիրավորվելու մասին»:

«Միակ սովետական շքանշանը,— գրում է Հակոբյանը,— № 763135 «Կարմիր աստղ»-ը նա ստացել է շատ ուշ՝ 1945 թվականին»:

Թեև Պետրոսյանն այդ շքանշանն ուշ է ստացել, բայց պարգևատրվել է ավելի վաղ՝ մինչև Չեխոսլովակիա ուղարկվելը: Պարտիզանական բրիգադի հրամանատարության տված բնութագրում կարդում ենք. «Գերմանական հափշտակիչների դեմ մղվող պայքարում ցուցաբերած քաջության ու խիզախության համար ընկ. Պետրոսյանը ներկայացված է չեխոսլովակյան կառավարական պարգևների՝ «Չեխոսլովակյան զինվորական խաչ» շքանշանի և «Քաջության համար» մեդալի, սովետական կառավարական պարգևի՝ «Կարմիր դրոշ» շքանշանի և «Խիզախության համար», «Հայրենական պատերազմի պարտիզանի առաջին աստիճանի» մեդալների: Պետրոսյանի ընտանիքն այդ պարգևներից չորսն արդեն ստացել է 1962—1966 թվականների ընթացքում:

Շարունակելով իր մտահնարանքը՝ Մ. Հակոբյանը գրում է. «Նախ նրանք իրենց հերոսի գերվելը երեք ամսով առաջ են գցել»:

Գրքի այդ հատվածում (էջ 18) գրված է. «1942 թվականի հուլիսի 10-ին ռազմագերիների թիվը ավելացավ նաև մեկով: Դա ծանր վիրավոր Արտեմ Պետրոսյանն էր»: Ճշմարտու-

ԳԻՆԸ 25 Կ. 

# ԳԻՏՈՒԹՅԱՆ ԵՎ ՏԵԽՆԻԿԱՅԻ ՆՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

## ՊԱՐԱՐՏԱՆՅՈՒԹ ԱԾԽԻՑ

Հնդիկ գիտնականները քարածխից ստացել են մի նոր պարարտանյութ, որն իր հատկություններով չի զիջում ազոտային պարարտանյութերին։ Ածխարդյունաբերության թափոնները ազոտաթթվով մշակելիս փոխակերպվում են այլ նյութի, որը երկու տեսակ ազոտ է պարունակում։ Մի միացությունը բույսերի կողմից յուրացվում է հեշտ ու արագ, մյուսի մեջ ազոտը չափազանց կայուն է և բույսերի կողմից յուրացվում է աստիճանաբար, մի քանի տարվա ընթացքում։ Դրա շնորհիվ կարելի է դաշտերը ամեն տարի չպարարտացնել, իսկ ազոտի կորուստները նվազում են։ Բացի դրանից ածխային պարարտանյութերը բարելավում են հողի կառուցվածքը։

## ԹԱՓԱՆՑԻԿ ՏՆԵՐ

Բացի ապակյա սալերից, որոնք վերջին ժամանակներս դրվում էին պատուհանների փոխարեն կամ օգտագործվում տները զարդարելու համար, վերջերս սկսել են պատրաստել ապակյա բլոկներ, որոնցից պատրաստում են պատեր, միջնապատեր, թափանցիկ տանիքներ։ Այդպիսի շինանյութերից է «պրոֆիլիտը»։ Դա ձուլածո ապակի է, շատ ամուր, նրա լայնակի կտրվածքն ունի «И» տառի ձև, որը հնարավորություն է տալիս բլոկները դնել մեկ կամ երկու շարքով։ Բլոկները իրար հետ կապվում են պլաստիկ նյութերով։

Սկսվել է ապակու մյուս տարատեսակի՝ կոպիլիտի արտադրությունը։ Այն օգտագործում են սպորտային դահլիճների, գործարանային ցեխերի տանիքների, ինչպես և հեռախոսային խցիկների համար։ Կոպիլիտի լուսաթափանցությունը հասնում է 80—85 տոկոսի։

Մոտ ապագայում նախատեսվում է պատրաստել գունավոր պանելներ, որոնք կարելի է օգտագործել որպես դեկորատիվ նյութ (ԳԴՀ)։

## ՄԵՏԱՂԱԳՈՐԾ ԲԱԿՏԵՐԻԱՆԵՐԸ

Բրիտանական Կոլումբիայի բակտերիոլոգիական ինստիտուտում փորձեր են արվում աղքատ հանքաքարից պղինձ, նիկել, ցինկ, մոլիբդեն կորզելու համար օգտագործել բակտերիաները։ Եթե 1963 թվականին հաջողվում է 75 օրում հանքանմուշից զատել մետաղի միայն 35 տոկոսը, ապա 1964 թվականին բակտերիաների օգնությամբ 10 օրում զատվում է մետաղի 90 տոկոսը։ Ինչպես ցույց են տվել փորձերը, պղնձի երկու տոկոսանոց լուծույթներում բակտերիաներն իրենց ակտիվությունը պահպանում են C-ի 38°-ի պայմաններում։

## ՉՈՐ ՋՈՒՐ

Շվեյցարացի գիտնական Կուրտ Կլեյնը հայտնագործել է չոր ջուր, որը նման է ալյուրի, բայց ցնդում է ինչպես ծխախոտի ծուխը։ Նրա 90 տոկոսը սովորական ջուր է, իսկ 10-ը ջուրը վանող, կայծքարային ջրավախ թթու։ Ոչ երկրային այս թթուն բնական վիճակում գոյություն չունի։ Այն ստացվել է երեք տարի առաջ լաբորատորիայում և կիրառվում է կաուչուկի արտադրության մեջ։

Քիմիկոսները փորձել են կայծքարային թթուն միացնել ջրի հետ, բայց այդ նյութերը ռեակցիայի չեն ենթարկվել։ Եվ ահա կոլբայի մեջ լցրին 90 տոկոս ջուր և 10 տոկոս կայծքարային թթու. ուժեղ թափահարելուց ջուրն անհետացավ, վերածվելով սպիտակ փոշու՝ չոր ու պաղ և կարելի է երկար ժամանակ պահպանել։ Մասնագետների կարծիքով չոր ջուրը լայնորեն կկիրառվի արդյունաբերության մեջ։